Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ · 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов» теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# ՀԿԳ ԿԿ-Ի ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ (1964 Թ.) ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՄԱՆ ԿԱՏԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումը լիովին ու միահամուռ հավանություն է տալիս «Մարզային, երկրամասային արդյունաբերական և գյուղական պարտիական կազմակերպությունները միացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) պլենումի որոշմանը, որով վերականգնվում է պարտիական կազմակերպություններն ու նրանց ղեկավար օրգանները տերիտորիալ-արտադրական հատկանիշով կառուցելու սկզբունքը. որը նախատեսված է պարտիայի XXII համագումարի ընդունած ՍՄԿԿ կանոնադրությամբ:

Կոմունիստական շինարարության և ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրների առավել հաջող լուծման գործում պարտիական կազմակերպությունների ղեկավար դերն ուժեղացնելու նպատակով Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումը որոշում է՝

1. Կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների պարտիական կոմիտեները վերակազմել Հայաստանի կոմպարտիայի շրջանային կոմիտեների, դրանցում կենտրոնացնելով տվյալ շրջանի տերիտորիայում գտնվող բոլոր պարտիական կազմակերպությունների, այդ թվում արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների կազմակերպությունների, ղեկավարումը:

2. Վերացնել արդյունաբերական-արտադրական (զոնալ) պարտիական կոմիտեները, որոնք առաջ ստեղծվել էին ռեսպուբլիկայի գյուղական շրջանների տերիտորիայում:

3. Հանձնարարել Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի նախագահությանը՝ ելնելով տնտեսական անհրաժեշտությունից, գործնական նպատակահարմարությունից և բնակչության սպասարկման շահերից, քննության առնել և լուծել պարտիական կոմիտեները պարտիայի շրջանային կոմիտեների վերակազմելու հետ կապված բոլոր կազմակերպական հարցերը:

4. Ռեսպուբլիկայի բոլոր վերակազմվող պարտիական կազմակերպություններում 1964 թվականի դեկտեմբերին անցկացնել պարտիական կոնֆերանսներ:

5. Աննպատակահարմար համարել Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմում արդյունաբերության ու շինարարության ղեկավարման բյուրո և գյուղատնտեսության ղեկավարման բյուրո ունենալը:

***

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) պլենումի որոշումները հաջողությամբ կենսագործելու և կոմունիստական շինարարության խնդիրները կատարելու նպատակով Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումը ռեսպուբլիկայի բոլոր պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպություններին պարտավորեցնում է ջանքերը կենտրոնացնել արտադրական պլանների կատարման ու գերակատարման, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ռեզերվների առավել արդյունավետ օգտագործման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման վրա, ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման վրա:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽԹԱՆՈՒՄԸ[1]

Բ. ՍՈՒԽԱՐԵՎՍԿԻ

Կոմունիզմի շինարարության ընթացքում յուրաքանչյուր նոր առաջընթաց քայլ թույլ է տալիս ավելի խոր, ավելի լիակատար օգտագործելու նյութական խթանների ներգործությունը արտադրության զարգացման վրա: Էկոնոմիկայում կատարված այն փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել վերջին տարիներս և նախատեսվում են առաջիկա ժամանակաշրջանի համար, անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծում ամբողջությամբ վերցրած արտադրության խթանումը նոր, ավելի բարձր աստիճանի բարձրացնելու համար: Դա պահանջում է արտադրության խթանման պրոբլեմները դիտել և քննարկել այն տնտեսական հարաբերությունների բոլոր կողմերի կատարելագործման կապակցությամբ, որոնք ծագում են մարդկանց միջև նյութական բարիքների արտադրության, բաշխման, փոխանակման և սպառման պրոցեսում՝ սոցիալիստական հասարակարգի պայմաններում:

### 1.

Սոցիալիստական ձեռնարկությունը (միավորումը) իրենից ներկայացնում է տնտեսական հաշվարկի սկզբունքով գործող մի ամբողջական օրգանիզմ: Մեր ձեռնարկություններում արտադրության զարգացումն ընթանում է ժողովրդատնտեսական պլանով և տեղի է ունենում այնպիսի տնտեսական կատեգորիաների ներազդեցության տակ, ինչպիսին գինն է, շահույթը, վարկը և այլն: Այդպիսի պայմաններում տնտեսական պրոցեսի ընթացքը ձեռնարկության (միավորման) համար կարող է լինել շահավետ կամ անշահավետ: Դա ստեղծում է տնտեսական շահի, հետևապես, արտադրության խթանման միջոցով ձեռնարկության վրա ներազդելու հնարավորությունը:

Յուրաքանչյուր սոցիալիստական ձեռնարկություն միևնույն ժամանակ արտադրությունը կառավարող մարդկանց կոլեկտիվ է, որը որոշակի տնտեսական հարաբերություններով կապված է ամբողջ ժողովրդական տնտեսության հետ:

[1] Արտատպելով *Коммунист* ամսագրից (№ 15) սույն հոդվածը՝ տնտեսագետներին ու տնտեսվարներին խնդրում ենք արտահայտվել սույն հոդվածում արծարծված հարցերի շուրջ: Խմբ.:

Կոլեկտիվի և առանձին վերցրած նրա յուրաքանչյուր անդամի ձեռք բերած ցու-
ցանիշները շատ բանով կախված են նրանից, թե ինչ չափով է նա նյութապես
և բարոյապես շահագրգռված արտադրության կարգացման գործում: Ժամա-
նակակից արդյունաբերական ձեռնարկությունում արտադրության արդյունքները
որոշվում են ո՛չ միայն առանձին աշխատողների անհատական ջանքերով, այլև
ամբողջ կոլեկտիվի համերաշխ գործողություններով: Արտադրության աշխատող-
ները պետք է շահագրգռված լինեն, ինչպես իրենց աշխատանքի անհատական
ցուցանիշների, այնպես էլ ձեռնարկության գործունեության ընդհանուր ար-
դյունքների համար: Աշխատանքի արդյունքների վերջնական հասարակական
գնահատությունը կարող է տրվել միայն այն կապակցությամբ, թե ձեռնարկու-
թյունն ինչ է տվել հասարակությանը: Հետևապես, առանձին աշխատողների
միջև ըստ աշխատանքի բաշխումը ևս չի կարող մինչև վերջ հետևողական լի-
նել առանց այն բանի, որ նրանց աշխատանքի արդյունքները գնահատվեն ձեռ-
նարկության աշխատանքի ընդհանուր հանրագումարները հաշվի առնելով:

Այստեղից հետևում է, որ արտադրությունը խթանելու գործում հարկավոր է
տարբերել երկու կողմ՝ **ձեռնարկությունների (միավորումների) խթանում** այն-
պիսի **տնտեսական կատեգորիաների** օգտագործման հիման վրա, ինչպես գինն
է, շահույթը, վարկը և այլն. **աշխատողների նյութական շահագրգռվածության**
**ապահովում՝ նրանց աշխատանքի** էֆեկտիվ **վարձատրման** հիման վրա: Ընդ
որում արտադրության խթանումը առավել արդյունավետ կլինի այն ժամանակ,
երբ ապահովված է ձեռնարկության (միավորման) խթանման և արտադրության
աշխատողների նյութական շահագրգռվածության **միասնությունը:**

Կապիտալիզմի օրոք այդպիսի միասնություն ձեռք բերվել չի կարող, քանի
որ աշխատանքի արդյունքը պատկանում է կապիտալիստին, իսկ աշխատա-
վարձի չափերը որոշվում են ոչ թե աշխատանքի արդյունքներով, այլ աշխատուժի
արժեքով. այնտեղ շահույթը և աշխատավարձը հանդես են գալիս որպես երկու
հակադիր դասակարգերի եկամտի ձևեր, և այդ դասակարգերի միջև գոյություն
ունի մշտական ու անհաշտելի հակասություն:

Առաջին անգամ սոցիալիզմն է հնարավորություն ընձեռում արտադրու-
թյան աճման ու կատարելագործման մեջ որպես մեկ միասնություն շաղկապելու
ձեռնարկության խթանումը և աշխատողների նյութական շահագրգռվածությունը՝
հանուն ամբողջ հասարակության պահանջմունքների առավել լիակատար բա-
վարարման:

Սակայն իրականում սոցիալիզմի այդ առավելությունը մեզ մոտ դեռևս բա-
վարար չափով չի օգտագործվում, խթանման երկու կողմերը շատ բաներով միմ-
յանցից կտրված են: Դրանում է գոյություն ունեցող տնտեսական պրակտիկայի
լուրջ թերությունը:

Սոցիալիստական ձեռնարկությունների (արտադրական միավորումների)
խթանումը կենսագործվում է այդ ձեռնարկությունների և, ամբողջությամբ վերց-
րած, ժողովրդական տնտեսության միջև գոյություն ունեցող տնտեսական հարա-
բերությունների միջոցով: Ինչ վերաբերում է արտադրության աշխատողների
խթանմանը, ապա այն կենսագործվում է, առաջին հերթին և գլխավորապես,
նրանց հարաբերությունների միջոցով այն ձեռնարկության հետ, որտեղ նրանք
աշխատում են, մասնակցում են կառավարմանը և նրա միջոցով հարաբերու-
թյան մեջ են մտնում հասարակության հետ՝ ամբողջությամբ վերցրած:





Սոցիալիստական ձեռնարկությունների (միավորումների) և ժողովրդական
տնտեսության միջև գոյություն ունեն երկակի տնտեսական հարաբերություններ,
այն է՝ ձեռնարկությունների (միավորումների) և ժողովրդական տնտեսության
պլանավորման, կառավարման, բյուջետային ֆինանսավորման և վարկավորման
պետական օրգանների միջև. արտադրող ձեռնարկության և մյուս ձեռնարկու-
թյունների, ինչպես նաև առևտրի, մատակարարման ու վաճառահանման կազ-
մակերպությունների միջև: Ընդ որում խթանումն իրականացվում է ո՛չ միայն
մյուս ձեռնարկությունների հետ արտադրող ձեռնարկության փոխադարձ հա-
րաբերությունների միջոցով. խթանումն իր պահանջներն է ներկայացնում նաև
ձեռնարկությունների ու պլանավորման պետական օրգանների փոխադարձ հա-
րաբերությունների նկատմամբ:

Սոցիալիստական պետությունը հասարակության լիազորությամբ ձեռնար-
կությունների հետ ունեցած իր հարաբերություններում հանդես է գալիս նախ և
առաջ որպես արտադրության միջոցների սեփականատեր: Պետությունը անմի-
ջականորեն և պլանաչափ կերպով ուղղություն է տալիս յուրաքանչյուր ձեռնար-
կության գործունեությանը, տնօրինում է ձեռնարկության ստացած զուտ եկա-
մտի հիմնական մասը, և նրա կարգացման համար օգտագործում ընդհանուր
պետական եկամուտները:

Եթե արտադրության միջոցների հանրայնացումը հնարավորություն է տա-
լիս իր ձեռքում, ասենք՝ մեկ ընդհանուր կաթսայում, կենտրոնացնելու հասարա-
կական հարստությունը և այդպիսին պլանաչափորեն տնօրինելու՝ հաշվի առ-
նելով ամբողջ հասարակության և յուրաքանչյուր տնտեսական բջջի պահանջ-
մունքները, ապա խթանման շահերը պահանջում են, որ եկամտի մի մասը **բա-**
**ժանվի** հասարակության և ձեռնարկությունների միջև: Ձեռնարկությունը խթա-
նելու համար անհրաժեշտ է նրան թողնել եկամտի, կամ նյութական ծախսերի,
աշխատավարձի ֆոնդի խնայողության մի մասը և այն՝ արտադրությունն ընդ-
լայնելու, աշխատողների աշխատանքի վարձատրությունն ու նյութական շահա-
գրգռվածությունը բարձրացնելու, նյութական ու կենցաղային պահանջմունք-
ները բավարարելու համար:

Իսկ ի՞նչ տնտեսական հարաբերություն նկատի ունենալով պետք է որոշել
եկամտի (խնայողության) այն բաժինը, որն անցնում է պետությանը, և այն
բաժինը, որը մնում է ձեռնարկությանը (միավորմանը): Այդպիսի հարաբերու-
թյան համար հիմք է հանդիսանում պետական ձեռնարկություններին համաժո-
ղովրդական սեփականություն կազմող արտադրական ֆոնդեր ամրացնելը: Ձեռ-
նարկությանն անցնող եկամտի (խնայողության) բուն իսկ բաժինը չի կարող
միատեսակ լինել բոլոր ձեռնարկությունների համար. ձեռնարկությանը մնացող
բաժինը պետք է անմիջականորեն կախված լինի արտադրական ֆոնդերի չա-
փերից և կառուցվածքից, նախ և առաջ այն հիմնական ֆոնդերից, որ ունի ձեռ-
նարկությունը (միավորումը): Խոսքն այն մասին չէ, որ ստեղծվի խթանման ևս
մի ձև, այսինքն՝ ձեռնարկությունները պարգևատրվեն հիմնական ֆոնդերի
լավագույն օգտագործման համար: **Խթանման բոլոր ձևերը** պետք է հիմնվեն
ժողովրդական տնտեսության և ձեռնարկության գլխավոր տնտեսական հարա-
բերության վրա, մի հարաբերություն, որը պայմանավորված է արտադրության

միջոցների սոցիալիստական սեփականությամբ և արտադրության միջոցները
պետական ձեռնարկություններին (միավորումներին) ամրացնելով:

Ձեռնարկությունների խթանման սիստեմի գործունությունն ապահովելու
համար անհրաժեշտ է գտնել տվյալ ձեռնարկության աշխատանքի արդյունքների
հասարակական գնահատման ճիշտ չափանիշները և դրանց հիման վրա որոշել
եկամտի այն բաժինը, որն անցնում է ձեռնարկությանը (միավորմանը). ապա-
հովել եկամտի (խնայողության) այդ բաժնի և վերջինիս վրա հիմնված արտա-
դրական ու խրախուսման ֆոնդերի ամրացումը ձեռնարկությանը. նախապես
որոշել այն ժամկետը, որի ընթացքում այդ լրացուցիչ եկամուտը ճանաչվում է
որպես անհատական արդյունք, որն առանձնացվում է հասարակական չափից և
պահանջում է լրացուցիչ խրախուսանք:

Պրակտիկան ցույց է տալիս, որ պետության և առանձին ձեռնարկություն-
ների տնտեսական հարաբերություններում խթանման այդ տարրական պահանջ-
ները հաճախ խախտվում են, որը թուլացնում է խթանման արդյունավետությունը
և, մասնավորապես, բանվորների ու ծառայողների աշխատավարձի կարգավո-
րումը: Քննարկենք այդ պահանջներից յուրաքանչյուրը առանձին-առանձին:

Արտադրության արդյունքների **գնահատման չափանիշների** հարցը առաջ-
նակարգ նշանակություն ունի. դրա լուծումից է կախված թե՛ եկամտի ձեռնար-
կությանն անցնող բաժինը, թե՛ աշխատողներին խրախուսելը: Ինչ վերաբերում
է առանձին աշխատողներին, ապա նրանց աշխատանքի հասարակական գնա-
հատականը տրվում է պետական նորմատիվների ու նորմաների օգնությամբ,
որոնք տարբերակված են՝ նայած այն սարքավորմանը, որով աշխատում է բան-
վորը: Գնահատման այդպիսի եղանակը ելնում է այն փաստից, որ արտադրու-
թյան միջոցները հանդիսանում են համաժողովրդական սեփականություն և
դրանք բանվորին տրամադրում է հասարակությունը: Հասարակությունը բան-
վորից աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն է պահանջում այն
դեպքում, եթե նա բանվորին տրամադրել է ավելի արտադրողական մեքենա:
Ընդ որում աշխատանքի վարձատրության սիստեմը խրախուսում է բանվորին՝
տվյալ տեխնիկայի առկայությամբ առավել բարձր արտադրանքի հասնել և մաս-
նակցել տեխնիկայի կատարելագործմանը:

Պրակտիկայում այլ չափանիշ է ընդունված ձեռնարկության, որպես աշխա-
տողների կոլեկտիվի, աշխատանքի արդյունքների գնահատման գործում: Այս-
տեղ ներկայումս գոյություն ունի **միմիայն մեկ չափանիշ՝ պլան, դրա կատարումը
և գերակատարումը:** Միանգամայն բնական է, որ պլանի դերը ձեռնարկության
(միավորման) գործունեության արդյունքների հասարակական գնահատման գոր-
ծում պետք է այլ լինի, քան առանձին բանվորի աշխատանքի գնահատման
գործում: Պլանում արտահայտվում են հասարակական պահանջմունքները, սո-
ցիալիստական արտադրության, իսկ հետևապես, վերջին հաշվով նաև յուրա-
քանչյուր առանձին ձեռնարկության, կարգացման խնդիրներն ու ուղղությունը:

Սակայն հարկավո՞ր է արդյոք պլանը դարձնել ձեռնարկությունների ար-
տադրության արդյունքների գնահատման **միակ** չափանիշը: Որպեսզի պլանը
տվյալ ձեռնարկության համար իսկապես դառնա գործողության ուղենիշ, այն
պետք է հաշվի առնի պլանավորվող ժամանակաշրջանում ձեռնարկության աշ-
խատանքի կոնկրետ պայմանները: Որքան ավելի ճշգրտությամբ են հաշվի առ-
նըված այդ առանձնահատկությունները, այնքան ավելի պլանը մոտ է կյանքին:
Մյուս կողմից, ժողովրդական տնտեսության՝ տարբեր ձեռնարկություններին ներ-



կայացվող պահանջները նույնպես չեն կարող միատեսակ լինել—տեխնիկայի
կարգացումը, համամասնությունների փոփոխումը ժողովրդական տնտեսության
մեջ առաջ են մղում մեկ այս, մեկ մյուս ճյուղերը և տարբեր ձեռնարկություն-
ների առաջ ո՛չ միատեսակ բարդություն ունեցող խնդիրներ են դնում:

Այդ պատճառով էլ պլանը իր ներքին բնույթով չի կարող անհատական չլի-
նել: Բայց, ձեռնարկության գործունեության արդյունքների հասարակական
գնահատմանը մոտենալով նյութական խթանման դիրքերից, մենք պետք է նրա
աշխատանքը համեմատենք մյուս այն ձեռնարկությունների աշխատանքի հետ,
որոնց հասարակությունն օժտել է նույնպիսի արտադրական ֆոնդերով: Հետևա-
պես, անհրաժեշտ է տվյալ ձեռնարկության արտադրության արդյունքները հա-
մադրել ո՛չ միայն **անհատական պայմանների** կոնկրետ հաշվառման հիման վրա
կառուցված պլանի, այլև ինչ-որ **հասարակական նորմատիվների** հետ, որոնք
հաշվի են առնում գլխավոր տնտեսական հարաբերությունը պետության և ձեռ-
նարկության միջև:

Պլանը որպես արտադրության հասարակական գնահատման միակ չափա-
նիշ, որքան էլ այն լավ կազմված լինի, ունի նաև մի այլ թերություն: Հարկավոր
են այնպիսի պլաններ, որոնք առավելագույն չափով օգնեն ունեցած ռեզերվ-
ները ներգրավելու արտադրության մեջ: Այդ ռեզերվները չեն կարող լիովին ի
հայտ բերվել «վերևից»՝ կենտրոնից. դրանք գտնելուն պետք է մասնակցեն լայն
մասսաները: Իսկ դրա համար պահանջվում են ո՛չ միայն կազմակերպական, այլև
տնտեսական նախադրյալներ:

Հարկավոր են այնպիսի պայմաններ, որոնց առկայությամբ ձեռնարկություն-
ների աշխատողների կոլեկտիվները, տնտեսական ղեկավարները իրենք շահա-
գրգռված լինեն ռեզերվների հայտաբերման և ավելի բարձր պլանային առա-
ջադրանքներ ընդունելու մեջ: Դժվար չէ նկատել, որ պլանը ինչ-որ մի բացար-
ձակ բան դարձնելը, ձեռնարկության արտադրանքի հասարակական գնահատ-
ման և, դրա հետ միասին, աշխատողներին նյութապես խրախուսելու միջոցների
գնահատման միակ չափանիշը դարձնելը խանգարում է այդ խնդրի լուծմանը:
Խթանումը բարելավելու ուղղությամբ առաջարկություններ անելով, որոշ հեղի-
նակներ պատրաստ են խրախուսանքի միջոցները լիովին կտրել պլանի կատար-
ման և գերակատարման աստիճանից, իսկ որոշ հեղինակներ էլ կցանկանային
պլանի գերակատարման համար խրախուսանքը համատեղել ավելի բարձր պլա-
նային առաջադրանքներ ստանձնած աշխատողների նյութական շահագրգռվա-
ծության հետ և այդ նպատակով նյութական խրախուսանքի չափերը կախման
մեջ դնել հենց այն պլանային առաջադրանքների մեծությունից, որոնք սահման-
ված են տվյալ ձեռնարկության համար:

Բայց ինչպե՞ս որոշել այդ առաջադրանքների բարձր կամ ցածր լինելը և
ի՞նչ չափանիշ դնել գնահատման հիմքում: Այստեղ ևս վանական առաջարկու-
թյուններ են արվում: Ոմանք գտնում են, թե գլխավոր չափանիշը **դինամիկան** է՝
պլանում նախատեսված ցուցանիշների աճը նախորդ ժամանակաշրջանի հա-
մեմատությամբ, ոմանք էլ այդ չափանիշը համարում են ձեռնարկության նվա-
ճած **մակարդակը** արտադրանքի, աշխատանքի արտադրողականության, ինքնար-
ժեքի, շահույթների և այլ բնագավառներում:

Բայց մակարդակը գնահատելու համար հարկավոր է տվյալ ձեռնարկու-
թյան աշխատանքի ցուցանիշները համադրել ուրիշ ձեռնարկությունների ցուցա-
նիշների հետ: Կարելի՞ է արդյոք այստեղ կողմնորոշվել՝ ըստ բնագավառների

միջին տվյալները նկատի ունենալով, ինչպես առաջարկում են որոշ տնտեսագետներ: Ո՛չ, չի կարելի, քանի որ այդ դեպքում հաշվի չէին առնվի գլխավոր տնտեսական հարաբերությունը պետության և ձեռնարկության միջև և արտադրության՝ դրանից բխող արմատական առանձնահատկությունները՝ այն փաստը. որ պետական սոցիալիստական ձեռնարկություններին տրամադրված են կանական արտադրական ֆոնդեր և որ այդ ֆոնդերն իրենք կգալի չափով ստեղծված են ոչ միայն տվյալ ձեռնարկությունների սեփական կապիտալ ներդրումների հաշվին, այլև համաժողովրդական կուտակումների հաշվին: Հետևապես, ըստ ճյուղերի միջին ցուցանիշները չեն կարող դրվել խթանման հիմքում, արտադրության արդյունքները հարկավոր է գնահատել ելնելով այն նորմատիվներից. որոնք սահմանված են ըստ միատեսակ արտադրական ֆոնդեր ունեցող ձեռնարկությունների խմբերի: Անհրաժեշտ է ամենակարճ ժամկետներում մշակել այդպիսի նորմատիվներ:

Եվ այսպես, բանը, ըստ երևույթին, նրանում չէ, որ միմյանց հակադրվեն երեք չափանիշները՝ պլանը, դինամիկան և մակարդակը, այլ նրանում, որ գտնըվի դրանց ճիշտ կուգակցումը: Այդ պահանջը սոցիալիստական պլանային տնտեսությունում[1] բխում է արտադրության պարգացման օբյեկտիվ պայմաններից:

Ներկայումս ՍՍՌՄ Մինիստրների սովետի աշխատանքի և աշխատավարձի պետական կոմիտեի և ՀամԿԽ-ի որոշմամբ մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում փորձի համար մտցված է ղեկավար, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին պարգևատրելու նոր սիստեմ, որն այդ սկզբունքներից է բխում: Փորձը կատարվում է բավականաչափ լայն մասշտաբով, որպեսզի կարելի լինի անհրաժեշտ հետևություններ անել[2]:

Խթանման ու խրախուսման բոլոր ձևերում անհրաժեշտ է հաշվի առնել ձեռնարկության արտադրական ֆոնդերի չափերն ու կառուցվածքը: Դա նախ և առաջ վերաբերում է ձեռնարկության ֆոնդին:

Արտադրությունը նյութապես խթանելու մյուս կարևոր պայմանը ստացված եկամտի՝ ձեռնարկությանն անցնող բաժնի **առանձնացումն է** և այն որոշակի **ժամկետի** սահմանումը, որի ընթացքում այդ բաժինը ամրացվում է ձեռնարկությանը: Այստեղ ևս առանձին աշխատողների վերաբերմամբ հարցը լուծվում է շատ ավելի հիմնավորապես, քան ամբողջությամբ վերցրած ձեռնարկության նկատմամբ: Եթե աշխատանքի արտադրողականության բարձրացումը բանվորի ստեղծած տեխնիկական կատարելագործման արդյունք է, վեց ամիս շարունակ գնահատումները չեն վերանայվում:

Ամբողջությամբ վերցրած ձեռնարկության վերաբերմամբ խթանման այդ-

---

[1] Հարկավոր է նկատել, որ արտադրության նկատմամբ արժեքի օրենքի խթանող ներգործության մեխանիզմը հաշվի է առնում երկու չափանիշ՝ դինամիկան և մակարդակը: Մի կողմից՝ աշխատանքի անհատական ծախսերը համադրվում են միջին հասարակական ծախսերի հետ, մյուս կողմից՝ ապրանք արտադրողի ստացած օգուտը կախված է նաև աշխատանքի ծախսերի դինամիկայից, որովհետև նա հասարակական արժեքից անհատական արժեքի շեղման հետ օգուտը ստանում է ոչ ընդմիշտ, մի որոշակի ժամանակով՝ մինչև այն պահը, քանի դեռ նրա անհատական արդյունքները ընդհանուր նորմա չեն դարձել:

[2] Պարգևատրման նոր սիստեմը լուծում է նաև այլ խնդիրներ՝ ապահովում է ղեկավար, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների շահագրգռվածությունը արտադրության առաջընթացի, նրա արդյունավետության բարձրացման գործում. նախատեսում է ստեղծել պարգևատրման հատուկ ֆոնդ:



պիսի երաշխիք դեռևս չկա: Դեռ ավելին: Միջոցների անբավարարության դեպքում ժողտնտխորհները և մինիստրությունները հաճախ ձգտում են ձեռնարկությունների միջև վերաբաշխել միջոցները՝ դրանք վերցնել առաջավոր ձեռնարկությունից և հանձնել ետ մնացողներին: Բայց այդպիսի կարգը խարխլում է ձեռնարկության տնտեսական շահագրգռվածությունը: Պետության և ձեռնարկությունների շատ հարաբերություններում շարունակում է գործել ամբողջ խնայողությունը վերցնելու մեթոդը, փոխանակ բաժանելու այդպիսին պետության ու ձեռնարկության միջև և դրա հիման վրա կենսագործելու խթանումը: Դրա ցայտուն օրինակը վարչակառավարչական անձնակազմի հաստիքների մի որոշակի տոկոսով կրճատումն է: Քանի որ ձեռնարկությունները ամեն տարի սպասում են կրճատումների, նրանք շահագրգռված են այն բանում, որպեսզի պահպանեն աշխատուժի առկա ռեզերվները: Մյուս կողմից, տեխնիկական պրոգրեսը պահանջում է երբեմն ավելացնել վարչակառավարչական անձնակազմի աշխատողների առանձին կատեգորիաների քանակը: Ըստ երևույթին, այստեղ ևս հարկավոր են նորմատիվներ և անձնակազմի քանակության կրճատման խթանում այդ նորմատիվների համեմատ:

Այնքանով. որքանով պլանի մեջ կարող են մտցվել նոր առաջադրանքներ. պլանավորումից մեծ չափով կախված է այն ժամկետը, որի ընթացքում տարբերակված եկամտի մի մասը մնում է ձեռնարկությանը, իսկ խնայողությունը հասարակական նորմա չի դառնում: Խթանման շահերը արմատապես խախտվում են նաև այն դեպքում, երբ պլանային առաջադրանքների ամբողջ ծանրությունը դրվում է առաջավոր ձեռնարկությունների վրա, իսկ ետ մնացողների համար սահմանվում են արտոնյալ պլաններ: Այդ ամենի հետևանքով առաջավոր ձեռնարկությունները զրկվում են նյութական խրախուսանքից, իսկ ետ մնացողները դրանից օգտվում են չափից ավելի:

Նմանօրինակ թերություններ կան նաև ձեռնարկությունների վարկավորման ու ֆինանսավորման գործում: Այսպես, վարկի միջոցով տեխնիկական միջոցառումների խթանման արդյունավետությունը խարխլվում է, երբ ձեռնարկությանը վարկ տրամադրելուն պես երբեմն մեծացվում է նրա ֆինանսական պլանը շահույթների գծով և դրանով իսկ ամբողջ լրացուցիչ խնայողությունը (կամ դրա մեծ մասը) վերցվում է հօգուտ պետական բյուջեի:

Է՛լ ավելի մեծ վնաս է հասցնում այն կարգը, երբ ստացված խնայողությունը ձեռնարկությունից վերցվում է, իսկ միջոցների գերածախսը մնում է նրա հաշվին: Դժբախտաբար, այդպիսի պրակտիկա գոյություն ունի: Եթե աշխատավարձի ֆոնդի գծով համեմատական խնայողություն ստացվել է, ասենք, 1-ին եռամսյակում, իսկ գերածախս թույլ է տրվել նույն տարվա հաջորդ եռամսյակներում, ապա ձեռնարկությունը չի կարող խնայողությունն օգտագործել գերածախսը ծածկելու համար: Ստացվում է այնպես, որ ամբողջությամբ վերցրած տարվա ընթացքում ոչ մի համեմատական գերածախս չունեցող ձեռնարկությունը կարող է բանկի պարտապանը դառնալ:

Ըստ երևույթին, ներքին ռեզերվների մոբիլիզացման շնորհիվ ստացված խնայողությունը կամ, համենայն դեպս, դրա գլխավոր մասը նպատակահարմար է թողնել ձեռնարկությանը գոնե պլանավորվող տարվա ընթացքում: Դա վերաբերում է աշխատավարձի ֆոնդին, շրջանառու միջոցներին և այլն: Նման կարգը թույլ կտա ձեռնարկությունների աշխատանքում ձեռք բերել կայունություն, որն

անհրաժեշտ է նրանց նորմալ տնտեսական գործունեության համար, և կուժեղացնի արտադրության տնտեսական խթանումը:

III

Պրակտիկան ցույց է տալիս, որ բավական չէ գտնել արտադրության արդյունքների հասարակական գնահատման անհրաժեշտ չափանիշներ, ճիշտ որոշել ձեռնարկության բաժինը նրա ստեղծած եկամտի, կամ ստացած խնայողության մեջ. դեռևս բավական չէ **նախապես որոշված ժամկետում այդ բաժինը** ձեռնարկությանն ամրացնելը և դրանով իսկ արտադրության կարգացման գործում տնտեսական շահագրգռվածություն ապահովելը: Հարկավոր է նաև, որ ձեռնարկությունը հնարավորություն ունենա մի որոշակի սահմաններում արտադրության կարգացման ամենաբարենպաստ ուղիներ և միջոցներ ընտրելու այն հաշվով, որ տարբերակված եկամուտ ստանա: Միայն այդ դեպքում տնտեսական օգուտները, իսկ հետևաբար նաև տնտեսական խթանները էապես կազդեն աշխատանքի և արտադրության կատարելագործման վրա:

**Արտադրությունը խթանելու կարևորագույն պայմաններից մեկը ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության տնտեսապես հիմնավորված սահմանների որոշումն է: Բոլորն էլ խոսում են հօգուտ նրա, որ հարկավոր է ապահովել այդ ինքնուրույնության ընդլայնումը միասնական տնտեսական պլանի շրջանակներում:** Սոցիալիստական ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության էկոնոմիկական սահմանները չեն կարող որոշվել կամայականորեն: Մեր տեսակետից այդ սահմանները գլխավորապես որոշվում են սոցիալիստական արտադրության հանրայնացման աստիճանով: Եվ խնդիրը միայն այն չէ, որ խթանման սիստեմը հարմարեցվի հանրայնացման ձեռք բերված մակարդակին, այլև այն, որ հանրայնացումը բարձրացվի մինչև նոր խնդիրների մակարդակը: Արտադրության հետագա հանրայնացումը ընթանում է երկու ուղիներով՝ ձեռնարկությունների չափերի մեծացում՝ նրանց արտադրության ծավալը ընդլայնելու, այդ միավորները միացնելու և ձուլելու, ինչպես նաև վանական միավորումներ՝ ֆիրմաներ և այլն ստեղծելու ուղիով:

ՍՍՌՄ արդյունաբերության մեջ, չնայած մեծաթիվ խոշորագույն ձեռնարկությունների առկայությանը, որոնք այժմ տալիս են արդյունաբերական արտադրանքի հիմնական մասը (տարեկան 10 միլիոն ռուբլուց ավելի արտադրության ծավալ ունեցող, 5,5 տոկոս կազմող ձեռնարկությունները տալիս են ամբողջ արդյունաբերական արտադրանքի 56 տոկոսը), դեռևս շատ կան միջին, ոչ մեծ և փոքր ձեռնարկություններ: Շատ ձեռնարկություններ՝ թե՛ խոշոր, թե՛ միջին, թե՛ փոքր, չեն մտնում որևէ արտադրական միավորման մեջ: Ֆիրմաների մեջ մտնող ձեռնարկությունների բանվորների ու ծառայողների ընդհանուր թիվը հասնում է մոտ մեկ միլիոնի:

Աշխատանքի հասարակական բաժանման և արտադրության է՛լ ավելի մասնագիտացման հետևանքով անընդհատ ավելանում է արդյունաբերության ինքնուրույն ճյուղերի և այն ձեռնարկությունների թիվը (վիճակագրությունը ներկայումս դրանք հաշվում է մոտ մի քանի հարյուր), որոնք մասնագիտանում են առանձին պատրաստի դետալների արտադրման մեջ, կամ որոնք կատարում են ավարտուն տեխնոլոգիական պրոցեսի առանձին ստադիաներ:

Հարց է ծագում, թե ժողովրդատնտեսական պլանի ամրապնդման շահերին



և արտադրության խթանման խնդիրներին համապատասխանո՞ւմ է արդյոք ժողովրդական տնտեսության մեջ ինքնուրույն տնտեսական բջիջների թվի ավելացումը, ամեն մի այդպիսի ձեռնարկության վերածումը հասարակական արտադրության ընդհանուր շղթայում առանձին ոչ մեծ օղակի՝ ինքնուրույն տնտեսական միավորի, թե՞ մի ուրիշ ուղղությամբ պետք է փնտրել ժողովրդական տնտեսության մեջ տնտեսական բջջի ինքնուրույնության բարձրացումը:

Մեր կարծիքով տնտեսական բջիջների թվի բազմապատկումը չէր հեշտացնի, այլ կբարդացներ արտադրության պլանավորումն ու խթանումը, տնտեսությունն ավելի պակաս չափով կառավարման կենթարկվեր և քանակական տեսակետից նույնիսկ մի քայլ ետ կլիներ ժամանակակից կապիտալիզմի համար հասանելի հանրայնացման աստիճանից:

Վ. Ի. Լենինը իր ժամանակին մեծ ուշադրություն էր դարձնում տարբեր արտադրական միավորումների կարգացման ձևերին սոցիալիստական արդյունաբերության մեջ: Լենինը ելնում էր այն բանից, որ մոնոպոլիստական միավորումները, որոնք ծագել են արտադրության կապիտալիստական համակենտրոնացման բարձրագույն աստիճանում, լինելով շահագործման ու կեղեքման ծայրահեղ ձևերի կրողը, դրա հետ միասին բովանդակում են հետագա հանրայնացման, արտադրության և կապիտալի համակենտրոնացման տենդենցը:

Արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության տիրապետությունը չի նշանակում, թե ժողովրդական տնտեսությունը պետք է վերածվի մեկ միասնական ֆաբրիկայի: Ժողովրդական տնտեսության մասշտաբով ժամանակակից խոշոր մեքենայական ինդուստրիայի ստադիայում չի կարելի իր մանրամասնություններով պլանավորել յուրաքանչյուր առանձին արտադրողի կամ նույնիսկ յուրաքանչյուր առանձին ձեռնարկության գործունեությունը: Արտադրողական ուժերի կարգացման ժամանակակից մակարդակի պայմաններում ժողովրդական տնտեսության անհրաժեշտ օղակը պետք է լինեն արտադրական միավորումների տարբեր ձևերը: Դա ո՛չ միայն կարագացնի տեխնիկական պրոգրեսը, աշխատանքի արտադրողականության աճումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, այլև կամրապնդի պլանային սկզբունքը ժողովրդական տնտեսությունում, թույլ կտա ընդլայնելու խոշոր տնտեսական բջիջների ինքնուրույնությունը, կհեշտացնի մի շարք խնդիրների լուծումը և ժողովրդական տնտեսության կառավարումը ավելի ճկուն կդարձնի:

Մեր մամուլում շատ է խոսվել ձեռնարկությունների տնտեսական խթանման գործում շահույթների դերը բարձրացնելու անհրաժեշտության մասին: Բայց շահույթը արտադրության վերջնական արդյունքն է նրա արժեքի տեսակետից: Իսկ ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով վերարտադրության պլանաչափությունն ապահովելը, ինչպես հայտնի է, ենթադրում է անհրաժեշտ համամասնությունների ձեռքբերում ո՛չ միայն արժեքի, այլև համաձայնեցվածություն արժեքի և արտադրության նյութա-իրային տարրերի համամասնությունների միջև: Ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար կոնկրետ սպառողական արժեքներում վճռական նշանակություն ունի բնամթերքով վերջնական կոմպլեկտային արտադրությունը: Ժողովրդական տնտեսության պլանավորումը անչափ բարդանում է, եթե հարկ է լինում զբաղվել ո՛չ միայն և ոչ այնքան կոմպլեկտային վերջնական արտադրանքների պլանավորմամբ, որքան արտադրանքի տարրերի, մասերի պլանավորմամբ՝ դրանց արտադրության ստադիայում, գործ ունենալ ոչ թե այնպիսի արտադրական միավորումների հետ,

որոնք իրենց սահմաններում կլանում, միավորում են վերջնական արտադրանքի բազմաքանակ ստադիաներ ու տարրեր, այլ անմիջականորեն մանր տնտեսական բջիջների հետ, որոնք թողարկում են միայն արտադրանքի տարրեր, կատարում են միայն տեխնոլոգիական պրոցեսների առանձին ստադիաներ: Մի խոսքով արտադրական միավորումները պետք է կառուցվեն մասնագիտացման, կոոպերացման և կոմբինացման խելացի զուգակցմամբ:

Պլանավորման տեսակետից կարևորագույն նշանակություն ունի այն փաստը, որ միավորումների կարգացման հետ միասին արտադրանքի առանձին տարրերի շրջանառությունը կդառնա միավորման ներքին շրջանառություն: Ուստի, արտադրանքի տարրերի արտադրության գործում համամասնության հասնելը կդառնա հենց իր՝ միավորման, գործը: Դա ո՛չ միայն հեշտացնում է ժողովրդատնտեսական պլանավորումը, այլև ընդլայնում է միավորման ինքնուրույնությունը արտադրանքի տարրերի անմիջական արտադրությունը և տեխնոլոգիական պրոցեսի ստադիաները միավորման ներսում պլանավորելու գործում:

Գործ ունենալով արտադրական միավորումների հետ, ժողովրդական տնտեսությունը կարող է նրանից պահանջել թողարկել այնպիսի վերջնական արտադրանք, որը բավարարի որոշակի տեխնիկական պահանջների և աշխատանքի առաջադրված ծախսումներին: Միավորման կազմի մեջ մտնող առանձին ետ մնացող ձեռնարկություններին առաջ մղելը նույնպես կդառնա հենց միավորման գործը: Իսկ քանի դեռ ձեռնարկությունները գոյություն ունեն ինքնուրույն կերպով, նրանց անհատական պլանները հաճախ սոսկ ամրապնդում են նրանց ետ մնալը:

Հեշտանում է նաև կապերի ձեռքբերումը արտադրանքների արտադրության և իրացման միջև, ապահովվում է արտադրանքի այն որակը, այն ասորտիմենտը, որոնք առավել լավագույն ձևով բավարարում են արտադրական և անձնական սպառմանը: Այնպիսի առանձին տնտեսական բջջի շրջանակներում, որոնք թողարկում են արտադրանքի մասեր կամ կատարում են այդ արտադրանքի արտադրության առանձին ստադիաներ, արտադրական ծախսերի հատուցումն ու աշխատողների խրախուսումը կեննագործվում է արտադրանքի այդ մասերի կամ տարրերի իրացումից հետո: Բայց այդպիսի կարգը երաշխիք չի ստեղծում, թե արտադրական կամ անձնական սպառման համար կմատակարարվեն անհրաժեշտ քանակության կոմպլեկտային վերջնական արդյունքներ և որ այդ դեպքում անհրաժեշտ համամասնություն ձեռք կբերվի արտադրության մեջ: Իսկ արտադրական միավորումներում, որոնք ընդգրկում են արտադրության մի շարք ստադիաներ և թողարկում են վերջնական արտադրանք, արտադրական ծախսերի հատուցումը և աշխատողների շահագրգռումը կարելի է հեշտությամբ կապել հենց վերջնական արդյունքի թողարկման հետ:

Անձնական սպառման առարկաներ արտադրող ճյուղերում, ուր ապրանքներն իրացվում են մանրածախ առևտրի միջոցով, արտադրության աշխատողների շահագրգռումը այժմ մեծ չափով կտրված է արտադրանքի իրացումից: Այնպիսի արտադրական ֆիրմաների ստեղծումը, որոնց արտադրանքն իրացվում է ֆիրմային խանութներում, կամ այնպիսի արտադրա-առևտրական ֆիրմաների ստեղծումը, որոնք իրենց մեջ ընդգրկում են արտադրական և առևտրական ձեռնարկությունները, այդ խնդրի լուծման հնարավոր միջոցներից մեկն է:

Պրակտիկայում հավասարարական մոտեցում է ստեղծվել ձեռնարկությունների իրավունքների նկատմամբ, անկախ դրանց չափերից՝ սկսած հսկա գործարանից մինչև փոքր, հազիվ 100 բանվոր ունեցող գործարանը: Նրանց պլանային ցուցանիշների շրջանակը նույնն է, տնտեսական տեսակետից մանրելու հնարավորությունները միատեսակ են. խոշոր ֆիրմաների իրավունքները նույնն են, ինչ որ մանր ինքնուրույն ձեռնարկություններինը: Ավելի ճիշտ չի՞ լինի արդյոք ձեռնարկությունների վերաբերյալ օրենքի հետ միասին հատուկ օրենք կամ կանոնադրություն հաստատել միավորումների իրավունքների, ժողովրդական տնտեսության և միավորման մեջ մտնող ձեռնարկությունների հետ նրանց փոխհարաբերությունների վերաբերյալ:

Որքան ավելի խոշոր լինի տնտեսական բջիջը, այնքան ավելի քիչ մանրամասներ կպարունակեն պլանի հիմնական հատվածները: Նշանակում է, յուրաքանչյուր տնտեսական բջիջ ավելի շատ հնարավորություն կունենա իր տնտեսական շահերին համապատասխան արտադրությունը կարգացնելու ուղիների ու միջոցների ընտրության մեջ, հետևապես, կուժեղանա արտադրության տնտեսական խթանը:

Այսպիսով, արտադրության պլանավորումն ու խթանումը կատարելագործելու շահերը պահանջում են, որ արտադրական միավորումները դառնան ժողովրդական տնտեսության կառավարման ընդհանուր շղթայի անբաժանելի օղակը:

## IV

Ձեռնարկության համար արտադրության տնտեսական շահավետությունը վերջնական արտահայտությունն ստանում է շահույթի մեջ: Շահույթի մի մասն ձեռնարկությանը ծառայում է որպես նրա խթանման հիմք: Աշխատավարձի միջոցով ձեռնարկության աշխատողների անհատական և կոլեկտիվ շահագրգռվածությունը հիմնականում ձեռք է բերվում, ինչպես հայտնի է, աշխատավարձի օգնությամբ: Պարգևատրումը աշխատավարձի այն մասն է, որը առավել սերտորեն է կապված ձեռնարկության աշխատանքի արդյունքների, այդ թվում նաև շահույթի չափերի հետ: Այստեղից էլ պարզ է, որ **ձեռնարկության խթանման և աշխատողի նյութական շահագրգռվածության միջև կապ հանդիսացող օղակը պետք է լինի հենց պարգևատրումը և շահույթը:**

Գործող օրենսդրությամբ ձեռնարկության ֆոնդը գոյանում է նայած պլանային և արտապլանային շահույթի չափերին: Սակայն այդ ֆոնդի ձևավորման եղանակի մեջ մատնանշված թերությունների և դրանից վճարվող պարգևատրումների աննշան չափերի հետևանքով այդ ֆոնդի պրակտիկ նշանակությունը խթանման գործում մեծ չէ: Պարգևատրումների մեծ մասը վճարվում է վարչական և ինժեներա-տեխնիկական աշխատողներին՝ ելնելով ոչ թե շահույթի չափերից, այլ ինքնարժեքի պլանի կատարումից և գերակատարումից:

Հասկանալի է, որ ինքնարժեքի իջեցումը շահույթի մեծացման հիմքն է, բայց արտադրության աճի և կատարելագործման խթանման ամենևին էլ ոչ բոլոր կողմերն են արտահայտվում ինքնարժեքի մեջ: Իսկ շահույթի օգնությամբ, պատշաճ գների առկայության դեպքում, կարելի է խթանել արտադրության աճի և կատարելագործման շատ կարևորագույն կողմեր:

Հիրավի: Արտադրության խթանումը պետք է ապահովի՝ արտադրության աճը, արտադրության պրոգրեսիվ կառուցվածքին, արտադրանքի ասորտիմենտին հասնելը, արտադրանքի որակի, սպառողական հատկությունների բարելավու-

մը. կենդանի և առարկայական աշխատանքի խնայողությունը՝ նոր տեխնիկա արմատավորելու, արտադրության ու աշխատանքի կազմակերպումը բարելավելու հաշվին:

Ապրանքա-դրամական հարաբերությունների օգնությամբ արտադրության աճը և կատարելագործումը այդ բոլոր ուղղություններով խթանելու համար հարկավոր է արտադրության նկատմամբ օրենքի ներգործության **երկու կողմերն էլ**, այն է՝ անհատական արժեքի շեղումը հասարակական արժեքից և գների շեղումը արժեքից, **պլանաչափորեն օգտագործել**: Արտադրությունը խթանելու հիմքում դնելով ինքնարժեքը և բացառելով արժեքից գների շեղման ազդեցությունը ձեռնարկության աշխատանքի ընդհանուր հանրագումարների գնահատման վրա, մենք առավելապես օգտագործում ենք արտադրության նկատմամբ արժեքի օրենքի ազդեցության մի կողմը, որը կապված է արտադրության պրոցեսում աշխատանքի խնայողության հետ և ստվերի մեջ ենք թողնում մյուս կողմը, որն էլ հենց կոչված է խթանելու արտադրանքի որակի բարելավումը, արտադրական և անձնական սպառման մեջ այդ արտադրանքի հուսալիության, դիմացկունության, խնայողականության բարձրացումը, արտադրանքի ասորտիմենտի հարմարեցումը սպառողական պահանջարկին և պահանջարկի ու առաջարկի փոփոխվող հարաբերակցություններին:

Շահույթի ցուցանիշը ձեռնարկությունը խթանելու տեսակետից մի շարք առավելություններ ունի ինքնարժեքի ցուցանիշի համեմատությամբ:

Շահույթի չափերն արտացոլում են ձեռնարկության աշխատանքի թե՛ քանակական, թե՛ որակական ցուցանիշները: Եթե արտադրանքի միավորի ինքնարժեքը մնացել է անփոփոխ, իսկ արտադրության ծավալը մեծացել է, ապա շահույթի զանգվածը կաճի: Իսկ ինքնարժեքի իջեցումը այդպիսի ուղղակի կախման մեջ չէ արտադրության չափերից, ինչպես շահույթի գումարը:

Շահույթի չափը կախված է ինչպես անհատական և հասարակական արժեքների հարաբերակցությունից, այնպես էլ գնի և արժեքի հարաբերակցությունից: Անհատական ինքնարժեքի փոփոխությունը ինչ-որ չափով կարող է արտահայտել անհատական արժեքի շեղումը հասարակական արժեքից: Ընդ որում գնի և արժեքի հարաբերակցությունը, որ տարբեր է տարբեր տեսակի արտադրանքի վերաբերմամբ, մի կողմ է մնում (առավել ևս, եթե ինքնարժեքի պլանի կատարումը կարգավորվում է պլանից փաստական ասորտիմենտի շեղումը հաշվի առնելով): Մինչդեռ գները ինքնարժեքի նկատմամբ հենց նրա համար էլ տարբեր մակարդակով են սահմանվում, որպեսզի խթանվի արտադրության կարգացման այս կամ այն ուղղությունը: Գնի և արժեքի հենց այդ տարբեր հարաբերակցությունը պետք է օգտագործել արտադրանքների նոր տեսակների արտադրությունը խթանելու և հները արտադրությունից հանելու համար:

Գինը պետք է հաշվի առնի արտադրանքի որակը, երկարատև օգտագործման առարկաների հուսալիությունն ու դիմացկունությունը, իրերի օգտակարությունը և այլն: Բայց ինքնարժեքի իջեցումը կարող է հակադրվել որակի բարձրացմանը, եթե որակի այդ բարելավումը և հուսալիությունը լրացուցիչ ծախսեր են պահանջում:

Շահույթի չափերը կախված են արտադրանքը գոնե առևտրի մեծածախ բազաներում իրացնելուց: Ապրանքային արտադրանքի ինքնարժեքն արտացոլում է արտադրության ծախսերը՝ առանց հաշվի առնելու, թե արտադրանքն արդյոք առաքված է, թե մնում է արտադրող ձեռնարկության պահեստներում:



Չնայած շահույթի այս բոլոր առավելություններին, էլ ինչի՞ համար է ներկայումս արտադրության աշխատողների խրախուսումը կենսագործվում առանց նկատի ունենալու շահույթը, այլ սոսկ միայն հաշվի առնելով ինքնարժեքի ցուցանիշները: Դա արդարացի կլիներ մինչև այն պահը միայն, քանի դեռ վերացված չեն խոշորագույն թերությունները մեծածախ գներում: Հայտնի է, որ գոյություն ունեցող գները շատ դեպքերում չեն խրախուսում նոր արտադրանքների յուրացումը, արտադրության պրոգրեսիվ կառուցվածքը և այլն, չխոսելով արդեն այն մասին, որ առանձին ճյուղերում այդ գները չեն ապահովում արտադրության շահավետությունը:

Այդ դեպքում էլ ինչպե՞ս են խթանվում որակի բարելավումը, ասորտիմենտը, նոր արտադրանքի յուրացումը և տեխնիկայի պրոգրեսը: Դրա համար հարկ է լինում մտցնել խրախուսման մեծաքանակ լրացուցիչ սիստեմներ, որոնք հաճախ հակասում են մեկը մյուսին և ավելի են բարդացնում պարգևատրման սիստեմը: Արտադրանքի որակն ու ասորտիմենտը բարելավելը, նոր արտադրանքներ յուրացնելը, արտադրությունը պահանջարկներին հարմարեցնելը խթանելու ամենագործուն և հեռանկարային եղանակն այն է, որ այդ նպատակներով օգտագործվեն գինն ու շահույթը, և լրացուցիչ շահույթի մի մասը պլանաչափորեն ծառայի արտադրության հետագա կատարելագործման և աշխատողներին նյութապես խրախուսելու վրա:

Ինչպես հայտնի է, 1966 թվականի հունվարի 1-ից մտցվելու են ծանր արդյունաբերության արտադրանքի նոր մեծածախ գներ: Գների մեջ նախատեսվող փոփոխությունները անհրաժեշտ է օգտագործել արտադրության խթանումը բարելավելու համար: Բայց այդ նպատակներով հարկավոր է, մեր կարծիքով, դեռ մի քանի խնդիրներ էլ լուծել:

Կարելի՞ է արդյոք պարգևատրման ֆոնդի չափերը ուղղակի կապել շահույթի չափերի հետ, եթե նույնիսկ այդ շահույթը որոշվի ելնելով նոր, ճիշտ կազմված գներից: Նյութական շահագրգռվածության սկզբունքը բխում է ըստ աշխատանքի բաշխումից: Խրախուսանքի չափերը պետք է համապատասխանեն կոնկրետ արտադրական պայմաններին, աշխատողի աշխատանքային ավանդին: Քանի որ արտադրանքն իրացվում է միասնական գներով, ձեռնարկության շահույթի չափերը էականորեն կախված են նրան ամրացված այն արտադրական ֆոնդերի չափերից ու կառուցվածքից, որոնք ո՛չ միայն տվյալ կոլեկտիվի աշխատանքի արդյունքն են, այլև կապիտալ ներդրումների այն ծավալն են, այն ֆոնդերը, որոնց տվյալ ձեռնարկությանն է տրամադրել ժողովրդական տնտեսությունը: Ընդ որում, որքան համեմատականորեն մեծ են ձեռնարկության արտադրական ֆոնդերը, այնքան քիչ են բանվորներն ու ծառայողները տվյալ ձեռնարկությունում, հետևաբար, մեկ աշխատողի հաշվով այնքան ավելի շահույթ է ընկնում: Ուստի, եթե ձեռնարկության պարգևատրման ֆոնդի գոյացումը ուղղակի կախման մեջ դնենք շահույթից (նույնիսկ նոր գներ մտցնելուց հետո), ապա մի դեպքում պարգևատրումը չափից դուրս բարձր կլինի, իսկ մի այլ դեպքում՝ անիրավացիորեն ցածր:

Արժեքի հատուցման սկզբունքը, որի վրա հիմնված են տնտհաշվարկը և ձեռնարկությունների տնտեսական խթանումը, և ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը, որն ընկած է աշխատողների նյութական խրախուսման հիմքում, պետք է հարմարվեն միմյանց: Ինչպե՞ս անել այդ: Ելքը, մեր կարծիքով, այն է, որ կա՛մ պետք է արտադրող ձեռնարկության համար սահմանվեն ոչ թե միաս-

ական, այլ տարբերակված գներ՝ ըստ ձեռնարկությունների խմբերի, նայած նրանց տեխնիկական պինվածությանը արտադրական ֆոնդերով, կա՛մ պետք է միասնական գների առկայությամբ մշակվեն (դա, ըստ երևույթին, հեշտ է անել) տարբերակված նորմատիվներ շահույթի համեմատ պարգևատրման ֆոնդ կազմելու համար՝ ըստ ձեռնարկությունների խմբերի: Հետևապես, **ձեռնարկությունների աշխատանքի ընդհանուր հանրագումարների բարելավման նպատակով պարգևատրման սիստեմը, նոր գների վրա հիմնված շահույթի չափերին համեմատ, վերակառուցելու համար հարկավոր է առանց ձգձգելու կատարելագործել այդ նորմատիվների մշակումը:** Ինչ վերաբերում է պարգևատրման ցուցանիշներին և պայմաններին, ապա դրանք պետք է տարբերակված լինեն ըստ արտադրության ճյուղերի և աշխատողների կատեգորիաների:

Ներկայումս ձեռնարկության ֆոնդը օգտագործվում է ո՛չ միայն պարգևատրման, այլև աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու և արտադրությունն ընդլայնելու համար: Բայց չի կարելի նույն նորմատիվներով որոշել շահույթի այն մասը, որը պետք է թողնվի ձեռնարկությանը՝ արտադրությունն ընդլայնելու համար և այն մասը, որը հատկացվում է խրախուսման ֆոնդին: Բանն այն է, որ արտադրության ընդլայնման նպատակով ձեռնարկության կապիտալ ներդրումների պահանջմունքներն այնքանով մեծ են, որքանով բարձր է արտադրության տեխնիկական հագեցվածությունը: Ուստի արտադրության ընդլայնմանը հատկացվող շահույթի մասը որոշելու համար միանգամայն այլ նորմատիվներ են անհրաժեշտ: Հետևապես, աշխատողների խրախուսման ու կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ֆոնդը և արտադրության ընդլայնման ֆոնդը պետք է անջատվեն:

Մինչև 1962 թվականը, քանի դեռ տարբեր ճյուղերում և տարբեր ձեռնարկություններում հիմնական ֆոնդերը հաշվի էին առնվում ոչ միատեսակ գներով, այդպիսի նորմատիվների մշակումը գործնականորեն անհնարին էր: Հիմնական ֆոնդերի 1962 թվականին կատարված վերագնահատությունը ու ամորտիզացիայի նորմաների վերանայումը և նոր գների առկայությունը անհրաժեշտ պայմաններ են ստեղծում այդ խնդիրը կատարելու համար:

Գների նոր սիստեմը ինքնին վերցրած դեռ բավական չէ նաև նոր արտադրանքի արագ յուրացման և արտադրությունից հինը հանելու գործում ձեռնարկությունների շահագրգռվածությունն ապահովելու համար: Բանն այն է, որ արտադրանքի արտադրության յուրացմանը համեմատ նրա ինքնարժեքը մշտապես իջնում է: Այդ պատճառով էլ ինչ-որ մի աստիճանի վրա նոր արտադրանքը ձեռնարկության համար ավելի պակաս շահավետ է ստացվում, քան հինը, իսկ բյուջեի շահերը միշտ չէ, որ թույլ են տալիս իջեցնել հին արտադրանքի գները:

Ինչպե՞ս վերացնել այդ հակասությունը:

Մենք կարծում ենք, որ նոր արտադրանքի յուրացման և նրա ինքնարժեքի իջեցման համեմատ հարկավոր է գների կազմի մեջ մտցնել կենտրոնացված զուտ եկամուտ, համապատասխանորեն նվազեցնելով շահույթի չափը: Դա հնարավորություն կտար սահմանափակել հին արտադրանքի շահավետության աճը, իսկ այդ արտադրանքի նկատմամբ գները իջեցնել միայն այն ժամանակ, երբ այդ թույլ կտան ամբողջ ժողովրդական տնտեսության շահերը:

Արտադրանքի արտադրության ու յուրացման միջև կապերն ուժեղացնելու նպատակով անհրաժեշտ է քննադատաբար դիտել ձեռնարկությունների զուտ եկամտի մի մասը հօգուտ պետական բյուջեի վերցնելու գոյություն ունեցող



ձևերը: Ինչպես հայտնի է, ձեռնարկությունների զուտ եկամտի կգալի մասը բյուջեի մեջ է մտնում ոչ թե շահույթը բաշխելու ճանապարհով, այլ շրջանառության հարկի միջոցով, որը բյուջեի մեջ է մտնում անկախ ձեռնարկությանն ամրացված արտադրական ֆոնդերի չափից, արտադրանքը վերջնական սպառողի մոտ իրացնելուց և արտադրության փաստական ինքնարժեքից: Այդպիսի կարգը կոչված է ապահովելու բյուջեի եկամուտների կայունությունը: Բայց այդ ունի նաև իր ստվերոտ կողմերը, այն է՝ թուլացնում է արտադրող ձեռնարկության շահագրգռվածությունը ֆոնդերի օգտագործումն ու արտադրանքի իրացումը բարելավելու գործում:

Ներկայումս առևտրի մեջ կուտակվել են ոչ քիչ թվով ժողովրդական սպառման առարկաներ, առանձնապես գործվածքեղեն և կարված արտադրանքներ, որոնք վաճառահանման տեղ չունեն: Հարց է ծագում, թե այդ ապրանքներն արտադրող ձեռնարկություններն ինչպե՞ս են հատուցում իրենց ծախսերը, եթե տնտհաշվարկի սիստեմը ենթադրում է, որ այդ ծախսերը պետք է հատուցվեն արտադրանքի վերջնական սպառումից ստացված եկամուտներով: Պատասխանը շատ պարզ է: Իրականում թեթև արդյունաբերության ճյուղերում հետևողական տնտհաշվարկ չկա, որովհետև ձեռնարկությունների ծախսերը ծածկվում են առևտրի օրգանների՝ արտադրանքի իրացումից ստացված եկամուտներով և ոչ թե այդ արտադրանքները վերջնական սպառողին վաճառելով: Իսկ առևտուրը որտեղի՞ց է միջոցներ վերցնում արտադրության գծով ձեռնարկությունների ծախսերը հատուցելու համար, եթե արտադրանքը իրացված չէ սպառողի մոտ: Բյուջեից: Իսկ բյուջեն որտե՞ղ է աղբյուրներ գտնում նման ֆինանսավորման համար: Մի կգալի չափով շրջանառության հարկից, որը ձեռնարկությունից ստացվում է անկախ այն բանից՝ արտադրանքը վերջնական սպառողի մոտ իրացվել է, թե ոչ: Այդպես է շրջափակվում այն շրջանագիծը, որը սեղմում է արտադրության խթանումը և թուլացնում արտադրության կախվածությունը արտադրանքի իրացումից և, վերջին հաշվով՝ բնակչության պահանջարկի բավարարումից:

Այդ թերությունները հաղթահարելու համար անհրաժեշտ է ձեռնարկություններում շահույթների գոյացումը, ինչպես նաև ձեռնարկություններից զուտ եկամտի մի մասը հօգուտ պետության վերցնելը ավելի սերտորեն կապել վերջնական սպառողի մոտ արտադրանքի իրացման և այն արտադրական ֆոնդերի հետ, որոնք ամրացված են ձեռնարկություններին: Որպեսզի ձեռնարկությունների խթանման բարելավումը զուգորդվի աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման հետ, **հարկավոր է բարձրացնել պարգևատրումների դերը իրենց՝ արտադրության աշխատողների աշխատավարձի մեջ:**

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕԲՅԵԿՏԻՎ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԸՆԴԵՐՔՈՒՄ

ՀՈՎՀ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

*Հետազոտելով արտադրության կապիտալիստական եղանակի զարգացման օրինաչափությունները, Մարքսը Կապիտալ-ում հանճարեղորեն ապացուցել է, որ արտադրության այդ առանձնահատուկ եղանակը սոցիալիզմի առաջացման համար անհրաժեշտ նյութական նախադրյալներն ստեղծում է իր ընդերքում, տարերայնորեն, աստիճանաբար։*

*Ճիշտ այնպես, ինչպես մի ժամանակ ֆեոդալական հասարակության մեջ մանր արտադրությունն իր զարգացման ընթացքով ստեղծել է իր սեփական ոչնչացման պայմանները, նույնպես էլ կապիտալիստական արտադրությունն է ստեղծում այն անհրաժեշտ պայմանները, որոնց ճնշման տակ ինքը պետք է կործանվի։ Այդպիսին է զարգացման պատմական պրոցեսը։ Եվ, եթե այդ պրոցեսն ունի դիալեկտիկական բնույթ, ապա հասկանալի է, որ դա Մարքսի ցանկություններով չէր պայմանավորված։ Ի տարբերություն սուբյեկտիվիստների և վոլյունտարիստների, Մարքսը երբեք պատմության զարգացմանը օրենքներ թելադրելու հավակնություններ չի ունեցել։ Հետազոտելով արտադրության կապիտալիստական եղանակը, նա այդ եղանակին հատուկ օրենքները բացահայտել է նրա սեփական պատմության մեջ և նրանց օգնությամբ ապացուցել, որ «...պրոլետարիատի ազատագրման համար անհրաժեշտ նյու-* թական պայմանները *տարերայնորեն ծնում է կապիտալիստական արտադրության զարգացման ընթացքը...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Նամակներ «Կապիտալի» մասին», էջ 266)։*

Արտադրության կապիտալիստական եղանակն իր սեփական բացասման նյութական նախադրյալներն ստեղծում է արտադրողական ուժերը զարգացնելու, արտադրության միջոցները կենտրոնացնելու, աշխատանքին կոլեկտիվ բնույթ տալու և իր գերեզմանափորին ու սոցիալիստական արտադրության կրողին՝ պրոլետարիատի դասակարգին, ծնելու ձևերով։

*Եթե ֆեոդալիզմի իմանենտ օրենքն այն էր, որ արտադրողական ուժերի զարգացումն առաջ էր բերում արտադրության միջոցների աճող մանրատում, փոշիացում, ապա կապիտալիզմի առանձնահատուկ օրենքն այն է, որ «արտադրողական ուժերի նույն զարգացումը խլում է մեծամասնությունից սեփականությունը և այն կենտրոնացնում չնչին փոքրամասնության ձեռքում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 9)։*

*Մարքսը վերլուծելով կապիտալիստական արտադրության զարգացման*



*պատմական տենդենցը, նշել է, որ կապիտալիզմն իր պատմությունն սկսել է ֆեոդալական հասարակարգի կողմից ստեղծված արտադրության անհատական ու փոշիացած միջոցները հասարակականորեն համակենտրոնացված արտադրության միջոցների վերածելով, անմիջական արտադրողների հսկայական մեծամասնության գաճաճային սեփականությունը մի բուռ կապիտալիստների վիթխարի սեփականությունը դարձնելով։ Ծագման առաջին իսկ օրից դրսևորելով իր գիշատիչ բնույթը, կապիտալիզմը ժողովրդական լայն մասսաներին իրենց արտադրության միջոցներից ու կենսամիջոցներից զրկելու պատմական պրոցեսն իրականացրել է «ամենաանխնա վանդալիզմով», «ամենաստոր, ամենակեղտոտ, ամենամանր ու ամենակատաղի կրքերի ազդեցության տակ» («Կապիտալ», հ. 1, էջ 795)։*

*Երբ մանր արտադրողների սեփականազրկումն իր լայնությամբ ու խորությամբ բավականաչափ իրականացրեց և իր սեփական ոտքերի վրա կանգնեց, կապիտալիզմն արտադրության միջոցների կենտրոնացման պրոցեսը շարունակեց իրեն ներհատուկ օրենքների խաղով։ Արտադրության համակենտրոնացման օրենքը, որը գործում է կապիտալիզմի ողջ գոյության ընթացքում, սոցիալիզմի համար անհրաժեշտ նյութական նախադրյալների ստեղծման ուժեղագույն գործոն է։ Կապիտալիզմի այդ, և կոնկուրենցիայի օրենքի գործողությունների խաչհատման հետևանքը միշտ ապես լինում է այն, որ շնաձկները (խոշոր կապիտալիստները) կուլ են տալիս ձկնկուլներին (մանր կապիտալիստներին) ու վերջիններիս արտադրության միջոցները կենտրոնացնում են իրենց ձեռքում։*

*Արտադրության ցիրուցան, մանրատված միջոցները կենտրոնացնելը և ժամանակակից հզոր արտադրողական ուժեր ստեղծելը, արտադրության կապիտալիստական եղանակի ու նրա կրողի՝ բուրժուազիայի պատմական դերն ու արդարացումն են։ Արտադրության միջոցների կենտրոնացման հետ ձեռք-ձեռքի տված զարգանում է նաև «աշխատանքի հանրայնացումը», որը ինչպես նշել է Լենինը, կազմում է «սոցիալիզմի անխուսափելի վրա հասնելու գլխավոր նյութական հիմքը» (Երկեր, հ. 21, էջ 77)։ Կապիտալիստական հասարակարգում, որտեղ արտադրության միջոցները կապիտալիստների մենոպոլ սեփականությունն են, իսկ այդ միջոցներից զուրկ բանվորները համատեղ աշխատում են նրանց ֆաբրիկաներում ու գործարաններում, աշխատանքի պրոցեսի կազմակերպումը, որն իրականանում է կոոպերացիայի, աշխատանքի բաժանման և աշխատանքը բնագիտության հետ շաղկապելու միջոցով, երևան է գալիս իբրև հասարակական աշխատանքի կազմակերպում։*

*Կապիտալիզմն արտադրության անհատական միջոցներն ըստ էության վերածելով արտադրության հասարակական միջոցների և արտադրության պրոցեսին տալով հանրային, կոլեկտիվ բնույթ, այդպիսով «երկու կողմից էլ... վերացնում է մասնավոր սեփականությունն ու մասնավոր աշխատանքը, թեև հակադիր ձևով» («Կապիտալ», հ. 3, մաս 1-ին, էջ 250)։ Այսինքն, որքանով որ այդ «վերացումն» իրականանում է կապիտալիստական արտադրական հարաբերությունների շրջանակներում (որի պատճառով էլ կենտրոնացված արտադրության միջոցներն ու կոմբինացված աշխատանքը սոցիալիստական բնույթ չեն ստանում), դա նշանակում է վերացում «հակադիր ձևով»։ Բայց մյուս կողմից, որքանով որ այդ երկու գործոնները (կենտրոնացումը և կոմբինացումը) էապես հակասում են կապիտալիստա-*

կան մասնավոր սեփականության ու աշխատանքի մասնավոր բնույթին, և ընդհակառակը, խորապես համապատասխանում են արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության ու սոցիալիստական աշխատանքի առաջացման պահանջներին (որի պատճառով էլ սոցիալիզմի համար նյութական նախադրյալներ են դառնում). ահա այս իմաստով դա նշանակում է մասնավոր սեփականության և մասնավոր աշխատանքի վերացում։

Արտադրության միջոցների կենտրոնացման, արտադրության բնույթի հանրայնացման, պրոլետարիատի գոյացման պատմական պրոցեսները, թեև սկսվել են կապիտալիզմի ծագման հետ միաժամանակ, բայց և այնպես կապիտալիզմի ընդերքում սոցիալիզմի համար անհրաժեշտ նախադրյալների առաջացումը, այդ բառի իսկական առումով, սկսվեց միայն այն մոմենտից, երբ ստեղծվեց մեքենայական խոշոր արդյունաբերություն։ «Ես,— ասում է Մարքսը Կուգելմանին գրած նամակում,— խոշոր արդյունաբերությունը պատկերացնում եմ ո՛չ միայն որպես անտագոնիզմի աղբյուր, այլև որպես դեպի այդ անտագոնիզմի լուծումը տանող նյութական և հոգևոր պայմանների ստեղծիչ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Նամակներ «Կապիտալի» մասին» էջ 174)։

Մանուֆակտուրայի համեմատ մեքենայական խոշոր արդյունաբերության հսկայական առավելություններից մեկն այն է, որ վերջինս իր գոյության համար հենց սկզբից ենթադրում է կապիտալի ու արտադրության միջոցների անհամեմատ խոշոր կենտրոնացում և ապա այդ կենտրոնացման պրոցեսին ավելի ու ավելի ուժեղ թափ է հաղորդում։ Քանի որ մեքենաներն իբրև կանոն գործում են կոլեկտիվ ձեռքերում և իրենց տեխնիկական առանձնահատկության շնորհիվ, արտադրության կոլեկտիվ բնույթը դարձնում են բնական անհրաժեշտություն, ուստի, որքան զարգանում է մեքենայական խոշոր արդյունաբերությունը, այնքան զարգանում է նաև արտադրության կոլեկտիվ բնույթը։

Հարստության խելացնոր կուտակումը կապիտալիստների դասակարգային մոլուցքն է։ Նրանք այդ նպատակին հասնում են արտադրողական ուժերը զարգացնելու, արտադրությունն ընդլայնելու, ավելի ու ավելի մեծ թվով աշխատավորների շահագործելու և թալանելու միջոցով։ Բայց հենց դրանով էլ նրանք միաժամանակ, անգիտակցաբար, մի ավելի բարձր արտադրաեղանակի ծագման համար նյութական պայմաններ են ստեղծում։ «Որպես արժեքի ինքնաճման ֆանատիկոս,— գրել է Մարքսը,— նա (բուրժուազիան—Հ. Գ.) անզուսպ կերպով մարդկությանը հարկադրում է արտադրել հանուն արտադրության, հետևաբար, հարկադրում է զարգացնել հասարակական արտադրողական ուժերը և ստեղծել արտադրության այն նյութական պայմանները, որոնք միայն կարող են այնպիսի ավելի բարձր հասարակական ձևի իրական բազիսը դառնալ, որի հիմնական սկզբունքն է ամեն մի անհատի լիակատար ու ազատ զարգացումը» («Կապիտալ», հ. 1, էջ 620)։

Կապիտալիզմի պրոգրեսիվությունը և պատմական արդարացումը ֆեոդալիզմի համեմատ, արտահայտվում է գլխավորապես նրանում, որ նա ստեղծում է զարգացած մեքենայական արտադրողական ուժեր, կենտրոնացնում է արտադրության միջոցները, արտադրությանը տալիս է հանրային բնույթ և, այդպիսով, նոր, ավելի բարձր հասարակարգի անցնելու համար պայմաններ է հասունացնում։

Կապիտալիզմը սոցիալիզմի նախադրյալները լրիվին հասունացրեց մի-



այն իր զարգացման բարձրագույն ստադիայում, որը միաժամանակ նրա անկման, կործանման ստադիան է։ Հենց դրանից ելնելով էլ Լենինը իմպերիալիզմի պատմական դերին մոտեցել է երկու կողմից։ Նա մի կողմից ընդգծում է, որ իմպերիալիզմին անցնելով «կապիտալիզմն առաջադիմականից դարձել է ռեակցիոն» (Երկեր, հ. 21, էջ 382), իսկ մյուս կողմից, ասում է. «ոչ մի մարքսիստ չի մոռանա, որ կապիտալիզմն առաջադիմական է՝ ֆեոդալիզմի համեմատությամբ, իսկ իմպերիալիզմը՝ մինչմոնոպոլիստական կապիտալիզմի համեմատությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 71)։

Լենինի այս մտքերը, առաջին հայացքից, իհարկե, կարող են պարադոքսային թվալ։ Բայց, իրականում, նրանք դիալեկտիկական խոր վերլուծության արդյունք են։ Որքանով որ արդի կապիտալիզմը անկման, փտման խոր պրոցեսներ է ապրում, կաշկանդում է տեխնիկայի ու գիտության զարգացումը, ուժեղ կերպով արգելակում է արտադրողական ուժերի առաջընթացը, ծնում է խրոնիկական գործազրկություն, մասսայական աղքատություն, թշվառություն, համաշխարհային մասշտաբի կործանարար պատերազմներ և այլն, այդ տեսակետից անկասկած, նա մեծագույն ռեակցիոն ուժ է։ Սակայն, մյուս կողմից, քանի որ հենց մոնոպոլիստական կապիտալիզմն է լրիվին հասունացնում սոցիալիզմի բոլոր նախադրյալները և լայն ասպարեզ ստեղծում պրոլետարական ռևոլյուցիայի համար, այս իմաստով, նա անշուշտ, մինչմոնոպոլիստական կապիտալիզմի համեմատ ավելի պրոգրեսիվ է։

Կապիտալիզմը համաշխարհային մասշտաբով վերին աստիճանի զարգացնելով արտադրողական ուժերը և ստեղծելով մոնոպոլիստական միությունների (կարտելներ, տրեստներ, սինդիկատներ) լայն ցանց, այդպիսով նա «...իր իմպերիալիստական ստադիայում ընդհուպ հասցնում է արտադրության ամենից բազմակողմանի հանրայնացման, կապիտալիզմը կապիտալիստներին, այսպես ասած, հակառակ սրանց կամքի ու գիտակցության, ներս է քաշում ինչ-որ նոր հասարակարգի մեջ», որը «դեպի լիակատար հանրայնացման հասնելու անցման հասարակարգն է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 266—267)։

Իմպերիալիզմը, չնայած, արտադրության լիակատար հանրայնացում չի ստեղծում և չի կարող ստեղծել, սակայն նա այդ հանրայնացումը զարգացնում է այնպիսի բազմակողմանիությամբ և այն աստիճան, որ հետագա առաջընթացը կարող է իրականանալ միայն սոցիալիստական լիակատար հանրայնացման ձևով։

Իմպերիալիզմի դարաշրջանը մարդկությանն անօրինակ չափով սոցիալիզմին է մոտեցրել հատկապես շնորհիվ այն բանի, որ մոնոպոլիստական կապիտալիզմն իր սեփական զարգացման ընթացքով ավելի ու ավելի է վերածվում պետական մոնոպոլիստական կապիտալիզմի։

Իմպերիալիզմի դարաշրջանի առանձնահատկություններից մեկն այն է, որ բուրժուական պետական վերնաշենքն, իր ծանր ռազմական-բյուրոկրատական ապարատով հանդերձ, դարձել է մոնոպոլիստական կապիտալի տիրապետության գործիքը։ Պետության տնտեսական ակտիվ միջամտությամբ ֆինանսական մագնատների բաժինն արագ կերպով աճում է։ Այժմ արտադրության կենտրոնացումը մոնոպոլիստական միությունների ձեռքում անասելի խոշոր չափերի է հասել։ Ելնելով արդի կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջներից, օրենք, որի գործողության անմիջական նպատակը մոնոպոլիստական միությունների համար առավելագույն շահույթ ապահովելն

է, բուրժուական պետությունն իրականացրեց և, հատկապես, վերջին հետպատերազմյան ժամանակաշրջանում արագ կերպով իրականացնում է մի շարք երկրների արտադրության խոշորագույն ճյուղերի (ռազմական, քարածխային, էլեկտրական արդյունաբերության, տրանսպորտի, կապի միջոցների և այլն) պետականացում։

Բուրժուական պետական վերնաշենքի այդ գործողությունների անմիջական նպատակն, իհարկե, մոնոպոլիստական կապիտալիզմն ամրապնդելը, այն մշտնջենական դարձնելն է։ Սակայն իրերի ներքին տրամաբանությամբ նրա գործողությունների հետևանքները վեր են ածվում իրենց սեփական հակադրությանը։ Որքան մեծանում և հզորանում են մոնոպոլիաները, որքան աճում է պետական սեփականությունը, այնքան աճում ու զարգանում է նաև արտադրության միջոցների ու աշխատանքի պրոցեսների հանրային բնույթը։ Հետևաբար, այնքան հասունանում են այն նյութական նախադրյալները, որոնք սոցիալիստական տնտեսաձևի ծագման համար անհրաժեշտ են։ Բուրժուական, ռեֆորմիստական և ռևիզիոնիստական թեորետիկները, որպեսզի դառամյալ ազռավը որպես սիրամարգ ներկայացնեն, ջանում են հավատացնել, որ իբր պետական մոնոպոլիստական կապիտալիզմն այլևս կապիտալիզմ չէ, այլ արտադրության միջոցների պետականացման շնորհիվ, աստիճանաբար, ավտոմատիկ կերպով «ձևափոխման» է ենթարկվել ու դարձել է «պետական սոցիալիզմ»։ Անգլիացի աջ սոցիալիստ Հեյասկելի ասելով, պետական մոնոպոլիստական կապիտալիզմը սոցիալիզմի հետ ավելի կամ պակաս չափով նույնական է։

Բուրժուազիայի գաղափարախոսների, ռեֆորմիստների և ռևիզիոնիստների թեորիական այդպիսի խարդախությունները, իհարկե, նոր չեն։ Դեռևս Էնգելսն իր հռչակավոր Անտի-Դյուրինգ-ում նշել է, որ երբ Բիսմարկը պատերազմի կարիքներից ելնելով իրեն նետեց արտադրության որոշ միջոցների պետականացման ուղին, առաջ եկան առանձին տեսակի կեղծ սոցիալիստներ, որոնք նույնիսկ բիսմարկյան պետականացումը սոցիալիզմ էին հայտարարում։ Իրականում, այդպիսի պետականացման մեջ մազաչափ սոցիալիզմ չկա։ Եթե պետության գլուխ կանգնած է կապիտալիստների և ոչ թե պրոլետարների դասակարգը, ապա որքան էլ շատ արտադրության միջոցներ պետական սեփականություն դառնան, միևնույն է, նրանց կապիտալիստական բնույթը չի փոխվում։

ՍՄԿՊ ծրագրում, որտեղ տրված է արդի դարաշրջանի կապիտալիզմի սպառիչ բնութագիրը և նրա սպառիչ քննադատությունը, ասված է. «Աջ սոցիալիստներն ու ռևիզիոնիստները փորձում են պետական մոնոպոլիստական կապիտալիզմը պատկերել գրեթե որպես սոցիալիզմ։ Կյանքը մերկացնում է այս կեղծիքը։ Պետական մոնոպոլիստական կապիտալիզմը չի փոխում իմպերիալիզմի էությունը։ Նա ոչ միայն չի փոխում հիմնական դասակարգերի դիրքը հասարակական արտադրության սիստեմում, այլ խորացնում է անդունդը աշխատանքի և կապիտալի միջև, ազգի մեծամասնության և մոնոպոլիաների միջև» (ՍՄԿՊ ծրագիր, էջ 31)։

Մարքսիզմի կլասիկներն ուսուցանում են և պատմական պրակտիկան հաստատում է, որ արտադրության միջոցների պետականացման շնորհիվ կապիտալիստական արտադրական հարաբերությունները ոչ թե վեր են ածվում սոցիալիստականի, այլ ընդհակառակը, նրանց անտագոնիստական բնույթը



զարգանալով հասնում է ծայրահեղության։ Մոնոպոլիստական կապիտալի կողմից բանվոր դասակարգի ու մյուս աշխատավորների շահագործումը այնքան է ծանրանում և կապիտալիզմի ներքին հակասություններն այնքան են սրվում, որ ռևոլյուցիոն հեղաշրջումը դառնում է անխուսափելի։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը արտադրության միջոցների և արտադրության պրոցեսի հանրային բնույթը զարգացնելով հասցնում է իր շրջանակների համար հնարավոր ամենաբարձր աստիճանին։ Ուստի, ասում է Լենինը, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմից մարդկության հետագա պրոգրեսը, նրա հաջորդ մերձավորագույն քայլը դեպի առաջ, կարող է լինել միայն անցումը սոցիալիզմին։ Նա գրել է. «Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը սոցիալիզմի նյութական լիակատար նախապատրաստումն է, նրա նախադուռն է, պատմական սանդուղքի այն աստիճանն է, որի (աստիճանի) ու սոցիալիզմ կոչվող աստիճանի միջև ոչ մի միջանկյալ աստիճան չկա» (Երկեր, հ. 25, էջ 460)։ Ընդ որում, այդ նախապատրաստումը տեղի է ունեցել ոչ թե մեկ կամ մի քանի երկրներում,— այստեղ ևս «ամերիկյան բացառիկությունը» լոկ առասպել է,— այլ կապիտալիստական սիստեմի բոլոր երկրներում, առանց բացառության։

Մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում աշխատանքի պրոցեսների կոոպերացումը և աշխատանքի բաժանումը հասել է այնպիսի բարձր մակարդակի, որ արդեն խոսքը կարող է վերաբերել ոչ միայն առանձին ձեռնարկությունների (ֆաբրիկաների, գործարանների), կոոպերացմանը, այլև արտադրության ամբողջ ճյուղերի, երկրի ամբողջ ազգային տնտեսության և նույնիսկ միջազգային մասշտաբի կոոպերացմանը։

Արդի դարաշրջանում, տեխնիկական պրոգրեսի արագացումը, արտադրության ավտոմատացումը առաջ են բերել արտադրության ու փոխանակության եղանակներն ինտերնացիոնալացնելու, արտադրությունը միջազգային մասշտաբով մասնագիտացնելու, բազմակողմանի փոխադարձ կապերով ժողովուրդներին միմյանց հետ կապելու ուժեղ տենդենց։ Կապիտալիստական հասարակության մեջ այդ տենդենցի սպեցիֆիկ արտահայտությունները միջազգային տրեստներն են, իսկ նորագույն արտահայտություններից մեկը, այսպես կոչված՝ «Ընդհանուր շուկայի» մեջ արևմտաեվրոպական վեց պետությունների «ինտեգրացիան» է, որը տարբեր երկրների ֆինանսական մագնատների միահյուսում է ներկայացնում։ Նրանց միահյուսման նպատակը՝ արտադրողական ուժերի հանրային բնույթը արտադրական հարաբերությունների մասնավոր կապիտալիստական բնույթի հետ հաշտեցնելն է, ինչպես իրենց, այնպես էլ ուրիշ երկրների, հատկապես, գաղութային երկրների ժողովուրդներին շահագործելը և կողոպտելն է, սոցիալիզմի համար պայքարող ուժերի դեմ ու սոցիալիստական երկրների դեմ միասնաբար պայքարելը։

Միջազգային «ինտեգրացիաներ» ստեղծելու միջոցով ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչները աշխատում են արտադրողական ուժերը պահել մոնոպոլիստական կապիտալի արտադրական, տնտեսական հարաբերությունների շրջանակներում։ Այս տեսակետից դրանք ռեակցիոն բնույթ ունեն։ Սակայն, տվյալ մեդալն ունի նաև իր երկրորդ կողմը։ Որքանով որ այդպիսի «ինտեգրացիաներն» արտացոլում են արտադրողական ուժերի վիթխարի զարգացումը, առաջ են բերում արտադրության միջոցների ու արտադրության բնույթի չտեսնված հանրայնացում և առավել չափերով սրում են կապիտալիզ-

մի հակասությունները, այս իմաստով, նրանք վերջին հաշվով, օբյեկտիվորեն,
նաև պրոգրեսիվ դեր են խաղում, որովհետև այդ միավորումների շնորհիվ
սոցիալիզմին անցնելու նախապայմանները ազգային, և միջազգային մասշ-
տաբով, լիակատար զարգացման են հասնում։

Լենինը գտնում էր, որ եթե արտադրության կարտելացումը, սինդիկա-
տացումը, «տնտեսական կյանքի միջազգայնացումը խոշոր չափերի են հա-
սել» և «համաշխարհային կապիտալիզմի արտադրողական ուժերը դերաճել
են ազգային-պետական բաժանումների սահմանափակ շրջանակներից», ուրե-
մըն «սոցիալիզմի իրականացման օբյեկտիվ պայմանները» «լիովին հասու-
նացել են» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 190)։

Այսպիսին է պատկերը։ Սակայն, որպեսզի այդ պատկերը քիչ թե շատ
լրիվ դառնա, մենք պետք է խոսենք նաև մի կարևոր գործոնի մասին, որը,
ինչպես ասվել է, նույնպես մտնում է «սոցիալիզմի օբյեկտիվ նախադրյալ-
ներ» հասկացության մեջ։

Պատմական մատերիալիզմն ուսուցանում է, որ անցումը կապիտալիզ-
մից սոցիալիզմին, առանց մասսաների ռևոլյուցիոն պրակտիկ գործողություն-
ների չի իրականանում։ Ի տարբերություն բնության մեջ տեղի ունեցող փոփո-
խությունների, հասարակական կյանքի փոփոխությունների էական առանձնա-
հատկություններից մեկն այն է, որ նրանք իրականանում են մարդկանց գոր-
ծողությունների միջոցով։ Հետևաբար, որպեսզի վերոհիշյալ նյութական նա-
խադրյալները հնարավորությունից դառնան իրականություն, և անցումը կա-
պիտալիզմից սոցիալիզմին իրոք տեղի ունենա, պետք է գոյություն ունենան
նաև այն դասակարգերը, որոնք այդ պատմական միսիան իրականացնելու են։

Մարքսն ու էնգելսը իրենց մի շարք աշխատություններում (Սուրբ ընտա-
նիք, բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում, Կոմունիստական պար-
տիայի մանիֆեստը, Կապիտալ, Անտի-Դյուրինգ և այլն) բազմակողմանի խո-
րությամբ հետազոտելով բանվոր դասակարգի սոցիալ տնտեսական վիճակը,
նրա կեցությունը, ապացուցել են, որ կապիտալիզմից սոցիալիզմին անխու-
սափելի անցման «ինտելեկտուալ ու բարոյական շարժիչը և ֆիզիկական կա-
տարողն է հանդիսանում հենց կապիտալիզմի դաստիարակած պրոլետարիա-
տը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 77)։ Կապիտալիստական հարաբերու-
թյունների պայմաններում պրոլետարիատը սեփականությունից զրկված ա-
մենաճնշված դասակարգն է։ Նա միակն է, որն անմիջականորեն ու ամբող-
ջապես հակադրված է կապիտալիստների դասակարգին։ Նա իր հասարակա-
կան կեցության ուժով հանդիսանում է միակ, մինչև վերջ ռևոլյուցիոն դասա-
կարգը։ Այդ իսկ պատճառով էլ բնականորեն, արտադրության կապիտալիս-
տական եղանակի հեղաշրջման և դասակարգերի վերջնական ոչնչացման
պատմական միսիայի իրականացնողը նա է դառնալու։

Պրոլետարիատի, որպես ամենառևոլյուցիոն դասակարգի, այդ համաշ-
խարհային պատմական դերի բացահայտումը Մարքսի ուսմունքի մեջ գլխա-
վորն է։ Նա ցույց է տվել, որ արտադրության կապիտալիստական եղանակն
իր գերեզմանափորին ստեղծում է տարերայնորեն, սեփական զարգացման
դիալեկտիկական պրոցեսի ողջ ընթացքով։ Մարքսն իր Սուրբ ընտանիք-ում
գրել է. Թեև «մասնավոր սեփականությունն իր տնտեսական շարժման մեջ
ինքն է իրեն մղում դեպի իր սեփական վերացումը, բայց նա այդ բանն անում
է լոկ իրենից անկախ, իր կողմից չգիտակցված, իր կամքին հակառակ տեղի



ունեցող և բուն իսկ օբյեկտի էությամբ պայմանավորված զարգացման միջո-
ցով, լոկ այն միջոցով, որ նա ծնում է պրոլետարիատ» (К. Маркс и Ф.
Энгельс, Соч., т, 2, с. 39.)։

Արտադրության կապիտալիստական եղանակն իրեն հատուկ օրենքներով
մարդկության աճող մեծամասնությանը դարձնելով պրոլետարներ, այդպիսով
շարունակ հզորացնում է այն ռևոլյուցիոն ուժը, որը նրան պետք է ոչնչացնի։
Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները, սոցիալիզմի օբյեկտիվ պայմանների հա-
սունացման տեսակետից, պրոլետարիատի քանակական աճին կարևոր նշա-
նակություն են տվել։ Նրանց կարծիքով, «որքան ավելի բազմաթիվ են պրո-
լետարները, այնքան ավելի մեծ է նրանց ուժն իբրև ռևոլյուցիոն դասակարգի»
(Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 7)։

Ջնայած պրոլետարիատը ծնունդ է առել կապիտալիզմի ծագման հետ
միաժամանակ, բայց արտադրության կապիտալիստական եղանակը կարող ա-
ցավ բառի իսկական առումով պրոլետարների հոծ բանակներ ստեղծել այն
ժամանակ, երբ ստեղծեց մեքենայական խոշոր արդյունաբերություն։ Կապի-
տալիստական արտադրական հարաբերությունների շրջանակներում, մեքե-
նայական արտադրողական ուժերը հանդիսացան (և հանդիսանում են) այն
հզոր գործոնը, որի ներգործությամբ մանր արտադրողների զանգվածները
քայքայվելով, հարկադրված կենտրոնացան քաղաքներում և կազմեցին կա-
պիտալիստական աշխարհի ամենառևոլյուցիոն դասակարգը։ Պրոլետարակա-
նացման այդ օբյեկտիվ պրոցեսը միլիոնավոր աշխատավորների պատճառել
և շարունակում է պատճառել անհամար զրկանքներ ու թշվառություններ։
Սակայն, մարքսիստներն ազատ են մանր բուրժուական գաղափարախոսների
հոռետես սենտիմենտալիզմից, որոնք այդ պրոլետարականացման մեջ միայն
զրկանքներ և չարիք էին տեսնում։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները պրոլետարականացման բնապատմա-
կան պրոցեսի վրա միշտ նայել են բանվոր դասակարգի և ողջ աշխատավոր
մարդկության լուսավոր ապագայի տեսանկյունից։ Մարքսը ասում էր, որ կա-
պիտալիստական հասարակության մեջ պրոլետարիատը տառապում է և՛ կա-
պիտալիզմի զարգացումից՝ որովհետև դրա հետևանքով նրա շահագործումն
անընդհատ սաստկանում է, և այդ զարգացման պակասությունից՝ որովհետև
այդպիսով նրա դասակարգային պայքարը և ազատագրման պայմանների հա-
սունացումը դանդաղում է։ Բանվոր դասակարգն իր տառապանքներից վերջ-
նականապես կարող է ազատվել միայն կապիտալիստական հասարակարգը
ոչնչացնելու միջոցով։ Իսկ որպեսզի նա այդ պատմական խնդիրը իրականաց-
նի, պետք է ինքը հանդես գա իբրև կազմակերպված, կոփված, բազմամիլիոն
հզոր ռևոլյուցիոն ուժ։

Հետևաբար, եթե կապիտալիզմի զարգացման ընթացքում մեքենայական
խոշոր արդյունաբերությունը քայքայում է մանր արտադրողներին, և կենտ-
րոնացնելով խոշոր քաղաքներում նրանց միավորում է որպես պրոլետարիա-
տի, այս պատմական պրոցեսն ունի նաև պրոգրեսիվ նշանակություն, որով-
հետև այդպիսով նա ոչ միայն զրկանքներ է ծնում, այլև կուտակում է առաջ-
ընթացի այն շարժիչ ուժը, որի պատմական միսիան մարդկությանը կապի-
տալիզմից դեպի սոցիալիզմ տանելն է։

Արտադրության կապիտալիստական եղանակը պրոլետարիատի անհամե-
մատ խոշոր բանակներ է ստեղծում հատկապես այժմ՝ իմպերիալիզմի դարա-

շրջանում։ Իր զարգացման առաջին ստադիայում պրոլետարիատը բնակչության մեծամասնությունն էր կազմում միայն Անգլիայում։ Այժմ, նա աշխատավոր ինտելիգենցիայի հետ միասին դարձել է զարգացած կապիտալիստական երկրների բնակչության հիմնական կազմը[1]։ Հատկանշական է նաև այն, որ այժմ պրոլետարիատը որպես իշխանության համար պայքարող դասակարգ է ձևավորվում նաև Ասիայի, Աֆրիկայի, հարավային Ամերիկայի հետամնաց երկրներում։

Այսպիսով, ինչպես ասված է կոմինտերնի 1928 թվականին ընդունած ծրագրում, իմպերիալիզմը սոցիալիզմի նյութական նախադրյալների ստեղծման պրոցեսը (արտադրության միջոցների կոնցենտրացիա, աշխատանքի վիթխարի հանրայնացում, բանվորական կազմակերպությունների աճումը) արդեն լրիվին իրականացրել է։ Էնգելսի բառերով ասած, ինչպես, որ երկրաբանական հեղափոխությունների միջոցով ստեղծվել է երկրի մակերևույթը, այնպես էլ արտադրության կապիտալիստական եղանակի փոփոխման ու զարգացման միջոցով ստեղծվում են բոլոր նյութական նախադրյալները, որոնք սոցիալիզմի ծագման համար անհրաժեշտ են։

Արդի ռևիզիոնիստները, որոնք կոմունիզմի դեմ պայքարը դարձրել են իրենց կյանքի նպատակը, կապիտալիզմի ընդերքում սոցիալիզմի նյութական նախադրյալների առաջացումը ներկայացնում են իբրև բուն իսկ սոցիալիստական տնտեսաձևի առաջացում։ Նրանց ըմբռնումների համաձայն, ինչպես, որ նախասոցիալիստական տնտեսաձևերից յուրաքանչյուրը, տարերայնորեն ձևավորվել է իր նախորդի ընդերքում նախքան սոցիալական ռևոլյուցիան և նոր դասակարգերի կողմից քաղաքական իշխանության նվաճումը, նմանապես էլ սոցիալիստական տնտեսաձևը ձևավորվում է կապիտալիզմի ընդերքում, և իբր այդպիսով, վերջինս աստիճանաբար «տրանսֆորմացիայի» ենթարկվելով խաղաղորեն ներաճում է սոցիալիզմի մեջ։

Պալմիրո Տոլյատին քննադատելով իտալական ռևիզիոնիստ Անտոնինո Ջոլիտտիի հակամարքսիստական, ռեֆորմիստական հայացքները՝ գրել է. «Ջոլիտտիի խոսքերից հետևում է... չափազանց զվարճալի կոնցեպցիա, որի համաձայն, այնպես, ինչպես կապիտալիստական էկոնոմիկան ծագել և հաստատվել է դեռ մինչև բուրժուազիայի դասակարգի իշխանության հասնելը, նույն ձևով էլ պետք է ծագի սոցիալիստական էկոնոմիկան, անկախ քաղաքական ղեկավարությունից»։

Անկասկած, սոցիալիզմը կապիտալիզմից անջատ, նրանից կտրված, ինչ-որ դատարկ տարածության մեջ ծնունդ առնող տնտեսակարգ չէ։ Ինչպես որ կապիտալիզմը ծնվել է ֆեոդալիզմից, այնպես էլ սոցիալիզմը ծնվում է կապիտալիզմից։ Բայց, եթե կապիտալիզմի ծագման համար անհրաժեշտ նախադրյալների քանակական կուտակումից հետո տեղի է ունենում որակական փոփոխություն և ֆեոդալիզմի ընդերքում կապիտալիստական տնտեսաձևը կազմավորվում է նախքան քաղաքական ռևոլյուցիան, ապա կապիտալիզմի ընդերքում սոցիալիստական տնտեսաձև չի առաջանում։ Այստեղ սոցիալիզմի համար ստեղծվում են լոկ անհրաժեշտ տարրեր, որոնք չնայած այդ տնտեսա-

---

[1] Եթե նշում ենք պրոլետարիատի քանակական աճի կարևորությունը, իհարկե դա չի նշանակում, թե անցումը սոցիալիզմին միշտ ամենից հասունացած է հենց այնտեղ, որտեղ ամենից շատ պրոլետարներ կան։ Պատմությունն այդպիսի ըմբռնումը չհաստատեց։



կան ամբողջի մասերն են դառնալու, բայց դեռևս այդ ամբողջը չեն։ Ռևիզիոնիստների մետաֆիզիկական ըմբռնումների արատավորությունը և ռեակցիոնությունն այն է, որ նրանք մասերի գումարը մեխանիկորեն նույնացնելով հասարակական-տնտեսական ամբողջի հետ, ռևոլյուցիոն թռիչքի անհրաժեշտությունը ժխտում են։ Լենինը մերկացնելով նման հայացքը գրել է. «Կապիտալիզմն ինքն է ստեղծում իր գերեզմանափորին, ինքն է ստեղծում նոր կարգի տարրերը, և միևնույն ժամանակ այդ առանձին տարրերն առանց «թռիչքի» ոչինչ չեն փոփոխում իրերի ընդհանուր դրության մեջ, չեն շոշափում կապիտալիզմի տիրապետությունը» (Երկեր, հ. 16, էջ 455)։

Հասարակության զարգացման կենդանի փորձով հաստատված է, որ առանց ռևոլյուցիոն թռիչքի սոցիալիզմի նախադրյալներից տարերայնորեն սոցիալիստական արտադրական, տնտեսական հարաբերություններ չեն առաջանում։ Բանվոր դասակարգի գործը թերևս ավելի կհեշտանար, եթե սոցիալիստական տնտեսաձևը կապիտալիզմի ընդերքում կազմավորվեր նախքան սոցիալիստական ռևոլյուցիան։ Սակայն, կապիտալիզմն այդպիսի «շռայլություն» թույլ չի տալիս։ Քանի դեռ արտադրության միջոցների մասնավոր սեփականության առաջացումն ու զարգացումը հիմնականում համապատասխանում էր արտադրողական ուժերի զարգացման պահանջներին, իսկ տիրապետության ձգտող հասարակական խմբերը և տիրապետության հասած նախկին դասակարգերի թեկուզ մի որոշ մասը հանդես էին գալիս իբրև նոր արտադրական հարաբերությունների կրողներ, այնքան ժամանակ հին ֆորմացիաների ընդերքում նոր տնտեսաձևերի առաջացումը հնարավոր էր և անխուսափելի։ Բայց, երբ կապիտալիստական հասարակության մեջ մասնավոր սեփականությունն իր լիակատար զարգացմանը հասավ և արտադրողական ուժերի առաջընթացը խոչընդոտող նրա կարողություններն աստիճանաբար սպառվեցին, որի պատճառով նրա ոչնչացումը դարձավ պատմական անհրաժեշտություն, այդ մոմենտից, նոր արտադրական հարաբերությունների կրողի դերն առաջին անգամ շահագործող դասակարգերից անցավ աշխատավորների դասակարգին՝ պրոլետարիատին, և նոր տնտեսաձևի կազմավորումը հին հասարակարգի ընդերքում դարձավ անհնարին։

Սոցիալիզմն իր սեփական բնությամբ ենթադրում է ինչպես մասնավոր սեփականության, այնպես էլ նրանով պայմանավորված բոլոր հասարակական-տնտեսական հարաբերությունների իսպառ ոչնչացում, ուստի նրա առաջացումը կապիտալիզմի ընդերքում բացառված է։ Լենինը, ընդհանրացնելով Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փորձը, գրել է. «Սոցիալիստական ռևոլյուցիան բուրժուականից հենց նրանով է տարբերվում, որ երկրորդ դեպքում կան կապիտալիստական հարաբերությունների պատրաստի ձևերը, իսկ Սովետական իշխանությունը, պրոլետարիատը, այդ պատրաստի հարաբերությունները չի ստանում» (Երկեր, հ. 27, էջ 92)։ Կապիտալիզմը սոցիալիզմի համար նյութական նախադրյալներ է ստեղծում, որը լոկ նրա հնարավորությունն է։ Իսկ բանվոր դասակարգն այդ հնարավորությունը իրականություն է դարձնում միայն սոցիալիստական ռևոլյուցիան իրականացնելու և պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու միջոցով։ Այսպիսին է օրինաչափությունը։

# ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԾՈՒՌ ՀԱՅԵԼՈՒ ՄԵՋ

ՀՐ. ՍԻՄՈՆՅԱՆ

Տնտեսության, գիտության և կուլտուրայի բոլոր բնագավառներում Սովետական Հայաստանի վիթխարի նվաճումները հայտնի են բոլորին։ Դրանք օրինական հպարտության զգացում են առաջացնում ո՛չ միայն հայրենաբնակ մեր ժողովրդի, այլև սփյուռքահայ աշխատավոր մարդկանց սրտերում։

Սովետական Հայաստանի նվաճումներն ու հաջողությունները չեն ուրախացնում միայն դաշնակներին։ Տասնամյակները հաջորդում են միմյանց, բայց դաշնակը շարունակում է անդիտակ ձևանալ, երբ խոսքը վերաբերում է Հայաստանի հրաշք-վերածննդին։ Դեռ ավելին, բոլոր միջոցներով նա ջանում է նսեմացնել, զրոյի հավասարեցնել մեր ժողովրդի մաքառումների ու առատորեն թափած քրտինքի արդյունքները։

Ինչո՞վ է թելադրված դաշնակցության նման գործելակերպը, ինչո՞ւ է դաշնակցությունը ճգնում սփյուռքահայ աշխատավորին աղավաղված ներկայացնել Սովետական Հայաստանի իրականությունը։ Որովհետև, նախ՝ դաշնակցությունը եղել ու շարունակում է մնալ սովետական իշխանության անհաշտ թշնամիների բանակում, իսկ այս հանգամանքը շատ բանի է պարտավորեցնում նրան։ Երկրորդ, իր կարճատև տիրապետության տարիներին Հայաստանի տնտեսական ահավոր փլուզումը այս կամ այն կերպ արդարացնելու համար դաշնակցությանն անհրաժեշտ է հնարավոր բոլոր միջոցներով ցույց տալ, որ կոմունիստները ևս անկարող գտնվեցին արդարացնելու հայության հույսերը, որ Հայաստանի տնտեսության ու կուլտուրայի ամենաարագ զարգացման համար սովետական կարգերը չստեղծեցին բոլոր անհրաժեշտ նպաստավոր պայմանները։ Երրորդ՝ ըստ նրանց, եթե անցած 44 տարիներին Հայաստանում իշխանության գլուխ մնար դաշնակցությունը, ապա երկրի նվաճումները բոլոր բնագավառներում շատ ավելին կլինեին, քան այսօր առկա են։

Սովետական Հայաստանի նվաճումները նսեմացնելու և սփյուռքահայ մասսաների վրա դրանց ազդեցությունը թուլացնելու համար դաշնակները շարունակում են միալար կրկնել մի քանի վերսիաներ, որոնք սովետահայ իրականությունը վաղուց է ժխտել։

Հայաստանում իշխանությունը կոմունիստներին անցնելուց հետո արտակարգ ոչինչ չի կատարվել, ասում են դաշնակցական պարագլուխները։ Երկրի տնտեսական շինարարության արդյունքներն այնպիսիք չեն, որ նրանց հիմք տան հպարտանալու։

Իրենց այս միտքը հաստատելու համար նրանք հաճախ են կրկնում այն



առասպելը, թե սփյուռքի հայկական կապիտալի կողմից կատարված տնտեսական շինարարությունն իր տեմպերով ու ծավալով եթե չի գերազանցում Հայաստանում կատարվող շինարարությանը, ապա ետ էլ չի մնում նրանից։

Այսպես, դաշնակցական մամուլի օրգաններից մեկը՝ Կահիրեում հրատարակվող «Յուսաբեր» թերթը, դյուրահավատ ընթերցողին աշխատում է համոզել, թե Հայաստանի կառուցումները չեն կարող շլացնել հայ մարդուն արտասահմանում, որ իբր «...մեր ժողովուրդը արտասահմանի մեջ նույնքան բան շինած է» («Յուսաբեր», 16 նոյեմբերի, 1961 թ.)։

Իսկ դաշնակ ուրիշ գրիչներ, երևակայությամբ ավելի հեռուն գնալով ճգնում են համոզել, թե 1920 թվականից հետո, այսպես կոչված՝ «ազատ աշխարհում» սփյուռքահայերն ավելի շատ արդյունքներ են ձեռք բերել «տնտեսական գետնի վրա», քան Հայաստանի աշխատավորները։ Լսենք դաշնակցական Հայաստանի նախկին վարչապետ Սիմոն Վրացյանին.

«Կողք-կողքի դրեք Հյուսիսային Ամերիկայի հայերի վերջին քառասուն տարիների տնտեսական ձեռնարկների արդյունքը ճարտարուեստի, հողագործութեան, առևտրի բնագավառում։ Բրազիլի և Արժանտինի մի բուռ հայերի շինած գործարանները և տնտեսական այլ նախաձեռնութիւններ, Եվրոպայի, արաբական երկրների, Իրանի հայկական տնտեսական շինարարութիւնը և համեմատեցեք նույն 40 տարուայ ընթացքում հայ բոլշևիկների տնտեսական շինարարութեան հետ...»։

Թվում է, թե այսքանից հետո հոդվածագիրն իսկապես «կողք-կողքի» կդնի սփյուռքում և Հայրենիքում կատարված «տնտեսական ձեռնարկները», փաստերով ու թվերով ցույց կտա դրանց արդյունքները։ Սակայն այդ չի մտնում Ս. Վրացյանի պլանների մեջ։ Նրա նպատակն ուրիշ է՝ իր ծանակագրով մուր քսել Հայաստանի ճակատին՝ բացահայտորեն հաշվի չնստելով փաստերի հետ։

Ահա նա նորից գրիչ է վերցնում և սևով սպիտակի վրա գրում. «Եթե սփյուռքի բոլոր հայերի վերջին 40 տարիների նյութական շինարարությունն ի վիճակի լինենք մեկտեղելու, բոլշևիկների քառասնամյա պանծալի շինարարությունը պիտի նսեմանար նրա առջև» («Յուսաբեր», 26 հունվարի, 1961 թ.)։

Սիմոն Վրացյանն այստեղ, անշուշտ, նկատի ունի այն, որ արտասահմանյան մի շարք երկրներում որոշ թվով հայ կապիտալիստներ, անցած տասնամյակների ընթացքում կուտակելով որոշ դրամագլուխ, հիմնել են փոքր ու միջին հզորությամբ մի քանի ձեռնարկություններ և իրենց համար տաքուկ տեղեր ապահովել շահագործող դասակարգերի շարքերում։

Այսպես, հայտնի է, որ Լիբանանի և այլ երկրների բուրժուական վերնախավի շարքերում կան մի քանի միլիոնատեր հայ կապիտալիստներ։

Բայց մի՞թե այդ իրողությունը կարող է երջանկության աղբյուր հանդիսանալ սփյուռքահայ հարյուր-հազարավոր աշխատավորների համար, որոնց վիճակված է ապրել կապիտալիստական աշխարհի բոլոր արհավիրքները։ Ո՛չ։ Առավել ևս դրանք ուրախության պատճառ չեն կարող լինել հայրենաբնակ հայության համար։ Օտար հողերում հայ կապիտալիստների գումարներով կառուցված արդյունաբերական ձեռնարկությունները կարող են նպաստել միայն տվյալ երկրի տնտեսության զարգացմանը։ Հայտնի է, որ ժամանակին արևմտահայ ունևոր առևտրա-արդյունաբերական վերնախավը հսկայական դրամա-

կան ներդրումներ էր կատարում Թուրքիայի տնտեսության մեջ։ Նրա կապիտալով բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, բնակելի տներ ու հյուրանոցներ էին կառուցվում Պոլսում, Իզմիրում և երկրի այն վայրերում, որտեղ կապիտալը առավելագույն շահույթ էր խոստանում նրա տիրոջը։

Որևէ բան շահո՞ւմ էր արդյոք Հայաստանի աշխատավորը նրանից, որ հայ կապիտալիստի դրամագլուխը կրկնակի կամ եռակի շահույթ էր բերում։ Ո՛չ։ Գուցե դրանից որևէ բան շահե՞լ է պոլսահայ կամ իզմիրահայ աշխատավորը։ Ամենևի՛ն։

Ահա թե ինչու իր վաստակով ապրող աշխարհացրիվ հայության համար այսօր էլ միևնույն է, թե առավելագույն շահույթ ստանալու համար հայ կապիտալիստն իր դրամագլուխը որ երկրի տնտեսության մեջ կներդնի՝ Բրազի՞լիայի, թե Արգենտինայի, Հնդկաստանի՞, թե Եգիպտոսի, Ֆրանսիայի՞, թե Իտալիայի։

Բեյրութի «Մեր նշանաբանն է յառաջ» թերթը նշում է, որ բազմահազար հայ աշխատավոր ծնողներ, որոնք ստիպված են մինչև հատակն ըմպելու տառապանքի մրուրը, ծայր աղքատության պատճառով հնարավորություն չունեն նույնիսկ իրենց զավակներից որևէ մեկին դպրոց ուղարկելու։

«— Վեց զավակներու հայր եմ,— կըսե լիբանանահայ մի բանվոր,— հարկ է զանոնք դպրոց ղրկել։ Սակայն հարց է, թե ինչպե՞ս և ինչով…

Սակայն դա եզակի դեպք չէ։ Բոլորն ալ ունին նույն ցավերը, միևնույն մտահոգություններն ու դժվարությունները, շատ քիչ, աննշան տարբերություններով» («Մեր նշանաբանն է յառաջ», 23-ին նոյեմբերի, 1962 թ.)։

Այս է սփյուռքահայ հարուստ վերնախավի ու բազմահազար աշխատավորության սոցիալական վիճակի հարազատ պատկերը։

Հայրենադարձ հայությունը սովետական իր հայրենիքում վաղուց է թաղել մասնավոր կապիտալը։ Ահա թե ինչու «տնտեսական գետնի վրա» սփյուռքահայ որևէ կապիտալիստի հաջողությունը, նրա հաջող բիզնեսը չի կարող ուրախություն պատճառել Հայաստանի աշխատավորին, քանզի կապիտալը ամեն տեղ և ամենքի ձեռքում կոչված է կատարելու ժողովրդից քրտինք քամելու իր դերը։ Ուստի կապիտալն ատելի է աշխատավոր ամեն մարդու, անկախ այն բանից, թե ում ձեռքում է գտնվում այն։

Դաշնակ ոչ անհայտ «տեսաբան», բժիշկ Երվանդ Խաթանասյանը, զուգահեռ անցկացնելով Հայաստանի և Լիբանանի միջև, եզրակացնում է, որ կոմունիստները վախենում են այդ երկու երկրների տնտեսական վիճակը համեմատել միմյանց հետ, որովհետև Լիբանանը, իբր թե, իր տնտեսական զարգացմամբ շատ է առաջ անցել Հայաստանից, որի պատճառը Լիբանանի զարգացման առավել բարձր տեմպերն են («Յուսաբեր», 10 հունվարի, 1963 թ.)։

Այժմ տեսնենք, թե որքանով է իրավացի նա։

Ինչպես հայտնի է, Լիբանանը Մերձավոր Արևելքի այն միակ երկիրն է, որի տնտեսության զարգացման համար նպաստավոր պայմաններ էին ստեղծվել դեռևս մեր դարասկզբից մի քանի տասնամյակ առաջ։ Օսմանյան կայսրության սահմաններում Լիբանանը առաջինն էր, որ 1861 թվականից սկսած ինքնավարության իրավունք ստացավ։

Լիբանանի ծովափնյա դիրքը, նրա բացառիկ աշխարհագրական պայմանները, ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակությունը, Մերձավոր և Միջին Արևելքի նավթային աղբյուրներին մոտ լինելը, գյուղատնտեսության ու



առևտրի զարգացման համար անհրաժեշտ բոլոր պայմանների առկայությունը և մի շարք այլ հանգամանքներ նպաստեցին այն բանին, որ արագորեն երկիր թափանցեց օտարերկրյա և, մասնավորապես, ֆրանսիական կապիտալը։ Տնտեսության զարգացումը նպաստավոր պայմաններ ստեղծեց երկրի կուլտուրական առաջընթացի համար։ Եվ, պատահական չէ, որ Լիբանանը երկար ժամանակ համարվում էր առաջադիմության օրինակ Արաբական Արևելքի համար։

Այսպիսին էր Լիբանանը 1920 թվականին։

Իսկ ի՞նչ վիճակում էր Հայաստանը այդ նույն թվականին։ Ավերակների ու գերեզմանների երկիր, «ողբի ու որբի» երկիր։

Անցան ստեղծագործ աշխատանքի ու հերոսական մաքառումների չորս տասնամյակներ։ Եվ այն, ինչ կատարվեց այդ տարիներին, նման է հրաշքի։ Պատմական այդքան կարճ ժամանակամիջոցում հայ ժողովրդի հոյակապ վերածնունդը, որպես փյունիկ Հայաստանի հառնելը մոխիրներից, զարմանք է պատճառում ո՛չ միայն մեր բարեկամներին, այլև սոցիալիստական կարգերի բազմաթիվ թշնամիների։

Բավական է նշել, որ 1963 թվականին Հայաստանի արդյունաբերության արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 90 անգամ։ Այսօր ռեսպուբլիկան արդյունաբերական խոշոր պոտենցիալ ունեցող երկիր է, որի արտադրանքը նշանակալից կշիռ ունի ՍՍՌՄ-ի մասշտաբով։ Այդ կարելի է ցույց տալ թեկուզ արդյունաբերության մեկ ճյուղի՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերության օրինակով։ Իր արտադրանքի ծավալով Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, ամբողջովին վերցրած, Սովետական Միության մեջ գրավում է երրորդ տեղը։ Այն տալիս է ՍՍՌՄ էլեկտրատեխնիկական արտադրանքի մի քանի հիմնական տեսակների զգալի մասը։ 1963 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության այդ ճյուղը տվել է երկրում արտադրվող մինչև 100 կիլովատ սինխրոն գեներատորների ընդհանուր քանակի մոտ 30 և շարժական էլեկտրակայանների 90 տոկոսը։

Ավելորդ չի լինի նշել, որ վերջին 20 տարվա ընթացքում Հայաստանում վեր բարձրացավ այնպիսի մի հսկա, ինչպիսին Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանն է։ Այդ ձեռնարկությունն իր տեսակի մեջ խոշորագույններից մեկն է ՍՍՌՄ-ում։ Նրա հետ չի կարող չափվել Մերձավոր ու Միջին Արևելքի և ոչ մի երկրի մեքենաշինական որևէ ձեռնարկություն։ Իսկ նման հզորություն ունեցող գործարաններն ու ֆաբրիկաները Հայկական ՍՍՌ-ում քիչ չեն։

Իրականությունը վերլուծելու և փաստերը գնահատելու կարողությունից զուրկ պարոնայք դաշնակցականներն իրենց հատուկ քաղաքական կուրությամբ համառում են խոստովանել, որ Սովետական Հայաստանի պատմական նվաճումները շատ վաղուց հանդիսանում են նրանց անշրջելի գերեզմանաքարը։ Նրանք շարունակում են չտեսնող ձևանալ, որ փոքրիկ Հայաստանում այսօր ծաղկում ու զարգանում են ժամանակակից արդյունաբերությունն ու շինարարությունը։ Ուստի մի անգամ ևս նշենք մեր վիթխարի հաջողություններից լոկ մի քանիսը։

Վերջին վեց տարում ռեսպուբլիկայում գործարկվել են 105 արդյունաբերական նոր ձեռնարկություններ և կառուցվել ու շահագործման են հանձնվել 110 նոր աշխատամասեր՝ գործող արդյունաբերական ձեռնարկություն-

ներում։ Այդ ժամանակամիջոցում 49 հազար մարդով աճել է ռեսպուբլիկայի արդյունաբերության գործող անձնակազմը։ Իհարկե, պարոնայք դաշնակներին դուր չի գալիս, երբ այսօր Սովետական Հայաստանի միայն արդյունաբերության մեջ զբաղված են ավելի քան 140 հազար մարդ, իսկ շինարարության մեջ՝ 50 հազարից ավելի։ Երևան քաղաքում անցյալ տարի արդյունաբերական ձեռնարկություններում և շինարարական օբյեկտներում աշխատողների թիվը 98 հազարից ավելի էր։

Կուլտուրայի, գիտության ու լուսավորության վրա միայն վերջին հինգ տարում (պետական բյուջեից) ծախսված է ավելի քան 560 միլիոն ռուբլի։

1960—1964 թթ. Հայաստանի տնտեսության մեջ ներդրված է ավելի քան մեկ միլիարդ 139 միլիոն ռուբլի։ Այս հսկայական գումարը մեծապես նպաստում է մեր աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացմանը։ Բավական է ասել, որ եթե 1960 թ. ռեսպուբլիկայում կառուցվել է 225 հազար 618 քառակուսի մետր նոր բնակելի տարածություն, ապա այս տարի այդ տարածությունը կազմում է 438 հազար 568 քառակուսի մետր։ Դրամական արտահայտությամբ՝ 1960 թվականի 34 միլիոն 963 հազար ռուբլու փոխարեն, այս տարի բնակարանային շինարարության վրա ծախսված է 58 միլիոն 935 հազար ռուբլի։ Ավելի քան մեկ ու կես միլիոն քառակուսի մետր բնակելի նոր տարածության շահագործման հանձնելը (1960—1964 թթ.) ինքնին վկայում է աշխատավորության բարօրության բարգավաճման մասին։

Սովետական ինդուստրիալ Հայաստանը միայն անցյալ տարի արտահանել է ավելի քան 22 հազար շարժական էլեկտրակայաններ, մոտ 4,5 հազար ուժային տրանսֆորմատորներ, երկուս ու կես հազարից ավելի կոմպրեսորներ, բազմաթիվ հիդրոպոմպեր, էլեկտրաշարժիչներ, էլեկտրավառարաններ, 5600 մետաղահատ հաստոցներ, գունավոր մետաղ և հարյուրավոր այլ տեսակի մեքենաներ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացումը սերտորեն շաղկապված է Սովետական Միության հարաճուն էկոնոմիկայի հետ։ Թող որ պարոնայք դաշնակները գիտենան, որ Սովետական Հայաստանը ոչ միայն արտահանում է, այլև ներմուծում է այն ամենը, ինչ անհրաժեշտ է իր տնտեսության զարգացման համար։ Այն է՝ քարածուխ, մազութ, նավթ, սև մետաղ, գունավոր մետաղի գլանվածք, թուջ, զանազան խողովակներ, երկաթալարեր, քիմիական սարքավորումներ, բնական գազ, բենզին, շինարարական, տրանսպորտային, գյուղատնտեսական և այլ մեքենաներ։

Իսկ ինչպիսի՞ն է Լիբանանի տնտեսական վիճակն այսօր։ Դրան պատասխանել կարող են հենց լիբանանյան մամուլից վերցրած փաստերն ու թվերը։

Լիբանանի ազգային ողջ եկամտի մեջ միջազգային, միծաքանակ և տեղական առևտրից ստացված եկամուտները կազմում են 35, գյուղատնտեսությունից՝ 19 և արդյունաբերությունից՝ ընդամենը 16 տոկոս։ Ազգային եկամտի մյուս 30 տոկոսը գոյանում է հարկերից ու տարբեր սպասարկություններից (service), որի մեջ մտնում են բանկերը, հաղորդակցության միջոցները, տուրիզմը և այլն։

Ինչպես տեսնում ենք, Լիբանանի տնտեսությունը հաստատուն հիմքերի վրա չի կառուցված։ Թե՛ առևտուրը, թե՛ տուրիզմը և թե բանկային գործառնությունը մշտապես ենթակա են արտաքին գործոնների ազդեցության և միջ-



ազգային հարաբերությունների ամեն մի փոփոխում ու լարվածության ուժեղացում խորապես անդրադառնում է երկրի տնտեսության վրա։

1963 թվականին Լիբանանում հաշվվում էր մոտ 3800 արդյունաբերական ձեռնարկություն, որտեղ զբաղված էին 44 հազար բանվոր, այսինքն՝ յուրաքանչյուր ձեռնարկությանը միջին հաշվով ընկնում էր 11 բանվոր։ Պարզ է, որ դրանց ճնշող մեծամասնությունը ժամանակակից իմաստով ձեռնարկություններ չեն, այլ ձեռքի աշխատանքի վրա հիմնված արհեստանոցներ ու ֆաբրիկաներ։

Ճիշտ է, երկրում կան մոտ 50 ֆաբրիկա-գործարանային ձեռնարկություն, որոնցից յուրաքանչյուրն ունի հարյուր և ավելի բանվոր, սակայն դրանց մեծ մասը չի պատկանում լիբանանյան ազգային կապիտալին, այլ հանդիսանում է օտարերկրյա՝ անգլիական, ամերիկյան ու ֆրանսիական կապիտալի սեփականությունը։

Լիբանանում համարյա բացակայում է ծանր արդյունաբերությունը։ Կապիտալիստներ Էդդեի, Պաշյանի, Ֆարաոնի և մյուսների փոքր ու միջին հզորության մետաղամշակման ու մետաղագործական մի քանի ձեռնարկությունները չեն փոխում իրերի վիճակը, իսկ Կասարճյանի, Բարսամյանի և Փոլադյանի մետաղաձուլարանները, որոնք տալիս են երկրում արտադրվող համարյա ամբողջ մետաղը, միասին վերցրած տարեկան ձուլում են 10 հազար տոննայից էլ պակաս։ Ի դեպ այստեղ տեղին է նշել, որ տարեկան 10 հազար տոննա մետաղ է ձուլվում միայն Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի ձուլման № 5 արտադրամասում, որի հզորությունն առաջիկայում կկրկնապատկվի։ Միայն Լուսավանի գործիքաշինական գործարանում մի քանի տարի հետո կձուլվի 8—10 անգամ ավելի շատ մետաղ, քան այսօր ձուլում են Լիբանանի բոլոր մետաղաձուլարանները միասին վերցրած։

Ինչպես հայտնի է, որևէ երկրի տնտեսական զարգացման մակարդակը չափվում է նաև նրա էլեկտրազինվածության աստիճանով։ Այս տեսակետից իհարկե, բացառություն չի կարող կազմել նաև Լիբանանը։ Այս երկրում, որի բնակչությունը հավասար է Հայաստանի բնակչության թվին, 1963 թվականին արտադրվել է 623,5 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Նույն թվականին Հայաստանում 7 անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրվել։

Լիբանանյան բանվորի շաբաթական վաստակը չի անցնում 25 լիրայից։ Սակայն արդյունաբերության առանձին ճյուղերում այն ավելի ցածր է։ Օրինակ, տեքստիլ արդյունաբերության մեջ բանվորների 80 տոկոսից ավելին շաբաթական վաստակում է 10—18 լիրա, իսկ կանայք ընդամենը 12 լիրա։

Ահա թե բնակչության բնակարանային պայմանների մասին 1963 թվականի սեպտեմբերին պաշտոնական տեղեկագրում ինչպիսի տվյալներ է հրապարակել Լիբանանի առողջապահության մինիստրության ընդհանուր տնօրեն դոկտոր Ճեմիլ Անութին. Բեյրութում տախտակի ու թիթեղի կտորտանքներից շինված հյուղակների մեջ ամենածանր պայմաններում ապրում են ավելի քան 70 հազար մարդ։ Այդպիսի հյուղակներից Լիբանանի տարբեր քաղաքներում առաջացել են ամբողջ թաղամասեր։ Այս թաղամասերից սկիզբ են առնում բազմապիսի համաճարակներ, որոնք պարբերաբար տարածվում են երկրում։

Անդրադառնալով մինիստրության այս տեղեկագրին, Բեյրութի առաջադիմական «Մեր նշանաբանն է յառաջ» թերթը 1963 թվականի սեպտեմբերի

29-ի համարում գրում է. «Բայց այս հյուղակներում բնակիչներն իրենց կամքով, «հաճույքի համար» չէ, որ այդ հյուղերու ահավոր պայմաններուն տակ կբնակին։ Անոնք հարկադրուած են այդ ընելու։ Անոնք աղքատ աշխատավորներ են և յուրաքանչյուրը իր ընտանիքին օրական անհրաժեշտ սնունդը հազիվ կը հաջողի ապահովել»։

«Ունևորներու փոքրիկ խմբակ մը միայն կը լողա «առատության և փարթամության» պարգևած բարիքներուն մեջ, մինչ ժողովրդային հոծ զանգվածները, զրկուած ամենեն տարրական առավելություններեն, հազիվ քարշ կուտան իրենց գոյությունը՝ անօրինակ դժվարությամբ և սարսափելի պայմաններուն մեջ» («Մեր նշանաբանն է յառաջ», 15 դեկտեմբերի, 1963 թ.)։

Մոտավորապես սա է Լիբանանի իրական պատկերը։

Բայց, եթե դաշնակներն անկողմնակալ լինեին և իրենց ընթերցողներին ներկայացնեին Հայաստանի իրական պատկերը, պետք է համարձակվեին Հայաստանի հետ համեմատել ո՛չ միայն Լիբանանը, որը տասնամյակներ շարունակ զարգացման բարենպաստ պայմաններ է ունեցել, այլև նրա հարևան մյուս երկրները, ինչպիսիք են, ասենք, Թուրքիան, Իրաքը կամ Իրանը, որոնք 1920 թվականին գտնվում էին զարգացման համարյա միևնույն մակարդակի վրա, իսկ այժմ Հայաստանից ետ են մնացել պատմական մի ամբողջ դարաշրջանով։ Ինչո՞ւ դաշնակները չեն տեսնում, որ Հայաստանում այսօր արտադրվում է նույնքան էլեկտրաէներգիա, որքան Թուրքիայում, որի բնակչությունը 15 անգամ ավելի է Հայաստանի բնակչությունից։

Այո՛, այսպիսի համեմատություններ դաշնակները չեն կատարում, որովհետև այդ նրանց ձեռնտու չէ, որովհետև սփյուռքահայ շարքային ընթերցողը հետևում է, որ պարզորոշ կտեսնի այն վիթխարի տարբերությունը, որ այսօր գոյություն ունի Սովետական Հայաստանի և նրա հարևան կապիտալիստական երկրների միջև, այն տարբերությունը, որ գոյություն ունի Սովետական Հայաստանի պայծառ իրականության ու դաշնակների տիրապետության օրերի «ողբի ու որբի» հայրենիք Հայաստանի միջև։

Այսպիսով, իզուր են պարոնայք դաշնակներն «անհանգստանում» Սովետական Հայաստանի տնտեսական հաշվեկշռի համար։ Վաղուց պատմությունը կազմել է դաշնակցության քաղաքական հաշվեկշիռը բացարձակ վնասով։ Ուստի լավ կլինի, որ այդ պարտիայի զառամյալ լիդերները չբարբաջեն Սովետական Հայաստանի պատմական նվաճումների վերաբերյալ։ Աղմկարարությամբ և խարդախությամբ մեռած դիակը կյանք չի ստանա։

Դաշնակները չեն հրաժարվում անվերջ կրկնել բազմիցս հերքված այն հանգերգը, թե՝ «Այսօր Սովետական Հայաստանը Ռուսական կայսրության բաղկացուցիչ մեկ մասն է միայն», նրա գաղութը։ Հայաստանը «զարգացման ոչ մի հնարավորություն չունի», այնտեղ «արհեստականորեն կասեցված է զարգացման ամեն թափ կեանքի բոլոր մարզերում», որովհետև դա է պահանջում «Մոսկովեան պլաններու» շահը («Ալիք», 27 մայիսի 1963 թ.)։

Ոչ անհայտ դաշնակ շեֆ Ռուբեն Դարբինյանը, ամերիկյան «կատաղիների» համախոհը, բարբաջում է. «եթե բոլշևիկները շահ մը չունենան, Հայաստանը չեն շենցներ, ուստի քանի որ այդտեղ իրենց շահը կայ, ուրեմն պետք է զգուշանանք»։

«Սովետական Միությունը,— Ռուբեն Դարբինյանին ձայնակցում է Երվանդ Խաթանասյանը,— իր դրամագլխով գործարաններ է կառուցում, որոնցով շահագործում է երկրի աղբյուրները, հարստությունները» (տե՛ս «Յուսաբեր», 28 նոյեմբերի, 1963 թ.)։



Եր. Խաթանասյանն այստեղ անտեղյակ է ձևանում, որ բազմազգ Սովետական Միությունը մի միասնական ու առողջ օրգանիզմ է, որի բոլոր մասերը պայմանավորված են իրարով, լրացնում են միմյանց։ Մի՞թե Խաթանասյանը չգիտե, որ, ասենք, Հայաստանի մարմարի արտահանությունը ՍՍՌՄ մյուս վայրերը չի նշանակում, թե «Հայաստանը կողոպտվում ու թալանվում է» Ռուսաստանի կողմից։ Այդ բանը, իհարկե, նա լավ գիտե։ Բայց ջանում է կեղծել իրականությունը ընթերցողների հոգիները պղտորելու համար։

Պատմությունից ոչինչ չսովորած դաշնակ «տեսաբանները» շարունակում են սեփական մտամարզանքները խարսխել իրենց այնքան ողորմելի տնտեսական գիտելիքների վրա։ Այստեղ է, որ մի անգամ ևս մեր դեմ է հառնում անցյալ դարի հայկական շենի խղճուկ տիրացուն, կամ ջրատար վարժապետը, որը մեր օրերում էլ դեռ խորհում է, թե երկիրը կարող է և պետք է առաջ գնա փակ տնտեսության ճանապարհով։

Այսպիսով, պարզ է դառնում, որ իրենց հերյուրանքները հիմնավորելու համար դաշնակներն այս անգամ էլ փաստազուրկ են։

Հայաստանի ձեռք բերած նվաճումներն արդյունք են ոչ թե սովետական կարգերի, այլ հայության բնածին շնորհքի, նրա բացառիկ ունակություններիե—ահա դաշնակների հերթական հնարանքը։

Իր ազգի բացառիկության առասպելը նոր չէ, որ հորջորջում են ազգայնամոլն ու շովինիստը։ Բայց պատմությունն իր առաջընթացի բոլոր էտապներում էլ չարաչար պատժել է թե՛ մեկին և թե մյուսին։

Բոլորին հայտնի է, թե ազգային բացառիկության ու քաղաքակրթության ճանապարհին հատուկ միսիայի վերաբերյալ սխալ ու արատավոր մտայնությունն ինչպիսի ահավոր դժբախտություններ բերեց գերմանական, իտալական ու ճապոնական ազգերին։ Մի՞թե ազգի բացառիկության քարոզներն առավել աղետաբեր չեն փոքր ազգերի համար։ Այո՛, ազգային բացառիկության մանիան միշտ էլ դժբախտության աղբյուր է եղել ժողովուրդների համար։

Սովետական Միության բոլոր ազգերի ու ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական աննախընթաց վերելքը, մոտակա մի քանի տարիներում նրանց զարգացման մակարդակների միջև դեռևս գոյություն ունեցող որոշ տարբերությունների վերացման հաջող կենսագործումը գլխովին հերքում են այս կամ այն ազգի բնածին տաղանդի, բացառիկության ու «ընտրյալ» լինելու վերաբերյալ բուրժուական նացիոնալիստների զառանցանքները։ Եթե դաշնակները հայ ժողովրդի բացառիկ բնածին տաղանդով ու նրա «ընտրյալ» լինելով են բացատրում Սովետական Հայաստանի տնտեսական ու կուլտուրական հաջողությունները, ապա ինչո՞վ կարող են նրանք բացատրել ՍՍՌՄ մյուս ազգային ռեսպուբլիկաների, մարզերի ու երկրամասերի նույնքան մեծ հաջողությունները։

Այս բոլորից հետո մեզ մնում է ասել, որ ինչպես եկել էին, այնպես մնացին։ Եկան մտքով աղքատ, քաղաքականության մեջ բոբիկ և իրենց գործելակերպով ազգադավ դաշնակները և մեծ աղետներ պատճառելով մեր ժողովրդին, մնում են լծված հայ ժողովրդին թշնամի իմպերիալիզմի մարտակառքին։

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԸ

Ա. ԱՂԱԲԱԲՈՎ

ՀՍՍՌ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստր

ՍՍՌՄ-ում ժամանակակից տրանսպորտի բոլոր տեսակների՝ երկաթուղիների, ավտոմոբիլային ճանապարհների, օդային, գետային ու ծովային ուղիների, խողովակաշարերի, ինչպես նաև արդյունաբերական ու քաղաքային ուղիների ցանցի երկարությունը 1962 թվականին 2 միլիոն 200 հազար կիլոմետր էր, որից ավտոմոբիլային ճանապարհները կազմում էին 1,3 միլիոն, երկաթուղիները՝ 230 հազար, նավարկելի գետերն ու ջրանցքները՝ 140 հազար, օդային ուղիները՝ մոտ 400 հազար կիլոմետր և այլն։

Տրանսպորտի կարիքների համար ամեն տարի միջին հաշվով ծախսվում է երկրում արտադրվող ամբողջ մետաղի 20, վառելիքի 18 և անտառանյութի 10 տոկոսը։

Երկաթուղային, ջրային, ավիացիոն, խողովակագծային տրանսպորտի հետ միասին երկրի ժողովրդական տնտեսության զարգացման համար հարաճուն նշանակություն է ստանում ավտոմոբիլային տրանսպորտը։

1940—1960 թվականներին ՍՍՌՄ-ում բեռնափոխադրումները երկաթուղային տրանսպորտով ավելացել են 3, իսկ ավտոմոբիլային տրանսպորտով՝ 10 անգամ։

Ավտոմոբիլային տրանսպորտի լայն կիրառումը նպատակահարմար է այն պատճառով, որ զգալիորեն խնայվում են հասարակական աշխատանքն ու միջոցները (առբերում, բեռնում, բեռնաթափում, տարայի տնտեսում, կորուստների կրճատում և այլն)՝ հատկապես ոչ մեծ հեռավորությունների վրա կատարվող փոխադրումների ժամանակ։

Ավտոմոբիլային տրանսպորտի դերն ու նշանակությունը շատ մեծ են մեր ռեսպուբլիկայում։ Լեռնային պայմանները սահմանափակում են երկաթուղային ու ավիացիոն տրանսպորտի կիրառումը, ուստի և ավելի արագ տեմպերով է զարգանում ավտոմոբիլային տրանսպորտը, մեծանում է նրա տեսակարար կշիռն ընդհանուր փոխադրումների մեջ։

Եթե նախառևոլյուցիոն Հայաստանում ավտոմոբիլներ ընդհանրապես չկային, ապա այժմ մեր տասնյակ հազարավոր բեռնատար ու մարդատար մեքենաները իրար են կապում ռեսպուբլիկայի բոլոր բնակավայրերը, բեռների ավելի քան 80 տոկոսը փոխադրվում է ավտոմոբիլներով. միայն ընդհանուր օգտագործման ավտոբուսներով ամեն օր տեղափոխվում են մոտ 500 հազար ուղևոր։



Ավտոմոբիլային տրանսպորտի այսպիսի լայն կիրառման պատճառով անհրաժեշտ եղավ փոխել ավտոտնտեսությունների կառուցվածքը և մեքենաների շահագործման կազմակերպման ձևերը։ Մանր ավտոտնտեսություններում ցրված մեքենաներն այժմ կենտրոնացված են տնտհաշվարկային խոշոր տնտեսություններում, որտեղ կազմակերպվում է ավտոմոբիլների պլանաչափ տեխնիկական սպասարկում ու նորոգում և նվազագույն ծախսումներով ապահովվում է դրանց բարձր տեխնիկական պատրաստականությունը։

Զգալի չափով ավելացել են մասսայական բեռների կենտրոնացված փոխադրումները, որոնք առավել ձեռնտու են պետության համար։ Արմատավորվում են բեռների միջքաղաքային կենտրոնացված փոխադրումները մեծ բեռնամբարձություն ունեցող մեքենաներով և ավտոգնացքներով։

Ավտոբուսը դարձել է ուղևորների ինչպես հեռավոր, այնպես էլ ներքաղաքային փոխադրումների լավագույն միջոց։ Ավտոբուսային երթուղիների ընդհանուր երկարությունը ներկայումս հասնում է 27 հազար կիլոմետրի։

Գնալով մեծանում է ավտոմոբիլային բեռնափոխադրումների տեսակարար կշիռը ընդհանուր տրանսպորտում։ Այսպես, եթե 1940 թ. ավտոմոբիլներով փոխադրվել է 4,1 միլիոն տոննա բեռ, 1960 թ. այն հասել է 69,4 միլիոն տոննայի, երկաթուղային փոխադրումների 3,7 (1940 թ.) և 14,0 (1960 թ.) միլիոն տոննայի դիմաց։ Ինչպես տեսնում ենք, գնալով գերակշռում են ավտոմոբիլային փոխադրումները։ Տնտեսական նպատակահարմարությունը, աճի տեմպերը վկայում են, որ հեռանկարում երկաթուղային փոխադրումները զարգանալու են համեմատաբար ավելի դանդաղ և երկաթուղիները հիմնականում ծառայելու են բեռները ռեսպուբլիկայից արտահանելու համար, իսկ ավտոմոբիլային տրանսպորտը զարգանալու է ավելի արագ և աստիճանաբար իր վրա է վերցնելու բոլոր բեռնափոխադրումները ռեսպուբլիկայի ներսում։

Ավտոմոբիլային բեռնափոխադրումները ամբողջ Միությունում կազմում են բոլոր բեռնափոխադրումների 5—7 տոկոսը և ոչ ավելին, մինչդեռ Հայաստանում դրանք հասնում են 50 տոկոսի։ Այդ էլ վկայում է, որ ռեսպուբլիկայում տրանսպորտի հիմնական տեսակը ավտոմոբիլայինն է։

Ավտոմոբիլային բեռնափոխադրումներն անխզելիորեն կապված են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, մասնավորապես արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության և առևտրի զարգացման հետ։

Արդյունաբերության մեջ ավտոմեքենաներով են կատարվում տեխնոլոգիական, ներգործարանային փոխադրումները, ձեռնարկություն է բերվում հումքը և այդտեղից տարվում պատրաստի արտադրանքը։

Ավտոմոբիլային տրանսպորտը բացառիկ դեր է կատարում շինարարության մեջ (բոլոր աշխատանքների 18—35 տոկոսը բաժին է ընկնում ավտոմեքենաներին)։

Գյուղատնտեսության մեջ ավտոտրանսպորտն օգտագործվում է գլխավորապես բերքահավաքի շրջանում, ինչպես նաև՝ հանքային և այլ պարարտանյութերի ու ներտնտեսային փոխադրումների համար։

Առևտրի բնագավառում երկաթուղային կայարաններից, կենտրոնական բազաներից, պահեստներից, արդյունաբերական ձեռնարկություններից պարենային և արդյունաբերական ապրանքներն առևտրական ցանց են փոխադրվում ավտոմոբիլներով։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ճյուղերում ավտոմոբիլնե-

*րով են փոխադրվում՝ արդյունաբերության մեջ բեռների 30, շինարարության մեջ՝ 40, գյուղատնտեսության՝ 15, առևտրի՝ 2, ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում՝ բեռների 13 տոկոսը:*

*Ուսումնասիրությունները և պլանավորման փորձը ցույց են տվել, որ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ցուցանիշների և ավտոտրանսպորտով փոխադրվող բեռների քանակի միջև որոշակի կապ կա:*

*Ավելի հանգամանորեն պատմենք բեռների և ուղևորների փոխադրումների մասին:*

## 1. ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ԲԵՌՆԱՓՈԽԱԴՐՈՒՄՆԵՐ

*Ավտոտրանսպորտի մինիստրության ընդհանուր օգտագործման տրանսպորտի աշխատանքներում առավել մեծ տեսակարար կշիռ են կազմում բեռների փոխադրումները: Դրանց ծավալի աճն անխզելիորեն կապված է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հետ:*

*Ժողովրդական տնտեսության զարգացման համապատասխան մեծացել են ավտոմոբիլների թիվը, բեռնափոխադրումների ծավալը, բեռնաշրջանառությունը: Այդ մասին է վկայում ստորև բերվող աղյուսակը:*

*Աղյուսակ 1*

| | 1940 *թ.* | 1950 *թ.* | 1955 *թ.* | 1960 *թ.* | 1965 *թվականին նախատեսվում է (նախագիծ)* |
|---|---|---|---|---|---|
| *Փոխադրումների ծավալը (միլիոն տոննաներով)* . | 4,1 | 12,5 | 27,9 | 69,4 | 114,0 |
| *Բեռնաշրջանառությունը (հազար տոննա կիլոմետրերով)* . . | 34,0 | 117 | 295 | 648 | 1050 |

*Աղյուսակի տվյալներից երևում է, որ բեռնափոխադրումների ծավալը 1965 թվականին, 1940 թվականի համեմատությամբ մեծանալու է գրեթե 30, իսկ բեռնաշրջանառությունը՝ 31 անգամ:*

*Բեռնափոխադրումների աճը կապահովվի ինչպես ավտոմոբիլների թվի մեծացմամբ, այնպես էլ դրանց աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավմամբ, փոխադրումների կազմակերպման նոր, պրոգրեսիվ ձևերի արմատավորմամբ:*

*Այժմ ռեսպուբլիկայի բեռնատար ավտոմոբիլները հիմնականում կենտրոնացված են ընդհանուր օգտագործման տրանսպորտի սիստեմում, կոլտնտեսություններում, սովխոզներում, շինարարական կազմակերպություններում և արդյունաբերական ձեռնարկություններում (տեխնոլոգիական տրանսպորտ): Տարեցտարի մեծանում է ընդհանուր օգտագործման տրանսպորտով փոխադրվող բեռների տեսակարար կշիռը:*

*Ավտոմոբիլային բեռնափոխադրումների անընդհատ աճն ապահովվել է երթուղիներում գտնվող մեքենաների թվի ավելացման, դրանց բեռնամբարձության մեծացման, դատարկ վազքերի կրճատման, բեռնման-բեռնաթափման ժամանակ անարտադրողական պարապուրդների վերացման և այլ միջոցառումների շնորհիվ: Այսպիսով ավելացել են բեռնամբարձության յուրա-*



*քանչյուր միավորին (տոննա) ընկնող փոխադրումները (տոննաներով և տոննա-կիլոմետրերով) կամ, այլ կերպ ասած, մեքենաների արտադրողականությունը, որ երևում է հետևյալ աղյուսակից:*

*Աղյուսակ 2*

| | 1940 *թ.* | 1950 *թ.* | 1955 *թ.* | 1960 *թ.* | 1964 *թ.* *(սպասվում է)* | 1965 *թ.* *(նախագիծ)* |
|---|---|---|---|---|---|---|
| *Տոննաներով* . . . . . | 365 | 380 | 956 | 1374 | 1170 | 1180 |
| *Տոննա-կիլոմետրերով* . . | 14000 | 14300 | 17400 | 16906 | 18713 | 18900 |

*Բեռնատար ավտոտրանսպորտի աշխատանքի որակական ցուցանիշների բարձրացմանն զգալիորեն նպաստել է նաև փոխադրումների կազմակերպման բարելավումը, այն հանգամանքը, որ ավտոտրանսպորտը համալրվել է կատարյալ կոնստրուկցիաների և մասնագիտացված մեքենաներով, մասնավորապես ինքնաթափերով:*

*Ավտոմոբիլային տրանսպորտում արտադրողականության բարձրացման նպատակով արմատավորվել են մասսայական բեռների կենտրոնացված փոխադրումներ, Երևանում է կենտրոնացվել դիսպետչերական ծառայությունը և այլն:*

*Մասսայական բեռների կենտրոնացված փոխադրումները Հայաստանում առաջին անգամ կազմակերպվեցին 1955 թվականին: Փոխադրումների այս ձևն ունի մի շարք առավելություններ. բեռն ստացողն ազատվում է փոխադրման հոգսերից, պայմաններ են ստեղծվում բեռներն անընդհատ ստանալու, պահեստների, ապրանքային բակերի, բաց հանքերի գործունեությունը կարգավորելու, բեռնման-բեռնաթափման աշխատանքներն առավելագույն չափով մեքենայացնելու, ավտոմոբիլների արտադրական պարապուրդները կրճատելու համար, վերանում է բեռնող բանվորներ ու առաքիչներ փոխադրելու անհրաժեշտությունը, որի շնորհիվ և կրճատվում են դրանց հաստիքները:*

*Այս առավելությունների շնորհիվ, միևնույն քանակությամբ բեռը փոխադրելու համար ավելի քիչ մեքենաներ են պահանջվում, կրճատվում են աշխատանքի, շահագործման, դրամական միջոցների ծախսումները:*

*Առաջին փորձից հետո սկսեցին կենտրոնացված կարգով փոխադրել ալյուրը, նավթամթերքները, կաթը, հացն ու հացամթերքները, մսամթերքները և այլն: Երևանի օրինակով կենտրոնացված փոխադրումներն արմատավորվեցին Լենինականում, Կիրովականում և ռեսպուբլիկայի այլ քաղաքներում: Հայաստանում սկսեց բեռների կենտրոնացված փոխադրումը կայարանից և մինչև կայարան. այդ առաջին փորձն էր Անդրկովկասում:*

*Հաշվարկները ցույց են տվել, որ միայն այս տարի մասսայական բեռների կենտրոնացված փոխադրումների շնորհիվ խնայվել է մոտ 200 հազար ռուբլի:*

*Երևանի ավտոտրանսպորտային ձեռնարկությունների աշխատանքում կար մի լուրջ թերություն—բեռների փոխադրման ապակենտրոնացված ղեկավարումը, որի պատճառով շարժակազմն անհրաժեշտ արտադրողականությամբ չէր օգտագործվում, ցածր էր ապրանքատերերի սպասարկման կուլտուրան:*

*Երկրի մի շարք քաղաքների փորձը ցույց է տվել, որ մի քանի ավտո-*

տնտեսությունների կատարած բեռնափոխադրումների կենտրոնացված ղեկավարումը, դրանց շահագործական գործունեության կենտրոնացումը կնպաստեն վերոհիշյալ թերության վերացմանը։

Դրանից ելնելով, ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը 1963 թվականի սկզբին Երավտոտրանս տրեստում կազմակերպեց ավտոտնտեսությունների կենտրոնացված ղեկավարություն և կենտրոնական դիսպետչերական ծառայություն։ «Երավտոտրանսն» ուսումնասիրեց միացված ավտոտնտեսությունների կողմից սպասարկվող շրջանների տնտեսությունը, ձեռնարկությունների ու կազմակերպությունների տրանսպորտային կապերը, պարզեց ավտոփոխադրումների պահանջները, փոխադրումների պլանի հիման վրա պայմանագրեր կնքեց ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ։ Ուղեգրերն սկսեցին գրվել տրեստում և մշակվել մեքենական հաշվիչ կայանի միջոցով։

Այդպիսով, ավտոտնտեսությունների գլխավոր խնդիրն էր շարժակազմի տեխնիկական սպասարկումն ու նորոգումը, վարորդներով, շահագործական նյութերով մեքենաների ապահովումը, պլանով նախատեսված մեքենաների երթուղի դուրս բերումը։

## 2. ՈՒՂԵՎՈՐՆԵՐԻ ՓՈԽԱԴՐՈՒՄՆԵՐԸ

Հայաստանի մարդատար տրանսպորտն ունի ընդամենը երկու տասնամյակի պատմություն։ 1950 թվականից մեր ռեսպուբլիկայում մասսայական բնույթ են ստացել ուղևորների ավտոմոբիլային փոխադրումները։

1950 թվականին մարդատար ավտոտրանսպորտով փոխադրվել են 9982 ուղևորներ, 1960 թվականին՝ 91607, իսկ 1964 թվականին՝ 170800 ուղևոր։

Ուղևորների ավտոբուսներով փոխադրումների աճը պայմանավորված է ներքաղաքային, քաղաքամերձ ու միջքաղաքային փոխադրումների ու երթուղիների ավելացմամբ։

Միջքաղաքային ավտոբուսային փոխադրումների զարգացման գործում մեծ նախաձեռնություն ու հաստատակամություն է ցուցաբերել ռեսպուբլիկայի ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը։ 1952 թվականին մինիստրության նախաձեռնությամբ կազմակերպվեցին ավտոբուսային փոխադրումներ մեծ տարածությունների վրա, մշտական երթևեկություն սահմանվեց Երևանի և Թբիլիսիի միջև։ Այնուհետև մեր նախաձեռնությամբ ավտոբուսային կապեր հաստատվեցին Երևան և Բաքու, Կիսլովոդսկ, Սոչի, Կիրովաբադ, Ստեփանակերտ քաղաքների միջև, որոնք գտնվում են Հայաստանի մայրաքաղաքից հարյուրավոր կիլոմետր հեռավորության վրա։

Ավտոբուսային բոլոր փոխադրումների 78 տոկոսը կատարվում է ռեսպուբլիկայի քաղաքներում։ Միայն Երևանում 1963 թվականին կային ավտոբուսի 35 երթուղիներ՝ մոտ 300 կիլոմետր ընդհանուր երկարությամբ։ Ամեն օր հազարավոր ուղևորներ են ժամանում և մեկնում այստեղից։ Ավտոտրանսպորտի երթևեկությունն առավել ինտենսիվ է Երևան—Էջմիածին երթուղում։

Միայն այս տարի ավտոբուսներով միջին հաշվով օրական փոխադրվել է 460 հազար ուղևոր։ Աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի աճին զուգընթաց մեծանում է նաև ավտոմոբիլային տրանսպորտի պահանջը։



Վերջին տասը տարում քաղաքացիների ավտոբուսային ուղևորությունների թիվը ավելի քան եռապատկվել է։

Ավտոբուսային փոխադրումների ավելացումը պահանջում է հանգամանորեն ուսումնասիրել, թե որտեղ է ավելի ուժեղ ուղևորների հոսանքը, մեքենաները մտածված դասավորել ինչպես ժամանակի, այնպես էլ քանակի տեսակետից։ Այս բարդ խնդիրների լուծման գործում մեզ մեծ չափով օգնում են հաշվիչ մեքենաները։ Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի հաշվողական կենտրոնը օգնության կարգով սկսել է լուծել մեզ համար բարդ շատ խնդիրներ։

Երթուղիների դասավորումը, չվացուցակների կազմումն ու խիստ կատարումն ավտոբուսների արդյունավետ շահագործման հիմնական գործոններից են։

Ռեսպուբլիկայի քաղաքներում մեծ չափով տարածվել են նաև մարդատար տաքսիները, որոնք ավելի հարմարավետ են և կարող են ուղևորին արագ տանել ցանկացած վայրը։

Ռեսպուբլիկան առաջին մարդատար տաքսիներն ստացավ 1948 թվականին։ Տարեցտարի ռեսպուբլիկայում ավելացավ տաքսիների թիվը։ Այսպես 1950 թվականին բնակչությանը սպասարկող 44 ավտոմոբիլների փոխարեն 1963 թվականին Հայաստանի քաղաքների լայնարձակ պողոտաներով սլանում են 900 մեքենաներ, բարեխղճորեն սպասարկելով մեր քաղաքացիներին։

Ներկայումս տաքսիները կանոնավոր կերպով երթևեկում են Երևանից մինչև Թբիլիսի, Կիսլովոդսկ, Լենինականից մինչև Կիրովական, ինչպես նաև մայրաքաղաքից մինչև Քանաքեռ, Շահումյանի շրջան, «Չերյոմուշկա» և այլուր։

Մարդատար տաքսիներ են աշխատում նաև ռեսպուբլիկայի մյուս բոլոր քաղաքներում՝ Լենինականում, Դիլիջանում, Կամոյում, Ղափանում, Հրազդանում, Ալավերդում, Կիրովականում։

## 3. ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ ԳԼԽԱՎՈՐԸ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ Է

Տրանսպորտային ծախսերն իրենց արտացոլումն են գտնում ինչպես արդյունաբերական, այնպես էլ պարենային ապրանքների արժեքի մեջ։ Շինարարության մեջ տրանսպորտային ծախսերը, ինչպես արդեն ասացինք, կազմում են ընդհանուր ծախսերի մոտ 35 տոկոսը։

Մատուցվող ծառայությունների սակագները որոշելու համար ավտոմոբիլային տրանսպորտում հիմք է ընդունվում փոխադրումների արժեքը. որպես կանոն, ապրանքների բացթողման գինն ինքնարժեքից բարձր է լինում մոտ 5—6 տոկոսով։ Այսպիսով, փոխադրումների արժեքի իջեցումը կպակասեցնի ավտոմոբիլային ծառայությունների սակագները։ Այս հանգամանքը հատկապես կարևոր է հաշվի առնել ուղևորների փոխադրումները կազմակերպելիս, քանի որ փոխադրումների սակագների իջեցումը, փաստորեն նշանակում է աշխատավորների ռեալ աշխատավարձի բարձրացում։

Ավտոմեքենաների շահագործման ծախսերը ռեսպուբլիկայում հասնում են տարեկան տասնյակ միլիոնավոր ռուբլիների։ Քանի որ այս ծախսերը մըտնում են փոխադրումների արժեքի մեջ, ապա դրանց կրճատումն ունի ժողովրդատնտեսական մեծ նշանակություն։ Եթե ընդհանուր օգտագործման մեքենաներով կատարվող փոխադրումների արժեքը իջեցվի թեկուզ 1 տոկոսով,

1963 թվականի տվյալներով պետությունը տարեկան կտնտեսի 300 հազար ռուբլի։

Ընդհանուր օգտագործման տրանսպորտի ավտոտնտեսությունները փոխադրումների արժեքի իջեցման ուղղությամբ վերջին տարիներս ձեռք են բերել որոշակի հաջողություններ։

Ավտոմոբիլային փոխադրումների ինքնարժեքի իջեցմանը նպաստել են վառելիքի խնայողության, նորոգման և վերադիր ծախսերի կրճատման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումները, ավտոմեքենաների արտադրողականության բարձրացումը։

Ավտոտնտեսություններում բավականին աշխատանք է կատարվել վառելիքի և քսանյութերի խնայողության ուղղությամբ։ Այդ են ցույց տալիս № 3 աղյուսակի տվյալները (վառելիքի գերածախս են տվել միայն ավտոբուսները, որը բացատրվում է Երևանի ռելիեֆով)։

Աղյուսակ 3

| | Բենզինի խնայողությունը և գերածախսը տոննաներով՝ նորմայի նկատմամբ | | | |
|---|---|---|---|---|
| | ընդամենը | այդ թվում | | |
| | | բեռնատար մեքենաներ | ավտոբուսներ | մարդատար տաքսիներ |
| 1960 | 1,9 | 3,0 | — 2.2 | 0,3 |
| 1961 | 2.2 | 6,5 | — 3,5 | 1.0 |
| 1962 | 2,0 | 3,8 | — 3,0 | 1,8 |

Բեռնափոխադրումների արժեքի իջեցման գործում զգալի դեր է խաղացել բեռնամբարձության յուրաքանչյուր միավորի դիմաց կատարվող փոխադրումների ավելացումը տոննա-կիլոմետրերով, որը ավտոմեքենաների շահագործական ցուցանիշների բարձրացման արդյունքն է։ № 4 աղյուսակի տվյալներն արտացոլում են այդ բնագավառում ձեռք բերված հաջողությունները։

Աղյուսակ 4

| Տարիներ | Արտադրողականությունը տոննա-կիլոմետրերով | Վազքի օգտագործման գործակիցը | Օրական վազքը կիլոմետրերով |
|---|---|---|---|
| 1960 | 16906 | 0,543 | 147,0 |
| 1961 | 16634 | 0,546 | 149,0 |
| 1962 | 17274 | 0,560 | 155,0 |

Մեծ են հաջողությունները մարդատար տաքսիների փոխադրումների արժեքն իջեցնելու գործում, որն այդ մեքենաների շահագործական հիմնական ցուցանիշների բարելավման արդյունք է։

Ամեն մի ավտոտնտեսության աշխատանքի կարևոր տնտեսական ցուցանիշներից մեկը շահութաբերությունն է։ Ռեսպուբլիկայի ընդհանուր օգտագործման ավտոտրանսպորտն աշխատել և աշխատում է շահութաբեր։



## 4. ՈՒՂԵՎՈՐՆԵՐԻ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ՝ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Ուղևորների փոխադրումը կազմակերպելու կարևոր խնդիրներից մեկն է նրանց կուլտուրական սպասարկումը ինչպես ճանապարհին, այնպես էլ ավտոկայաններում։ Սակայն այս տեսակետից գովասանական քիչ բան կարելի է ասել մեր ռեսպուբլիկայի մասին։ Երևանից ամեն օր տարբեր ուղղություններով սուրում են տասնյակ ավտոբուսներ, բայց Շահումյանի հրապարակում գտնվող ավտոկայանը չի բավարարում մեր առտնին պահանջները։

Մինիստրությունը միջոցներ է ձեռնարկում ուղևորների կուլտուրական սպասարկման մակարդակը բարձրացնելու համար։ ՍՍՌ Միության ճարտարապետության ու շինարարության ակադեմիայի թղթակից-անդամ Գ. Աղաբաբյանի նախագծով էջմիածնի խճուղու վրա կառուցվում է նոր ավտոկայան, որը կունենա հյուրանոց, ռեստորան։ 11,3 մետր բարձրություն ունեցող տուֆակերտ շենքի կառամատույցում միաժամանակ կարող են կանգնել 18 ավտոբուսներ։ Կայարանում կլինեն ուղեբեռների ընդունման բաժին, փոստի բաժանմունք, բուժկետ, բուֆետ, հանգստի սենյակ և օժանդակ շենքեր։

Միջանկյալ կայարաններում և ռեսպուբլիկայի մի շարք քաղաքներում Սևանում, Իջևանում, Հոկտեմբերյանում, Նոյեմբերյանում, Արտաշատում, Կիրովականում և այլուր կառուցվել են պարզ տիպի կայարաններ՝ յուրաքանչյուրը 50 ուղևորի համար։

Հայաստանում աշխատում են ավելի քան 50 հազար վարորդներ, որոնք հիմնականում ազնվաբար են կատարում իրենց պարտականությունները, բեռներ և ուղևորներ են փոխադրում տարվա բոլոր եղանակներին։ Չնայած լեռնային պայմաններին, ավտոտնտեսությունների կոլեկտիվներն ապահովում են տրանսպորտի հստակ և անխափան աշխատանքը։

Խոսելով Հայաստանի ավտոմոբիլային տրանսպորտի մոտ 25-ամյա գործունեության մասին, չի կարելի չհիշել մեր հնագույն վարորդներին, որոնք ավտոմոբիլի ղեկը բռնած անվթար անցել են հազարավոր ու միլիոնավոր կիլոմետրեր։ Այդպիսիք են՝ № 2 ավտոբուսային պարկից Ռուբեն Դեգերյանը, Սամիկոն Մկրտչյանը և ուրիշներ։

Ավտոտնտեսություններում մեծ աշխատանք է կատարում նորոգող-սպասարկող անձնակազմը։ Լավագույն ավտոհավաքողներից են՝ Հայկ Բաբայանը (Երևանի ավտոնորոգման գործարան), Մուկուչ Ամիրյանը (Երևանի № 1 ավտոբուսային պարկ), Արսեն Գյուրջյանը (№ 2978—Գ ավտոշարասյուն) և ուրիշներ։

Քսանհինգ տարում Հայաստանի ավտոտրանսպորտում աճել են շնորհալի ղեկավար կադրեր, բարձրացել է աշխատողների որակավորումը, զգալիորեն մեծացել է բարձրագույն ու միջնակարգ տեխնիկական կրթություն ունեցող մասնագետների թիվը։ Ներկայումս ընդհանուր օգտագործման տրանսպորտի սիստեմում աշխատում են 630 ինժեներներ ու տեխնիկներ. ավտոձեռնարկությունների 35 ղեկավարներ ունեն բարձրագույն մասնագիտական կամ միջնակարգ տեխնիկական կրթություն։ Ավտոտրանսպորտի մասնագիտական կադրեր են տալիս Երևանի ավտոճանապարհային տեխնիկումը և գյուղատնտեսական ինստիտուտը, որն անցյալ տարվանից սկսել է տալ շրջանավարտներ։

Ռեսպուբլիկայի ավտոտնտեսությունների լավագույն ղեկավարներից են՝

Ալավերդու ավտոտրանսպորտային գրասենյակի պետ Լևոն Մանթաշյանը, № 2980 ավտոշարասյան պետ Մ. Մկրտչյանը, № 2 տաքսամոտորային պարկի պետ Ս. Գևորգյանը։

Վերջին երկու տարում սոցիալիստական մրցությունում առաջին տեղերն են գրավել և փոխանցիկ կարմիր դրոշ նվաճել Երևանի № 1 ավտոբուսային պարկի 2980 ավտոշարասյան, Արտաշատի, Երևանի №№ 7 և 8 ավտոտրանսպորտային գրասենյակների, № 1 մարդատար տաքսամոտորային պարկի, Լենինականի № 2 ավտոտրանսպորտային գրասենյակի և Կիրովականի ավտոնորոգման գործարանի կոլեկտիվները։

Այդ նույն ժամանակամիջոցում Սոցիալիստական մրցության գերազանցիկի կրծքանշանով պարգևատրվել են 221 առաջավոր բանվորներ ու ծառայողներ, իսկ 200 մարդ ստացել են մինիստրության և կապի ավտոմոբիլային տրանսպորտի ու խճուղային ճանապարհների աշխատողների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեի պատվոգրեր։

Երկարամյա անբասիր աշխատանքի համար Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի պատվոգրով պարգևատրվել են 20 հոգի՝ բեռնափոխադրումների գլխավոր վարչության պետ Գ. Հարությունյանը, վարորդ Ռ. Դեգերյանը և ուրիշներ։

Ավտոմոբիլային տրանսպորտի շատ աշխատողներ ակտիվ մասնակցում են հասարակական կյանքին, հանդիսանում են շրջանային ու քաղաքային սովետների դեպուտատներ։ Երավտոտրանսի № 4 ավտոտրանսպորտային գրասենյակի վարորդ Ալբերտ Ավետիսյանը ռեսպուբլիկայի Գերագույն սովետի դեպուտատ է։

Տարեցտարի ավելի ու ավելի լայն ծավալ է ստանում սոցիալիստական մրցությունը։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարում են Երևանի ագրեգատա-նորոգման գործարանը, № 2 տաքսամոտորային պարկը և այլն։ Երևանի բեռնատար ավտոմոբիլների նորոգման գործարանի կոլեկտիվը մրցում է Բաքվի բեռնատար ավտոմոբիլների նորոգման գործարանի, Երավտոտրանսը՝ Խարկովի ավտոտրանսի, Երևանի № 1 ավտոբուսային պարկը՝ Մոսկվայի № 1 ավտոբուսային պարկի հետ։ Սոցիալիստական մրցություն է ծավալված նաև ռեսպուբլիկայի ավտոտնտեսությունների միջև։

Հայաստանի ավտոտրանսպորտի աշխատողները ամեն ինչ կանեն ձեռք բերված հաջողությունները բազմապատկելու, բեռների և ուղևորների փոխադրումներն ավելի ռացիոնալ կազմակերպելու, ուղևորների սպասարկման կուլտուրան բարձրացնելու համար։



# ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԱՄՈՒՐ ԲԱԶԱՅԻ ՀԱՄԱՐ

Մեր երկրում կապիտալ շինարարության մեծածավալ պլանների կենսագործման համար անհրաժեշտ է շեշտակի բարելավել շինանյութերի արդյունաբերությունը և շինարարությունը վարել ինդուստրիալ մեթոդներով։

Շինարարությունը ժողովրդական տնտեսության ո՛չ միայն աշխատատար, այլև առավել նյութատար ճյուղերից է. նյութերի վրա կատարված ծախսումները կազմում են շինմոնտաժային աշխատանքների ընդհանուր արժեքի մոտ 60 տոկոսը, իսկ ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումների՝ մոտ 33 տոկոսը։

Պարտիան ու կառավարությունը հսկայական ուշադրություն են նվիրում շինարարության արտադրա-տեխնիկական բազայի ընդլայնման հարցերին։

«Կապիտալ շինարարության հսկայական մասշտաբները, մատնանշված է ՍՄԿՊ ծրագրում,— պահանջում են շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության արագ զարգացում և այնպիսի մակարդակի տեխնիկական կատարելագործում, որն ապահովի ժողովրդական տնտեսության պահանջները, շինարարության ժամկետների առավելագույն կրճատումը, իջեցնի դրա արժեքն ու բարելավի որակը՝ շինարարության հետևողական ինդուստրացման, ըստ տիպային նախագծերի խոշոր չափերի կոնստրուկցիաներից և արդյունաբերական արտադրության տարրերից լրիվ հավաքովի շենքերի ու շինանյութերի կառուցման անցնելը արագորեն ավարտելու միջոցով»։

Մեր ռեսպուբլիկայում այդ հարցերը ուշադրության կենտրոնում են։ ՀԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը շինարարական կազմակերպությունների և շինանյութերի արդյունաբերության աշխատողների առջև դրել են անհետաձգելի ու պատասխանատու խնդիրներ, որոնց իրականացմամբ կկատարվեն յոթնամյակի առաջադրանքները շինմոնտաժային աշխատանքների ուղղությամբ։ 1959 թվականի համեմատությամբ շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի զարգացման կապիտալ ներդրումները 1965 թվականին կավելանան երկու անգամ։ Իսկ արդյունաբերության կապիտալ ներդրումների ընդհանուր գումարի մեջ այդ ճյուղերի կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը կկազմի մոտավորապես 14,3 տոկոս։

Կապիտալ շինարարության հարաճուն ծավալն ապահովելու համար անհրաժեշտ է, որ շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստ-

ըիայի զարգացումը գերազանցի շինմոնտաժային աշխատանքների ծավալի աճը։ Սակայն մեր ռեսպուբլիկայում այդ ինչպես հարկն է չի իրականացվում, որի հետևանքով ընթացիկ յոթնամյակի տարիներին մեր շինարարության արտադրա-տեխնիկական բազան անբավարար է զարգացել։

Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ շինարարական կազմակերպությունների մեղքով ժամանակին չեն գործարկվում նոր կարողությունները, չի յուրացվում շինանյութերի արդյունաբերության ու շինարարական ինդուստրիայի կապիտալ ներդրումների զգալի մասը։ 1960 թվականին կապիտալ ներդրումների պլանը կատարվել է 90, 1961-ին՝ 90,4, 1962-ին՝ 85,1 և 1963-ին՝ 89 տոկոսով։ Դրա հետևանքով միայն անցած տարի չօգտագործվեցին այնպիսի կարողություններ, ինչպիսիք են, օրինակ՝ Արագածի հանքավայրը, որը պետք է տար 250 հազար տոննա պեռլիտի ջարդոն, Երևանի փայտամշակման կոմբինատը, որը պետք է տար 150 հազար քառակուսի մետր ատաղձագործական ապրանքներ։ Պետք է արտադրվեին նաև 45 հազար խորանարդ մետր երկաթ-բետոնե հավաքովի կոնստրուկցիաներ, 125 հազար խորանարդ մետր արհեստական խոշոր բլոկներ և այլն։

Նույնն է վիճակը նաև այս տարի։ Կապիտալ ներդրումների պլանը 1964 թվականի ութ ամսում կատարվել է 77,2 տոկոսով, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 84,5 տոկոսով։ Շինարարության մինիստրությունն ինչպես հարկն է չի զբաղվում այնպիսի կարևորագույն օբյեկտների շինմոնտաժային աշխատանքներով, ինչպիսիք են՝ պեռլիտի Արագածի հանքավայրը, Հրազդանի խոշոր պանելային տնաշինարարության կոմբինատը, Հրազդանի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների պոլիգոնը, Երևանի խոշոր պանելային տնաշինարարության կոմբինատը, Կարմրաշենի հրաբխային խարամի արդյունահանման ու վերամշակման ձեռնարկությունը, Արթիկի տուֆաբլոկների գործարանը և այլն։ Դրա հետևանքով խիստ ցածր է աշխատանքների կազմակերպման մակարդակը շինհրապարակներում, չկան աշխատանքների կատարման նախագծային, իսկ որոշ դեպքերում՝ նախագծային և նախահաշվային փաստաթղթերը. ժամանակին չեն ձևակերպվում հայտերը, անկանոն է մատակարարվում տեխնոլոգիական սարքավորումը։

Այս տարվա սեպտեմբերին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումը քննարկեց՝ շինարարության ղեկավարումը բարելավելու վերաբերյալ ՍՄԿԿ XXII համագումարի որոշումների կատարման ընթացքը։ Նշվեցին այն հիմնական խնդիրները, որոնք պետք է լուծել՝ շինարարության ինդուստրիալ բազան հարստացնելու համար։ 1965 թվականին շինմոնտաժային աշխատանքների ծավալը 1959 թվականի համեմատությամբ կաճի 2,7 անգամ, շինանյութերի արդյունաբերության համախառն արտադրանքը համապատասխանորեն կավելանա 2,5, իսկ շինարարության բազայի զարգացման նպատակով արվող կապիտալ ներդրումների ծավալը՝ 2 անգամ։ Այդ ասպարեզում որոշակի փոփոխություններ կլինեն առաջիկա հնգամյակում։ 1970 թվականին շինմոնտաժային աշխատանքները, 1965 թվականի համեմատությամբ, կաճեն 2,7 անգամ, իսկ համախառն արտադրանքը կավելանա առնվազն երեք անգամ, կազմելով 250 միլիոն ռուբլի 1965 թվականի 83,7 միլիոն ռուբլու դիմաց։

Շինարարության ինդուստրացման հիմքը երկաթ-բետոնե հավաքովի կոնստրուկցիաներն են, որոնց արտադրությունը ռեսպուբլիկայում անշեղ աճում է։ Եթե 1953 թվականին արտադրվել էր 14 հազար խորանարդ մետր հավա-



քովի երկաթբետոն, ապա 1963 թվականին արտադրվեց 408 հազար խորանարդ մետր, կամ 30 անգամ ավելի։ Իսկ մեկ միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքների հաշվեկշռում ծախսվել է 2071 խոր. մետր երկաթ-բետոն, Միության 1790 խոր. մետր միջինի դիմաց։ Չնայած արտադրության այդ ցուցանիշների աճի, կոնստրուկցիաները հիմնականում պատրաստվել են փոքր ձեռնարկություններում։ Մինչդեռ լավ հայտնի է, որ արտադրության համակենտրոնացման դեպքում աննախընթաց չափով բարձրանում է նրա տեխնիկական մակարդակը, կատարելագործվում տեխնոլոգիան ու բարձրանում է հիմնական սարքավորման արտադրողականությունը։

Ներկայումս հավաքովի երկաթ-բետոն արտադրող ձեռնարկություններն իրենց տարեկան արտադրանքով կարելի է բաժանել հետևյալ խմբերի՝

| Ձեռնարկությունների խմբերը ըստ տարեկան արտադրանքի ծավալի (հազ. խոր. մետր) | Ձեռնարկությունների թիվը | Տարեկան արտադրանքը | | |
|---|---|---|---|---|
| | | միջին հաշվով մեկ ձեռնարկությունում (հազ. խոր. մետր) | | ընդհանուրը |
| | | | | տոկոսը |
| 5-ից պակաս | 6 | 2.4 | 14,5 | 2.9 |
| 5—10 | 9 | 7,6 | 69 | 13,8 |
| 10—20 | 5 | 15,5 | 77,5 | 15,5 |
| 20—30 | 1 | 25 | 25 | 5 |
| 30—40 | 2 | 33,5 | 67 | 13,4 |
| 40—50 | 2 | 45 | 90 | 18 |
| 50—ից բարձր | 2 | 78,5 | 157 | 31,4 |
| Ընդամենը՝ | 27 | 18,5 | 500 | 100 |

Այսպիսով, 1964 թվականին արտադրանքի գրեթե 40 տոկոսը թողարկում են այն ձեռնարկությունները, որոնց արտադրության ծավալը տարեկան 30 հազար խորանարդ մետրից պակաս է։ Այս դրությունը հիմնականում հետևանք է այն բանի, որ հավաքովի երկաթ-բետոնի արտադրական բազայի զարգացման առաջին ժամանակաշրջանում յուրաքանչյուր կազմակերպություն ձգտում էր ապահովել իր պոլիգոնի, արտադրամասի կառուցումը։

Ներկայումս ապացուցված է, որ խոշոր ձեռնարկությունները տեխնիկատնտեսական տեսակետից անհամեմատ ավելի խոշոր առավելություն ունեն։ Այսպես, արդյունաբերական շինարարության համար հավաքովի երկաթ-բետոն արտադրող այն գործարանը, որի տարեկան հզորությունը 140 հազար խոր. մետր է, կպահանջի 26 տոկոսով ավելի քիչ կապիտալ ներդրումներ, ինքնարժեքը ցածր կլինի 12 տոկոսով, իսկ արտադրանքը՝ 1,7 անգամ ավելի, քան նույնատիպ այն գործարանինը, որի տարեկան հզորությունը 30 հազար խոր. մետր է։

Ուստի, նպատակահարմար է ռեսպուբլիկայում մեկ ձեռնարկության հզորությունը միջին հաշվով 18,5 հազար խոր. մետրից հասցնել 40—50 հազար խոր. մետրի։ Դրան կարելի է հասնել կենտրոնացված շինարարության հանգույցներում հզոր ձեռնարկություններ կառուցելու միջոցով։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ եթե առաջիկայում կառուցվեն 180—320 հազար խոր. մետր հզորություն ունեցող գործարաններ 30 հազարանոցների փոխարեն, ապա այդ հնարավորություն կտա տնտեսելու 14,5 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ։ Հիշված ձեռնարկությունները շահագործման հանձնելուց հետո ընդհանուր ինքնարժեքը կպակասի 3 միլիոն ռուբլով, հաշվի

առնելով նաև փոխադրական ծախսերի ավելացումը, իսկ մեկ աշխատողի թողարկած արտադրանքը՝ 156 խոր. մետրից կհասնի 270-ի։

Նշված միջոցառումների իրականացումը կպահանջի մոտ 45 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ հնգամյակում, որոնք կհատուցվեն պահանջվող ժամկետներում, պայմաններ կստեղծվեն զգալի չափով ավելացնելու երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիաների արտադրանքը և մեկ միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներում կծախսվի 2625 խոր. մետր երկաթբետոն։

Քանակական ցուցանիշների աճման հետ մեկտեղ անհրաժեշտ է նաև որակական բարեփոխություններ կատարել հավաքովի երկաթ-բետոնի արտադրության ասպարեզում։ Առաջին հերթին պետք է լայնորեն կիրառել նախապես պրկված արմատուրա ունեցող տարածական, երկարավուն և բարակ պատեր ունեցող կոնստրուկցիաների արտադրությունը։ Եթե ամբողջ Միության մեջ 1964 թվականին պրկված արմատուրայով երկաթ-բետոնը կազմի երկաթ-բետոնի ընդհանուր արտադրության 20 տոկոսը, 1963 թվականի 15,3 տոկոսի դիմաց, ապա մեր ռեսպուբլիկայում կարող ենք հասնել ընդամենը 6 տոկոսի։ Ճիշտ է, այդ հարաբերակցությունը կարող է որոշ չափով փոխվել, երբ գործարկվի արդյունաբերական շինարարության համար նախատեսվող 70 հազար խոր. մետր կարողություն ունեցող գործարանը, բայց ակնառու փոփոխություններ տեղի կունենան միայն առաջիկա հնգամյակում։ Հոսքային-կոնվեյերային տեխնոլոգիա ունեցող նոր ձեռնարկությունների կառուցումը հնարավորություն կտա նախապես լարված երկաթ-բետոնի տեսակարար կշիռը 1970 թվականին հասցնելու 30 տոկոսի։

Հավաքովի երկաթ-բետոնի արտադրության բնագավառում տեխնիկական առաջադիմությունն ապահովելու համար անհրաժեշտ է բարձրացնել ցեմենտի հիմնական տեսակների որակը։ Արարատի ցեմենտի գործարանի արտադրանքի միջին որակը պետք է հասցնել 500—550 կգ/սմ²-ի, 1963 թվականի 446-ի դիմաց։ Անհրաժեշտ է նաև ավելացնել արագ պնդացող ցեմենտի թողարկումը։ Այդ կարևոր է հատկապես այն պատճառով, որ առաջիկա տարիներին լայնորեն կզարգանա արագ տեղադրվող կոնստրուկցիաների արտադրությունը։ Արագ պնդացող ցեմենտի կիրառումը մեկ խորանարդ մետր կոնստրուկցիայի գործարանային ինքնարժեքը կիջեցնի 1,5—2,5 ռուբլով, որը հնարավորություն կտա բարձրացնելու կապիտալ ներդրումների արդյունավետությունը։

Երկաթ-բետոնի արտադրության ասպարեզում կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու համար վճռական նշանակություն ունի նաև լցոնների արտադրության կազմակերպումը։ Տնտեսապես անհամեմատ ավելի արդյունավետ է թեթև լցոնների, առաջին հերթին՝ պերլիտի, ինչպես նաև հրաբխային խարամի ու պեմզայի արտադրությունը։ Պետք է նկատի ունենալ, որ Հայկական ՍՍՌ-ի լցոնները կիրառվում են նաև նրա սահմաններից դուրս։ Այսպես, հրաբխային խարամը և պեմզան կարելի է փոխադրել 500—700 կիլոմետր, իսկ պերլիտի հանքատեսակները՝ 1000—1500 կիլոմետր տարածություն։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է առավելագույն չափերով ընդլայնել թեթև լցոնների արտադրությունը մեր ռեսպուբլիկայում։

Լավ կլինի թեթև լցոնների արտադրությունը 1970 թվականին հասցնել 3500 հազար խորանարդ մետրի։ Դրան կարելի է հասնել Կարմրաշենի և Արագածի հանքավայրերը, ինչպես նաև Անի-Պեմզայի և Լուսավանի ջարդող ու տե-



սակավորող ձեռնարկությունները գործարկելու միջոցով։ Հիշված ձեռնարկությունները նախագծելիս հատուկ ուշադրություն պետք է նվիրել թեթև լցոնների ֆրակցիոնացմանն ու սեպարացմանը, քանի որ այժմ այդ բնագավառում եղած թերություններն ավելացնում են ցեմենտի ծախսումը և իջեցնում բետոնի որակը։

Այսպես, ցեմենտի գիտահետազոտական ինստիտուտի հաշվարկները ցույց են տալիս, որ համապատասխան խոշորագույն մոդուլ ունեցող ֆրակցիոնացված լցոնների արտադրությունը հնարավորություն կտա ցեմենտի ծախսումը իջեցնելու 13—15 տոկոսով և զգալիորեն բարձրացնելու բետոնի որակը։

Շինարարության արտադրա-տեխնիկական բազայի ամրապնդման գործում առանձնապես կարևոր նշանակություն ունեն պատերի համար օգտագործվող նյութերը։ Չնայած, որ վերջին 10—15 տարում զգալիորեն կատարելագործվել է շինանյութերի արդյունաբերության արտադրանքի ասորտիմենտը, բարձրացել հավաքովի կոնստրուկցիաների տեսակարար կշիռը, այնուամենայնիվ պատերի նյութերի արտադրությունն էական փոփոխություններ չի կրել այդ ժամանակաշրջանում։ Շինարարության մեջ շարունակվում է «միդիս» (որմնաշարման) ոչ-ինդուստրիալ, տնայնագործական սիստեմը։ Ճիշտ է, ներկայումս Երևանում գործում է 70 հազար քառակուսի մետր բնակարանային տարածություն թողարկելու հզորություն ունեցող խոշոր պանելային տնաշինարարության կոմբինատը (նախատեսվում է նման կարևոր կոմբինատներ գործարկել Հրազդանում, Կիրովականում, յուրաքանչյուրը 35 հազար քառակուսի մետր հզորությամբ), սակայն այն չի օգտագործվում լրիվ հզորությամբ և կառուցվող տները խիստ ցածրորակ են։ Հայկական ՍՍՌ-ում խոշոր պանելային տնաշինարարությունը պետական ընդհանուր բնակարանային շինարարության միայն 14 տոկոսն է կազմում, մինչդեռ Ուկրաինական ՍՍՌ-ում այն անցնում է 26, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 31, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 32, Մոսկվայում՝ 65 տոկոսից։

Խոշոր պանելային տնաշինարարությունը մոտակա ժամանակներում պետք է դառնա ռեսպուբլիկայի մասսայական բնակարանային շինարարության տեխնիկական առաջադիմության գլխավոր ուղղությունը. այդ են ցույց տալիս Միության առաջավոր շինարարական կազմակերպությունների ձեռք բերված նվաճումները։ Բազմաթիվ քաղաքներում խոշոր պանելային տների կառուցման շնորհիվ աշխատանքի ծախսումները նվազել են 35—40 տոկոսով, ժամկետները կրճատվել 1,5—2 անգամ, իսկ ինքնարժեքն իջել է 13—15 տոկոսով։

Մեր ռեսպուբլիկայում խոշոր պանելային տնաշինարարությունն անհրաժեշտ է զարգացնել ավարտուն ցիկլ ունեցող տնաշինարարական կոմբինատներ կազմակերպելու միջոցով, որտեղ աշխատանքները կկատարվեն հիմնականում անընդհատ վիբրացիոն գլանման մեթոդով։ Ինժեներ Ն. Յա. Կոզլովի կոնստրուկցիայի հաստոցներում այդ մեթոդով կարելի է պատրաստել խոշոր պանելային շինարարական դետալներ՝ մինչև 40 քառակուսի մետր մեծության երկաթ-բետոնե պանելներ, ինչպես նաև 20—350 մմ. հաստություն ունեցող պատեր։

Առաջիկա հնգամյակում նախատեսվում է կառուցել ԲՊՍ—6 երկու հաստոն՝ յուրաքանչյուրը 80 հազար քառակուսի մետր բնակելի տարածության ար-

տադրողականությամբ: Դրանք, ինչպես նաև գործարկվող կարողությունները, հնարավորություն կընձեռեն 1970 թվականին խոշոր պանելային շինարարությունը հասցնելու 40 տոկոսի:

Առաջիկա տարիներին շինարարության տեխնիկական բազայի զարգացման հիմնական ուղղություններից մեկը պետք է լինի սինթետիկ նյութերի կիրառումը, դրանցով առաջին հերթին փոխարինելով փայտե դեֆիցիտային նյութերը և կազմակերպելով շենքերի ինչպես ներքին, այնպես էլ արտաքին հարդարման նյութերի արտադրությունը:

Տնտեսական գիտությունների դոկտոր պրոֆեսոր Ս. Ե. Կանտորերի հաշվարկումները ցույց են տալիս, որ սինթետիկ շինանյութերի արտադրության կազմակերպումը հնարավորություն կտա զգալի խնայողության հասնելու համանման այլ նյութերի օգտագործման համեմատությամբ: Այսպես, տարեկան մեկ միլիոն քառակուսի մետր պոլիքլորվինիլի լինոլեում թողարկող ձեռնարկություն կառուցելու համար պահանջվում է 600—700 հազար ռուբլի կապիտալ ներդրում, իսկ մեկ միլիոն քառակուսի մետր պարկետ կամ հատակի տախտակներ արտադրող ձեռնարկություն կառուցելու համար կպահանջվի 2—3 միլիոն ռուբլի: Սինթետիկ նյութերի արտադրությունը բարդ սարքավորում չի պահանջում, հիմնական տեխնիկական պրոցեսները կարելի է հեշտությամբ մեքենայացնել ու ավտոմատացնել, իսկ այդ հնարավորություն կտա զգալիորեն բարձրացնելու բանվորների աշխատանքի արտադրողականությունը:

Հաշվի առնելով սինթետիկ շինանյութերի տեխնիկական բարձր հատկությունները, ինչպես նաև մեր բուռն զարգացող քիմիական արդյունաբերությունը, անհրաժեշտ է 1967—1968 թվականների ընթացքում ռեսպուբլիկայում կառուցել պլաստմասսաների շինանյութեր արտադրող կոմբինատ: Հաշվարկումները ցույց են տալիս, որ այդպիսի գործարանի կառուցումը կնստի 1,7 միլիոն ռուբլի, բայց այն տարեկան կտա 2,5 միլիոն քառակուսի մետր պոլիքլորվինիլի լինոլեում, 4,5 միլ. գծամետր այլ շինվածքներ, 30 հազար քառակուսի մետր պենոպոլիստիրոլ և 55 հազար քառակուսի մետր պատուհանի շրջանակներ: Մենք հնարավորություն կունենանք արդեն 1970 թվականին պոլիմերային հատակների տեսակարար կշիռը հասցնելու 50—60 տոկոսի: Այդ զգալի չափով կբարձրացնի կապիտալ ներդրումների արդյունավետությունը:

Շինանյութերի արդյունաբերության զարգացման հետ մեկտեղ հարկավոր է մեծ ուշադրություն նվիրել շինարարական ինդուստրիային՝ աշխատանքի ֆոնդազինվածությունն էլ ավելի բարձրացնելու նպատակով: Անհրաժեշտ է հետագայում մեծ չափով բարձրացնել շինարարության մեքենայացման տեխնիկական մակարդակը, ինչպես նաև մեքենաների կիրառման գործակիցը, քանի որ դրանք են աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և ժամկետների կրճատման հիմնական աղբյուրները շինարարության մեջ:

Վերջին տարիներս մեր ռեսպուբլիկայում զգալի չափով մեծացել է շինարարական մեքենաների թիվը, ստացվել են նորագույն մեքենաներ: Այդ մասին է վկայում 1960—1964 թվականների ժամանակաշրջանում հիմնական շինարարական մեքենաների աճման դինամիկան ցույց տվող մեր բերած աղյուսակը:



| Մեքենաների անվանումը | Մեքենաների քանակը տարվա սկզբին | |
|---|---|---|
| | 1960 | 1964 |
| Էքսկավատորներ | 206 | 408 |
| Սկրեպերներ | 26 | 49 |
| Բուլդոզերներ | 166 | 388 |
| Աշտարակային կռունկներ | 138 | 352 |
| Ինքնագնաց կռունկներ | 103 | 296 |
| Ինքնաբեռնիչ մեքենաներ | 39 | 54 |
| Ավտոգրեյդերներ | 41 | 64 |

Այդ հնարավորություն տվեց 1963 թվականին հողային աշխատանքները կոմպլեքսային մեքենայացման ենթարկել 70,2 տոկոսով, կոնստրուկցիաների մոնտաժը՝ 88,3, բետոնի պատրաստումը՝ 60,2, ավազի ու խճաքարի արդյունահանումն ու մշակումը՝ 83,6 տոկոսով:

Սակայն ձեռք բերված ցուցանիշները դեռևս ետ են մնում միութենական միջինից և մի շարք այլ ռեսպուբլիկաների ցուցանիշներից: Կատարված վերլուծությունները ցույց են տալիս, որ դրա հիմնական պատճառը մեքենաների անբավարար օգտագործումն է: Իսկ այդ (եթե նկատի չառնենք կազմակերպական գործոնները) մեքենաների ոչ ճիշտ շահագործման և չնորոգելու հետևանք է:

Մեքենաների փաստական պարապուրդները նորոգման ժամանակ և կատարված ծախսերը հաճախ գերազանցում են պլանով նախատեսված չափերը: Այսպես, բազմաթիվ շինարարական կազմակերպություններում կապիտալ նորոգման արժեքը կազմում է նոր մեքենայի արժեքի 70—80 տոկոսը: Ռեսպուբլիկայի նորոգման բազան չի կարող ապահովել բոլոր մեքենաների ժամանակին ու բարձրորակ նորոգումը: Այդ բազան կարող է բավարարել նորոգման միայն 30—35 տոկոսը:

1965—1966 թթ. ժողովրդատնտեսական պլանի համաձայն Գագարինո ավանում պետք է կառուցվի էքսկավատորներ և կռունկներ նորոգող հատուկ գործարան՝ տարեկան 3 միլիոն ռուբլի հզորությամբ: Այդ գործարանի կարողությունները կգործարկվեն 1966 թվականին: Նորոգող ձեռնարկությունների հզորությունը 1966 թվականին կկազմի ընդամենը 2,7 միլիոն ռուբլի, մինչդեռ նույն թվականի կապիտալ ու միջին նորոգման պահանջը կհասնի 5, իսկ 1970 թվականին՝ 8,8 միլիոն ռուբլու:

Վերոհիշյալ տվյալներն ակնառու վկայում են, որ առաջիկա հնգամյակում ռեսպուբլիկան կարիք ունի շինարարական մեքենաների նորոգման հատուկ ձեռնարկությունների լայն ցանցի: Այդպիսի ձեռնարկությունները, ինչպես նաև մեքենայացման բազաները կենտրոնացված շինարարության հանգույցներում եղած նորոգման մեխանիկական արհեստանոցների հետ մեկտեղ պետք է ունենան 8,4 միլիոն ռուբլու ընդհանուր հզորություն: Այդ միջոցառումների իրականացման համար կպահանջվեն 5,5 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ, որոնք, նախնական հաշվարկումների համաձայն, կփոխհատուցվեն 2,5—3 տարվա ընթացքում:

Նորոգման բազայի ստեղծման նպատակով արված կապիտալ ներդրումները հնարավորություն կտան ո՛չ միայն բարձրացնելու եղած մեքենաների օգ-

տագործման արդյունավետությունը, այլև կրճատելու նոր մեքենաների պահանջը։ Հնգամյակի ընթացքում հնարավորություն կունենանք շինարարության մեխանիկական զինվածության ցուցանիշը պահպանելու հասած մակարդակի վրա, հաշվի առնելով փոխադրամիջոցները, որի համար 1966—1970 թվականներին անհրաժեշտ կլինեն 45 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Առաջիկա տարիներում նախատեսված ծավալուն շինարարական աշխատանքների պլանների կատարման համար անհրաժեշտ է, որ ռեսպուբլիկայի համապատասխան կազմակերպությունները ավելի մեծ ուշադրություն նվիրեն շինարարության արտադրա-տեխնիկական բազայի զարգացմանը։

Հ. Կարապետյան, Ս. Տեր-Խաչատրյան

---

Սովետական Միությունում այս տարվա ինն ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, չուգունի ձուլումն ավելացել է 2,6 միլիոն, պողպատինը՝ 3,5 միլիոն, նավթի արդյունահանումը՝ 13,4 միլիոն, քարածխինը՝ 16,5 միլիոն տոննայով, գործվածքեղենի թողարկումը ավելացել է 281 միլիոն քառակուսի մետրով, կաշվե կոշկեղենինը՝ 8,6 միլիոն զույգով, շաքարի արտադրությունը՝ 852 հազար, անարատ կաթնամթերքներինը՝ 393 հազար, պանրինը՝ 24 հազար, յուղինը՝ 15 հազար, ձկանն ու ձկնեղենինը՝ 360 հազար տոննայով:

Նույն ժամանակամիջոցում երկրում էլեկտրաէներգիայի արտադրությունն աճել է 12 տոկոսով, մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը՝ 10 տոկոսով:

---

# ԱՇԽԱՏՈՒԺԻ ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Սովետական Հայաստանի արդյունաբերության կարևոր ճյուղերից մեկը թեթև արդյունաբերությունն է. իր թողարկած համախառն արտադրանքով ռեսպուբլիկայում այն գրավում է երրորդ տեղը, զիջելով միայն սննդի արդյունաբերությանը, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը։ Ներկայումս թեթև արդյունաբերությունը թողարկում է ՀՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 26 տոկոսը, զբաղեցնելով արդյունաբերական արտադրական անձնակազմի 31,8 տոկոսը։ Իր թողարկած տեքստիլ, տրիկոտաժի, մուշտակի և արտադրանքի այլ տեսակներով, այն բավարարում է ո՛չ միայն ՀՍՍՌ-ի, այլև Անդրկովկասի, որոշ չափով էլ միութենական այլ ռեսպուբլիկաների բնակչության պահանջները։

Վերջին տարիներս տեղի ունեցած որակական տեղաշարժերի շնորհիվ զգալի չափով բարելավվել է այդ ճյուղում թողարկվող արտադրանքի որակը, ավելի համապատասխան դառնալով բնակչության անընդհատ զարգացող ճաշակին։

ՀՍՍՌ թեթև արդյունաբերության մեջ որակական ու քանակական դրական փոփոխությունների խթաններից մեկը արտադրության այդ ճյուղում աշխատանքի ու արտադրության կազմակերպման բարելավումն է ընդհանրապես, նրա համակենտրոնացման աստիճանի բարձրացումը՝ մասնավորապես։

Թեթև արդյունաբերության այն ձեռնարկությունները, որոնք ենթակա են տեղական սովետներին, ինչպես նաև արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունները, հանձնվեցին ժողտնտխորհի տնօրինությանը։ Դրանք մանր ձեռնարկություններ էին, թույլ տեխնիկա-տնտեսական բազայով և արտադրության կազմակերպման ցածր մակարդակով։ Այդպիսի ցածր արտադրողական ձեռնարկությունների միավորմամբ բարելավվեցին դրանց տնտեսական ցուցանիշները։ Չնայած դրանով զգալի չափով իջավ թեթև արդյունաբերության ձեռնարկությունների թիվը, բայց 16,5 տոկոսով մեծացավ արդյունաբերական արտադրական անձնակազմը։

Բուռն տեմպերով զարգացող թեթև արդյունաբերությունը, բավարարելով բնակչության սպառման առարկաների անընդհատ աճող պահանջմունքները, միաժամանակ ապահովում է նաև աշխատուժի և, հատկապես կանանց աշխատուժի առավել ռացիոնալ ու արդյունավետ զբաղվածություն։ Ռեսպուբլիկայում արդյունաբերության զարգացման հետ մեկտեղ, աշխատուժի ռացիո-

նալ օգտագործման ասպարեզում թույլ է տրվել որոշ միակողմանիություն։ Արդյունաբերության նոր բարձրացող մի շարք հանգույցներում, ուր հիմնականում ընդգրկված է տղամարդու աշխատանքը, չեն ստեղծվել արտադրության այնպիսի ճյուղեր (ինչպես և թեթև արդյունաբերության ճյուղեր), որոնք արտադրության մեջ լայնորեն ներգրավեին նաև կանանցի աշխատուժը։ Բացի դրանից թեթև արդյունաբերությունը, արտադրության այլ ճյուղերի հետ համեմատած, ավելի աշխատատար է, կարող է բարձրացնել զբաղվածությունը։ Արտադրության այս, ինչպես և այլ ճյուղերի զարգացման հարցերը լուծելիս պետք է ջանալ կատարել պարտիայի կարևորագույն պահանջը՝ առավել քիչ կապիտալ ներդրումներով ավելի ռացիոնալ օգտագործել աշխատանքային և նյութական ռեսուրսները։ Թեթև արդյունաբերությունն արտադրության այն ճյուղն է, ուր ավելի քիչ կապիտալ ներդրումներով ապահովվում է մեծ զբաղվածություն։ Ուստի, արտադրության այս ճյուղի զարգացման հարցերը վճռելիս արտադրության մեքենայացման աստիճանի, նրա կազմակերպման բարելավման և բազմաթիվ այլ խնդիրների հետ մեկտեղ պետք է նկատի ունենալ աշխատուժի և, մասնավորապես, կանանցի աշխատուժի զբաղվածությունը։

Առաջիկայում զգալի չափով կավելանա սպառման առարկաների արտադրությունը։ Այդ խնդիրը կարելի է կատարել ինչպես նոր գործող ձեռնարկությունների, այնպես էլ թեթև արդյունաբերության ձեռնարկությունների վերակառուցման միջոցով։ Հայկական ՍՍՌ-ում 1964—1965 թվականներին նախատեսվում է արտադրանքն ավելացնել միջին հաշվով 8 տոկոսով։ Նախատեսվում է վերակառուցել Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկան ու մասնագիտացնել այն մետաքսյա տրիկոտաժի սպիտակեղեն արտադրելու ուղղությամբ։ Վերակառուցման շնորհիվ Երևանի մետաքսի կոմբինատի կարողությունը կավելանա 1000 հաստոցով, Լենինականի մանվածքային ֆաբրիկայինը՝ 60 հազար իլիկներով։ Վերակառուցվող ձեռնարկությունների հետ մեկտեղ կկառուցվեն նոր ձեռնարկություններ ու ցեխեր։ Նուրբ բրդյա գործվածքների կոմբինատին կից նախատեսվում է կառուցել մանվածքային ֆաբրիկա. Երևանում կկառուցվի մոդելային կոշիկի ֆաբրիկա, տարեկան մեկ միլիոն զույգ կոշիկի արտադրությամբ։

Մի շարք տարիների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ թեթև արդյունաբերության մեջ արտադրանքը հիմնականում աճել է բանվորների թվի ավելացման հաշվին։ Առկա ձեռնարկությունների վերակառուցմամբ և նորերի ստեղծմամբ, նորագույն տեխնիկայի արմատավորմամբ և քիմիական նոր նյութերի օգտագործման շնորհիվ արտադրանքը հիմնականում կավելանա աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը զուգընթաց արտադրության մեջ կընդգրկվեն նոր աշխատող ձեռքեր։

ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումների կենսագործման շնորհիվ մոտիկ ժամանակներում թեթև արդյունաբերությունը կապահովվի տեղական հումքով։ Այժմ ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության մեջ մետաքսյա գործվածքների զգալի մասը քիմիական նյութերից է, բրդի արդյունաբերության մեջ, բրդի հետ միասին օգտագործվում է 35—40 տոկոս քիմիական թել, տրիկոտաժի արդյունաբերության մեջ մետաքսյա սպիտակեղենի համար օգտագործվող թելի 35—40 տոկոսը քիմիական է։ Քիմիական թելի օգտագործման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը



տրիկոտաժի արդյունաբերության մեջ 1963 թվականի համեմատ, 1964 թվականին կբարձրանա 40, 1965 թվականին՝ 55 տոկոսով։

Ինչպես արդեն նշված է, թեթև արդյունաբերության զարգացմամբ ոչ միայն կավելանա ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, այլև գյուղում ու քաղաքում ավելի շատ աշխատունակ ձեռքեր կընդգրկվեն հասարակական արտադրության մեջ։ Այս տեսակետից թեթև արդյունաբերության ձեռնարկություններն արտադրության որոշ ճյուղերի համեմատ ունեն այն առավելությունը, որ դրանք կարող են տեղաբաշխվել ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում։ Ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում թեթև արդյունաբերության ձեռնարկություններ կան, բայց և այնպես դրանց գերակշռող մասը տեղաբաշխված է մեծ քաղաքներում։ Երևանում է գտնվում ձեռնարկությունների 40 տոկոսը, ուր աշխատում է արդյունաբերական արտադրական անձնակազմի 48,3 տոկոսը։ Լենինականում է կենտրոնացված ձեռնարկությունների 11,7 տոկոսը՝ արդյունաբերական-արտադրական անձնակազմի 27,8 տոկոսով։ Թեթև արդյունաբերությունը կարող է զբաղեցնել կանանցի ազատ աշխատող ձեռքեր, որոնք, համեմատաբար, զգալի տեսակարար կշիռ են կազմում այն շրջաններում, ուր ծանր արդյունաբերությունը նոր է զարգանում։

Ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս, որ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մեջ կանանց տեսակարար կշիռը բավականին բարձր է։

ՀՍՍՌ թեթև արդյունաբերության արդյունաբերական արտադրական անձնակազմի և բանվորների թվում կանանց տեսակարար կշիռը

| | կանանց տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրական անձնակազմում | կանանց տեսակարար կշիռը բանվորների թվում |
|---|---|---|
| Թեթև արդյունաբերություն | 66,7 | 35,6 |
| Այդ թվում՝ | | |
| տեքստիլ արդյունաբերություն | 73,4 | 75,6 |
| տրիկոտաժի արդյունաբերություն | 74,9 | 76,0 |
| կարի արդյունաբերություն | 72,1 | 72,4 |
| կաշվի, կոշիկի և մուշտակի արդյունաբերություն | 35,3 | 35,6 |

Թեթև արդյունաբերության մյուս ճյուղերի համեմատ կաշվի, կոշիկի և մուշտակի ճյուղում կանանց տեսակարար կշիռը համեմատաբար ցածր է. այդ հետևանք է կանանց աշխատանքի համար անբարենպաստ պայմանների։

Ե՛վ քաղաքում, և՛ գյուղում թեթև արդյունաբերության ձեռնարկությունների ճիշտ տեղաբաշխումը ռեալ պայմաններ կստեղծի տնային տնտեսության մեջ զբաղված կանանց նյութական արտադրության մեջ ներգրավելու համար։

Կանանց նյութական արտադրության մեջ ներգրավելու գործում չափազանց մեծ նշանակություն ունեն նրանց համար աշխատանքային կուլտուրկենցաղային պայմանների բարելավումը, բավարար չափով մանկամսուրների, մանկապարտեզների, հասարակական ճաշարանների և հասարակական այլ հիմնարկությունների ցանցի ստեղծումը։

Ռեսպուբլիկայի ժողտնտխորհի սիստեմի մեջ մտնող թեթև արդյունաբերության առանձին ձեռնարկություններ ունեն մանկական հիմնարկների լայն

ցանց։ Այսպես՝ Լենինականի տեքստիլ կոմբինատում աշխատող յուրաքանչյուր 12 կնոջ մանկական ձեռնարկություններում ընկնում է մեկ տեղ, Կ. Ցետկինի անվան կարի ֆաբրիկայում 6 կնոջը՝ 1, նուրբ բրդյա գործվածքների կոմբինատում 18 կնոջը՝ մեկ տեղ և այլն։ Սակայն տեքստիլ արդյունաբերության մնացած ձեռնարկություններում այդպես չէ։ Աշխատող կանանց երեխաներին մանկական հիմնարկներն ընդգրկելու նպատակով անհրաժեշտ է ընդլայնել դրանց գերատեսչական ցանցը։ Այդ հնարավորություն կտա ո՛չ միայն բարելավելու աշխատող կանանց պայմանները, այլև արդյունաբերության մեջ ընդգրկելու նոր աշխատող ձեռքեր։ Տեքստիլ արդյունաբերության մեջ, ուր աշխատանքային ռեժիմը եռհերթ է, և կանայք մեծ տեսակարար կշիռ են կազմում, անհրաժեշտ է ստեղծել ամբողջօրյա մանկական հիմնարկներ։

Ինչպես նշեցինք, Հայաստանում նյութական արտադրության ոլորտում զբաղվածների $^{1}/_{3}$-ը ընդգրկված է թեթև արդյունաբերության մեջ, բայց պետք է նկատի ունենալ, որ թեթև արդյունաբերության ենթաճյուղերում աշխատուժը հիմնականում ընդգրկված է տեքստիլ արդյունաբերության մեջ։ Ներքոհիշյալ աղյուսակում բերվում է ՀՍՍՌ թեթև արդյունաբերության արդյունաբերական արտադրական անձնակազմի և բանվորների տեսակարար կշիռը՝ ըստ ենթաճյուղերի։

| | Արդյունաբերական արտադրական անձնակազմ | Բանվորներ |
|---|---|---|
| Թեթև արդյունաբերություն | 100 | 100 |
| Այդ թվում՝ | | |
| տեքստիլ արդյունաբերություն | 62,5 | 62,1 |
| կարի արդյունաբերություն | 19,9 | 19,3 |
| կաշվի, կոշիկի և մուշտակի արդյունաբերություն | 17,1 | 16,0 |
| և այլն | 00,5 | 2,6 |

Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների եռհերթ աշխատանքը անդրադառնում է բանվորների, հետևապես և արտադրական կարողությունների ռացիոնալ օգտագործման վրա, առաջին հերթին հենց այն պատճառով, որ գիշերային հերթափոխությունում շատ կանայք չեն կարողանում աշխատանքի ներկայանալ։ Բայց այդ չի նշանակում, որ նպատակահարմար չէ եռհերթ աշխատանքը։ Արդյունաբերության մեջ աշխատանքի այդ ձևով կազմակերպումը ոչ միայն բխում է արտադրական կարողությունների ռացիոնալ օգտագործման շահերից, այլև թելադրվում է արտադրության բնույթով, տեխնոլոգիական պրոցեսների անընդհատությամբ։

Նկատի ունենալով այս հանգամանքը, վերջին ժամանակներս կիրառվում են աշխատանքի և արտադրության կազմակերպման նոր, ավելի արդյունավետ ձևեր. աշխատաժամանակը լավ օգտագործելու շնորհիվ խիստ կրճատվում են գիշերային հերթափոխությունները։

Սովորական եռհերթ գրաֆիկով յուրաքանչյուր բանվոր միջին հաշվով աշխատելու է ամիսը 9 գիշերային հերթափոխ։ Ըստ այդ գրաֆիկի բանվորուհին հարկադրված է 6 հերթափոխություն անընդհատ աշխատել գիշերը։



Նոր մշակված աշխատանքային գրաֆիկի համաձայն, գիշերային հերթափոխությունները խիստ կրճատվել են և մեկ բանվորի հաշվով կազմում են ամսական 2 հերթափոխ, այսինքն՝ յուրաքանչյուր հերթափոխությունում՝ ամեն 14 օրից հետո։ Նոր գրաֆիկը հնից տարբերվում է նրանով, որ անընդհատ է՝ շաբաթվա մեջ ունի ոչ միտական երկու հանգստյան օր։ Ցերեկային և երեկոյան հերթափոխություններում աշխատօրվա տևողությունը 8 ժամ է, իսկ գիշերայինը՝ 7։ Այս գրաֆիկի առավելությունն այն է, որ հնարավորություն է ընձեռում զգալի չափով ավելացնելու սարքավորումների օգտագործման գործակիցը և, հետևաբար՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։ Նոր գրաֆիկով են աշխատում Հայաստանի տեքստիլ արդյունաբերության շատ ձեռնարկություններ։ Այդ ռեժիմին է անցել Լենինականի տեքստիլ կոմբինատը, որի շնորհիվ 1963 թվականին աշխատանքի արտադրողականությունը 1962 թվականի համեմատ, բարձրացել է 13,3, սարքավորումների արտադրողականությունը՝ 11, միջին աշխատավարձը՝ 8 տոկոսով։ Եթե 1962 թվականին աշխատանքի չի ներկայացել կոմբինատի բանվորների 20—22 տոկոսը, ապա 1963 թվականին՝ 13—14 տոկոսը։ Հերթափոխության գործակիցը 1962 թվականին կազմել է 2,78, իսկ 1963 թվականին՝ 2,85։ Ինչպես ցույց են տալիս բերված տվյալները, նոր գրաֆիկի արմատավորմամբ զգալի չափով բարձրացել է աշխատուժի և սարքավորման օգտագործման ցուցանիշը։ Հայաստանի տեքստիլ արդյունաբերության մյուս ձեռնարկություններում ևս մշակում են կազմակերպական միջոցառումներ անընդհատ գրաֆիկի անցնելու նպատակով։

Աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործումը Հայաստանի թեթև արդյունաբերության ներարտադրական կարևոր ռեզերվներից մեկն է։ Աշխատաժամանակի կորուստների մեջ դեռևս բավականին մեծ տոկոս են կազմում ամբողջօրյա պարապուրդները։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ բանվորները մեծ մասամբ աշխատանքի չեն ներկայանում հիվանդության պատճառով։ Կանայք աշխատանքից բացակայում են նաև մանկապարտեզների ու մանկամսուրների, գիշերային հերթափոխի, աշխատանքային անբարենպաստ պայմանների հետևանքով։ Ի դեպ, հիվանդությունների պատճառով բացակայությունները վերջին տարիներս նվազել են։

Աշխատանքի չներկայանալու գլխավոր պատճառներից մեկը բացակայություններն են՝ վարչա-կառավարչական ապարատի թույլտվությամբ։ ՀՍՍՌ թեթև արդյունաբերության մեջ այդ պատճառով տեղի ունեցած բացակայություններն ընդհանուր պարապուրդների մեջ կազմել են 1962 թվականին՝ 19,8, 1963-ին՝ 19,2 տոկոս։ Այդպիսի բացակայությունները, ինչպես և ինքնակամ բացակայությունները բացասաբար են անդրադառնում ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վրա։

Աշխատուժի օգտագործման մակարդակի վրա ազդում են նաև հոսունության մեծ տոկոսը և հերթափոխության ցածր գործակիցը արդյունաբերական ձեռնարկություններում։

Անհրաժեշտ է նշել, որ Սովետական Միության արդյունաբերական ձեռնարկություններում արտադրանքի ավելացման կարևոր գործոններից են՝ հերթափոխության գործակցի բարձրացումը և սարքավորումների առավել լրիվ օգտագործումը։ ՀՍՍՌ թեթև արդյունաբերության մեջ, ամբողջությամբ վերցրած հերթափոխության գործակիցը վերջին տարիների ընթացքում բավա-

կանին կայուն մեծություն է. այն հավասար է 1,8-ի։ Բանվորների զգալի մասը՝ 62,2 տոկոսը, կենտրոնացված է այն ձեռնարկություններում, որոնք պետք է աշխատեն երեք հերթափոխով։ Այդ արդեն ցույց է տալիս, որ թեթև արդյունաբերության գծով (ամբողջությամբ վերցրած) փաստացի հերթափոխության գործակիցը, որ հավասար է 1,8-ի, խիստ ցածր է։ Հերթափոխության գործակիցը բարձրացնելու միջոցով կարելի է մեծացնել ձեռնարկությունների արտադրական կարողությունները և, դրանով իսկ, արտադրության այդ ճյուղում ներգրավել լրացուցիչ աշխատուժ՝ առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների։

Հայկական ՍՍՌ թեթև արդյունաբերության մեջ դեռևս մեծ է աշխատուժի հոսունությունը, որը միջին հաշվով հասնում է 22 տոկոսի։ Այդ բացատրվում է նրանով, որ այստեղ միջին աշխատավարձը, արտադրության այլ ճյուղերի համեմատությամբ, ցածր է. ինչպես հայտնի է, թեթև արդյունաբերության ճյուղային կառուցվածքում մեծ տեսակարար կշիռ է կազմում տեքստիլ արդյունաբերությունը, ուր գերիշխում է կանացի աշխատուժը։ Դրա հետ միասին տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները հին գրաֆիկի համաձայն ռոհերթ են աշխատում։

ՀՍՍՌ թեթև արդյունաբերության արագաթափ զարգացման համար անհրաժեշտ է.

1. ընդլայնել արտադրության տեխնիկական բազան, արմատավորել նոր տեխնիկան ու տեխնոլոգիան այն հաշվով, որ լայնորեն կիրառվեն քիմիական նյութերը.

2. առավել ռացիոնալ տեղաբաշխել արտադրությունը քաղաքում ու գյուղական վայրերում, նկատի առնելով կանացի աշխատուժը նյութական արտադրության ոլորտում ընդգրկելու հարցը.

3. կատարելագործել աշխատանքի արտադրության կազմակերպումը՝ առկա աշխատուժի և տեխնիկայի առավել ռացիոնալ օգտագործումն ապահովելու նպատակով.

4. ստեղծել գերատեսչական բնույթի մանկապարտեզների և մանկամսուրների լայն ցանց, բարելավել աշխատողների աշխատանքային պայմանները. լավ կազմակերպել նրանց հանգիստը։

ԹԱՄԱՐԱ ՏԵԼԵԳԱՆՈՎԱ
ՀՍՍՌ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի
ավագ տնտեսագետ

# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

## ՆՐԳԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԲՆՈՒՅԹԸ

Սովետական ժողովրդի ռևոլյուցիոն մեծագույն սխրագործությունն ալեկոծեց ու ոգեշնչեց բոլոր երկրների և մայր ցամաքների ժողովրդական մասսաներին։ Աշխարհի վրայով անցնում է մաքրող մի մեծ ամպրոպ, եշանավորելով մարդկության գարունը։

ՍՄԿԿ ԾՐԱԳԻՐ

Վ. Ի. Լենինը մատնանշում էր դարաշրջանի բնույթը ճիշտ ըմբռնելու և անորոշելու անհրաժեշտությունը՝ պարտիայի գիտականորեն հիմնավորված քաղաքականություն մշակելու համար։ Ընդ որում նա առաջնակարգ նշանակություն էր տալիս այն բանը պարզելուն, թե «որ դասակարգի շարժումն է հանդիսանում հնարավոր պրոգրեսի գլխավոր զսպանակը այդ կոնկրետ իրադրության մեջ» (Երկեր, հատ. 21, էջ 169)։

«...մեր աչքի առաջ տեղի ունեցող մեծագույն կարևորության պատմական իրադարձությունները կարող են հասկացվել միայն, առաջին հերթին, մեկ դարաշրջանից մյուսի անցման օբյեկտիվ պայմանների վերլուծության դեպքում, խոսքը վերաբերում է պատմական մեծ դարաշրջաններին. ամեն մի դարաշրջանում լինում են և կլինեն առանձին, մասնակի շարժումներ մերթ դեպի առաջ, մերթ դեպի ետ, լինում են և կլինեն զանազան շեղումներ միջին տիպի և միջին տեմպի շարժումներից։

Մենք չենք կարող իմանալ, թե ինչպիսի արագությամբ և ինչպիսի հաջողությամբ կզարգանան տվյալ դարաշրջանի առանձին պատմական շարժումները։ Բայց մենք կարող ենք իմանալ և մենք գիտենք, թե որ դասակարգն է կանգնած այս կամ այն դարաշրջանի կենտրոնում, որոշելով այդ դարաշրջանի գլխավոր բովանդակությունը, նրա զարգացման գլխավոր ուղղությունը, տվյալ դարաշրջանի պատմական իրադրության գլխավոր առանձնահատկությունները և այլն։ Միայն այս հիման վրա, այսինքն՝ հաշվի առնելով առաջին հերթին զանազան «դարաշրջանների» տարբերության (և ոչ թե առանձին երկրների պատմության առանձին միջադեպերի) հիմնական գծերը, մենք կարող ենք ճիշտ կառուցել մեր տակտիկան. և միայն տվյալ դարաշրջանի հիմնական գծերն իմանալը կարող է հիմք ծառայել հաշվի առնելու այս կամ այն երկրի ավելի մանրակրկիտ առանձնահատկությունները» (Երկեր, հատ. 21, էջ 171—172)։

Բնութագրելով Մեծ հոկտեմբերի հաղթանակից հետո սկսված ժամանակը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կո-

մունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (Երկեր, հատ. 31, էջ 491)։

Լենինյան ցուցումները դրվել են արդի դարաշրջանի այն բնութագրության հիմքում, որ պատմական փորձի հաշվառումով տրված են միջազգային կոմունիստական շարժման՝ կոլեկտիվ կերպով մշակված փաստաթղթերում՝ 1957 թվականի Դեկլարացիայում և 1960 թվականի Հայտարարությունում։ Այդ փաստաթղթերում ընդգծվում է, որ արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, մի անցում, որ սկսվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայով։ «Իմպերիալիզմի ոչ մի ճիգ չի կարող կանգնեցնել պատմության առաջընթաց զարգացումը,— նշվում է 1960 թվականի կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարության մեջ։—Ամուր նախադրյալներ են ստեղծվել սոցիալիզմի հետագա վճռական հաղթանակների համար։ Սոցիալիզմի լիակատար հաղթանակը անխուսափելի է»։

Մեր ժամանակի բնույթի լենինյան բնորոշումը իր հետագա զարգացումն ստացավ պարտիայի XXII համագումարի փաստաթղթերում և որոշումներում։ ՍՄԿՊ ծրագրում ասված է. «Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական և ազգային ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, նորանոր ժողովուրդների՝ սոցիալիզմի ուղին անցնելու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը»։

### ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆԸ

Ժամանակակից աշխարհում գոյություն ունեն խոր ու սուր հակասություններ։ Աշխատանքի և կապիտալի հակամարտությունը, հակասությունները ժողովուրդների և մոնոպոլիաների միջև, աճող միլիտարիզմը, գաղութային սիստեմի անկումը, հակասությունները իմպերիալիստական երկրների միջև, երիտասարդ ազգային պետությունների և հին գաղութատիրական տերությունների միջև և, ամենագլխավորը, համաշխարհային սոցիալիզմի ուժերի արընթաց աճը խարխլում, խորտակում են իմպերիալիզմը, տանում դեպի նրա թուլացումն ու կործանումը։ Մեր դարաշրջանի համար որոշիչ գլխավոր հակասությունը սոցիալիզմի և իմպերիալիզմի միջև եղած հակասությունն է։

«...ժողովուրդների փոխադարձ հարաբերությունները, պետությունների ամբողջ համաշխարհային սիստեմը,— ասում էր Վ. Ի. Լենինը,— որոշվում է իմպերիալիստական ազգերի փոքրաթիվ խմբի պայքարով ընդդեմ սովետական շարժման ու սովետական պետությունների, որոնց գլխավորում է Սովետական Ռուսաստանը։ Եթե դա մենք աչքաթող անենք, ապա չենք կարող ոչ մի ազգային կամ գաղութային հարց ճիշտ դնել, եթե անգամ խոսքը վերաբերեր աշխարհի ամենահեռավոր անկյունին։ Այդ տեսակետից ելնելով միայն, կոմունիստական պարտիաները կարող են ճիշտ դնել ու լուծել քաղաքական հարցերը ինչպես քաղաքակրթված, այնպես էլ հետամնաց երկրներում» (Երկեր, հատ. 31, էջ 290)։



Վ. Ի. Լենինն այդ հետևությունն արել է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի առաջին տարիներին։ Այդ հետևությունն առավել ևս ճիշտ է այժմ, երբ անչափ աճել են Սովետական Միության ուժերը, երբ սոցիալիզմը դարձել է համաշխարհային հզոր սիստեմ։ «Մեր ժամանակում միջազգային հարաբերությունների զարգացումը,— նշեցին կոմունիստական և բանվորական պարտիաների 1960 թվականի Մոսկվայի խորհրդակցության մասնակիցները,— բնորոշվում է երկու հասարակական սիստեմների պայքարով, սոցիալիզմի, խաղաղության և դեմոկրատիայի ուժերի պայքարով ընդդեմ իմպերիալիզմի, ռեակցիայի և ագրեսիայի, այն պայքարով «որի մեջ սոցիալիզմի, խաղաղության և դեմոկրատիայի ուժերի գերակշռությունն ավելի ու ավելի ակնբախ է դառնում»։

«Այս դարաշրջանում, որում մեզ բախտ է վիճակվել ապրել, աշխատել ու պայքարել, երբ սոցիալիզմի լագերի նվաճած մեծ գործերի հիման վրա զգացվում է մարդկության կոմունիստական ապագան,— ասում է Իսպանիայի կոմունիստական պարտիայի նախագահ Դոլորես Իբարուրին,— մեր կողմում, ժողովուրդների սոցիալական և տնտեսական պրոգրեսի համար պայքարող բոլոր ուժերի կողմում են պանծալի Սովետական երկիրը և ամբողջ սոցիալիստական լագերը, որոնք արդի հասարակության մեծ ուժն են։

Եվ, եթե դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար պայքարի զարգացման հարցի վերաբերյալ որոշակի կարծիք կամ որևէ թեզ մշակելիս մեր քաղաքական գծում մենք հաշվի չառնենք այդ վճռական գործոնը, ապա մեր ամեն մի դատողություն, թեզ կամ կարծիք սոսկ մի բծախնդիր մտքում կամ դատարկ ու անմիտ ենթադրություն կլինի, զուրկ իրական լինելուց և կենսունակությունից»։

### ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԴԻՐՔԵՐԻ ԹՈՒԼԱՑՈՒՄԸ

Իմպերիալիզմը անդառնալիորեն կորցրել է տիրապետությունը մարդկության մեծամասնության նկատմամբ։ 1919 թվականին սոցիալիստական աշխարհին բաժին էր ընկնում երկրագնդի բնակչության ընդամենը 7,8 տոկոսը, իսկ խոշոր իմպերիալիստական տերություններին ու նրանց գաղութներին՝ 48,1 տոկոսը։

1964 թվականի սկզբին սոցիալիստական աշխարհի բնակչությունն արդեն կազմում է 35,6 տոկոս, իսկ խոշոր իմպերիալիստական տերությունների ու նրանց գաղութների բնակչությունը՝ 16,2 տոկոս։ Նույն ժամանակում անկախություն ձեռք բերած նախկին գաղութային ու կիսագաղութային երկրների բնակչության բաժինը հասավ 42,6 տոկոսի։ Այսպիսով, այժմ մարդկության զարգացման գլխավոր բովանդակությունը և գլխավոր առանձնահատկությունները որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը՝ իմպերիալիզմի ու գաղութատիրության դեմ պայքարող ուժերը։

Առաջին համաշխարհային պատերազմի և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ժամանակներից ի վեր սկսվել է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը։ Դրա նոր էտապը ծավալվեց երկրորդ համաշխարհային պատերազմի և Ասիայի ու Եվրոպայի մի շարք երկրներում կատարված սոցիալիստական ռևոլյուցիաների ընթացքում։ Այժմ համաշխարհային կապիտալիզմը մտել է ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապը։ Այդ էտապի կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ ճգնաժամը տեղի է ունենում ոչ թե համաշխարհային պատերազմի կա-

*պակցությամբ, այլ երկու սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում։*

*Ինչո՞ւմ է արտահայտվում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը։ ՍՄԿՊ ծրագրում ասված է. «...նորանոր երկրների անջատում կապիտալիզմից. իմպերիալիզմի դիրքերի թուլացում սոցիալիզմի հետ տնտեսական մրցության մեջ. իմպերիալիզմի գաղութային սիստեմի տրոհվելը. պետական մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման և միլիտարիզմի աճման հետևանքով իմպերիալիզմի հակասությունների սրում. կապիտալիստական էկոնոմիկայի ներքին անկայունություն և նեխման ուժեղացում, որը դրսևորվում է արտադրողական ուժերը լրիվ օգտագործելու՝ կապիտալիզմի հարաճուն անընդունակության մեջ (արտադրության աճի ցածր տեմպեր, պարբերական ճգնաժամեր, արտադրական կարողությունների մշտական թերբեռնվածություն, խրոնիկական գործազրկություն). աշխատանքի և կապիտալի միջև պայքարի աճ. համաշխարհային կապիտալիստական տնտեսության հակասությունների խիստ սրում. քաղաքական ռեակցիայի չտեսնված ուժեղացում բոլոր գծերով, բուրժուական ազատություններից հրաժարում և մի շարք երկրներում ֆաշիստական, բռնակալական ռեժիմների հաստատում. բուրժուական քաղաքականության և գաղափարախոսության խոր ճգնաժամ,— սրանում է արտահայտվում* կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը»։

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի էլ ավելի խորացման և կապիտալիստական երկրների հատուկ անհամաչափ զարգացման հետևանքով փոփոխվում է ուժերի հարաբերակցությունը իմպերիալիզմի ճագերում։ ԱՄՆ-ն աստիճանաբար կորցնում են իրենց բացարձակ գերազանցությունը կապիտալիստական աշխարհի մյուս պետությունների նկատմամբ։ Այսպես. 1953 թվականին Միացյալ Նահանգների բաժինը բոլոր կապիտալիստական երկրների ընդհանուր արդյունաբերական արտադրության մեջ հասնում էր 53, իսկ անցած տարում՝ 43 տոկոսի։*

*Արդի իմպերիալիզմը, փորձելով ելք գտնել սրվող հակասություններից և դժվարություններից, ավելի ու ավելի է պետական-մոնոպոլիստական բնույթ ընդունում։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր. «Երբ մոնոպոլիան առաջացել է արդեն և միլիարդների հետ է խաղում, նա բացարձակ անխուսափելիությամբ թափանցում է հասարակական կյանքի բոլոր կողմերը, անկախ քաղաքական կառուցվածքից և որևէ այլ «մասնավորություններից»» (Երկեր, հատ. 22, էջ 312)։*

Մոնոպոլիաները, իրենց ձեռքում հրեշավոր տնտեսական և քաղաքական ուժ կենտրոնացնելով, պետությունը վերակառուցում դարձնում են մոնոպոլիստական բուրժուազիայի, ֆինանսական օլիգարխիայի գործերի կառավարման մի կոմիտե: Յուրաքանչյուր իմպերիալիստական պետությունում մեծ թիվ չկազմող խոշորագույն ֆինանսական խմբերն ըստ էության ղեկավարում են երկրի ամբողջ էկոնոմիկան և քաղաքականությունը: ԱՄՆ-ում, օրինակ, այդպիսի խմբեր կարելի է համարել՝ Ռոկֆելլերներին (նրանց ակտիվի ընդհանուր գումարը 1962 թվականին հասավ աստղաբաշխական թվի՝ 97,3 միլիարդ դոլարի, Մորգաններին( գրեթե այդպիսի մի գումար՝ 95,7 միլիարդ դոլար), Չիկագոյի խումբը (31,1 միլիարդ), Դյուպոններին (23,2 միլիարդ), «Բենկ օֆ Ամերիկա»-ն (20,3 միլիարդ), «Ֆերստ նեշնել սիտի բենկ»-ը (20,2 միլիարդ), Կլիվլենդի խումբը (19,7 միլիարդ), Մելոններին (15,4 միլիարդ դոլար):

*«Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը,— ասվում է ՍՄԿՊ ծրագրում,— մոնոպոլիաների ուժը և պետության ուժը միավորում է միասնական մեխանիզմի մեջ՝ մոնոպոլիաները հարստացնելու, բանվորական շարժումն ու ազգային-ազատագրական պայքարը ճնշելու, կապիտալիստական հասարակարգը փրկելու, ագրեսիվ պատերազմներ սանձազերծելու նպատակով։*



Բուրժուական պետության ռազմական պատվերները հսկայական շահույթներ են ապահովում մոնոպոլիստական կապիտալի համար: Այսպես, ամերիկյան կառավարության ռազմական պատվերների 70 տոկոսն ընկնում է ԱՄՆ-ի 100 խոշոր կոմպանիաներին, ընդ որում դրանցից 10 խոշորագույններն ստանում են բոլոր պատվերների 35 տոկոսը: ԱՄՆ-ում ամենահզոր ռազմա-արդյունաբերական կորպորացիաները՝ «Ջեներալ դայնեմիքս կորպորեյշն»-ը, «Նորտ Ամերիկեն ավիեյշն»-ը, «Լոկհիդ էյրկրաֆտ»-ը, 1961 թվականին ռազմական պատվերներ են ստացել համապատասխանաբար 1920 միլիոն, 1200 միլիոն և 1175 միլիոն դոլարի:

Կապիտալիստական աշխարհի ամենամյա ռազմական ծախսերը կազմում են ավելի քան 100 միլիարդ դոլար: Վերջին հինգ տարում ԱՄՆ-ի միայն ուղղակի ռազմական ծախսերը գերազանցում են 240 միլիարդ դոլարից, իսկ ՆԱՏՕ-ի երկրները 1949 թվականից մինչև 1962 թվականը ռազմական մրցավազքի վրա ծախսել են մոտ 760 միլիարդ դոլար:

«Ռազմական բիզնեսը դարձել է մի ծովահեն, որի տնտեսական շոշափուկները թափանցել են երկրի բոլոր անկյունները,—գրում է ամերիկյան ժուռնալիստ Ֆ. Կուկը «Պատերազմի պետությունը» գրքում,— մենք բոլորս կատաղի ռազմական մրցավազքի գերիներն ենք, մրցավազք, որը խարսխվում է միջազգային լարվածությունը պահպանելու վրա...»:

## ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՃԸ

*Բանվոր դասակարգի առաջին միջազգային մասսայական ռևոլյուցիոն կազմակերպության՝ I Ինտերնացիոնալի հիմնադրումից (1864 թվական) հետո, միջազգային բանվոր դասակարգն աճել է, իսկ նրա ռևոլյուցիոն շարժումը համաշխարհային-պատմական հաղթանակներ է տարել։ Անցյալ դարի կեսերին Անգլիայում, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում և Գերմանիայում, որոնք դեռ այն ժամանակ ընթանում էին կապիտալիստական զարգացման ուղիով, արդյունաբերական պրոլետարիատի թիվը 9 միլիոնից չէր անցնում։ XIX դարի վերջին—XX դարի սկզբին աշխարհի հիմնական կապիտալիստական պետություններում արդյունաբերական պրոլետարիատի ընդհանուր թիվը հասավ 30 միլիոնի, իսկ ընթացիկ հարյուրամյակի կեսերին՝ 60 միլիոնի։ Աճը հարյուր տարվա ընթացքում՝ ավելի քան 6 անգամ։*

*Պրոլետարիատի և բուրժուազիայի միջև սոցիալական կոնֆլիկտների սրումը տանում է դեպի դասակարգային պայքարի ակտիվացում։ 1919 թվականից մինչև 1939 թվականը, այսինքն՝ քսան տարվա ընթացքում, կապիտալիստական աշխարհում տեղի է ունեցել 177,4 հազար գործադուլ, որոնց մասնակցել են 80,8 միլիոն մարդ։ Հետպատերազմյան տասնվեց տարիների ընթացքում (1946—1962) գործադուլների քանակը աճել հասել է մինչև 286,2 հազարի, իսկ գործադուլավորների թիվը՝ 247,9 միլիոնի։ Գործադուլային պայքարի առանձնապես բուռն վերելք է նկատվում վերջին տարիներին։*

*Աճել է համաշխարհային կոմունիստական շարժումը։ Եթե 1928 թվականին աշխարհում կային 46 կոմունիստական և բանվորական պարտիա, ապա 1957 թվականին դրանց թիվը հասավ 75-ի, իսկ 1964 թվականին՝ գրեթե 90-ի։ Աճել է նաև կոմունիստների թիվը։ Եթե 1928 թվականին կոմունիստների թիվը կազմում էր 1,7 միլիոն մարդ, ապա 1957 թվականին այն հասավ 33, 1964 թվականին՝ 44,7 միլիոնի։*

*Միայն վերջին մի քանի տարում կոմունիստների թիվը ամբողջ աշխարհում ավելացել է 12 միլիոնով։*

*Միջազգային կոմունիստական շարժումը դառնում է արդիականության ամենաազդեցիկ ուժը։ Այդ շարժման աճումն ու հաջողությունները համոզիչ*

կերպով հաստատում են այն եզրակացության ճշտությունը, որ տրված է ՍՄԿՊ ծրագրում՝ «Կոմունիստական պարտիաները համաշխարհային ռևոլյուցիոն շարժման ավանգարդն են։ Նրանք ապացուցել են մարքսիզմ-լենինիզմի կենսունակությունը, իրենց ընդունակությունը ո՛չ միայն պրոպագանդելու, այլև պրակտիկայում իրականացնելու գիտական կոմունիզմի վսեմ իդեալները։ Միջազգային կոմունիստական շարժումը ներկայումս այնքան հզոր է դարձել, որ ռեակցիայի միացյալ ուժերին չի հաջողվի խորտակել այն»։

Խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի համար մղվող պայքարը համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գիծն է։ ՍՄԿՊ-ն իր սրբազան պարտքն է համարում հետևողականորեն պաշտպանել համաշխարհային կոմունիստական շարժման ընդհանուր գիծը, հասնել այն բանին, որ հաղթահարվեն նրա շարքերում եղած դժվարությունները, բոլոր եղբայրական պարտիաները Մոսկվայի խորհրդակցությունների Դեկլարացիայի և Հայտարարության հիման վրա համախմբվեն մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի անձեռնմխելի սկզբունքներով։ Մեր պարտիան ակտիվ կերպով տանելու է այն գիծը, որ ամբողջ աշխարհի մարքսիստական-լենինյան պարտիաները խորհրդակցության հավաքվեն, որը կարող է և պետք է օժանդակի այդ նպատակներին հասնելուն։

Բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժման մեծագույն նվաճումն է հանդիսանում համաշխարհային սոցիալիստական սիստեմը, սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթացող իրավահավասար ու սուվերեն ժողովուրդների համագործակցությունը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ճեղքեց իմպերիալիզմի շղթան և մարդկության պատմության մեջ բացեց նոր դարաշրջան՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաստատման դարաշրջանը։ Սոցիալիզմը հաղթանակեց մեր երկրում։ Այնուհետև, երկրորդ համաշխարհային պատերազմում Սովետական Միության վճռական դերի առկայությամբ իմպերիալիզմի հարվածային ուժերի՝ գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի, ջախջախման հետևանքով վեր խոյացավ ռևոլյուցիոն շարժման ալիքը, Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների ժողովուրդներ տապալեցին կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը և ընթացան սոցիալիզմի ուղիով։ Կազմվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմ։

1959 թվականին, երբ Կուբայում հաղթեց ռևոլյուցիան՝ առաջին սոցիալիստական ռևոլյուցիան արևմտյան կիսագնդում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմում հաշվվում էր 14 պետություն՝ մեկ միլիարդ մարդուց ավելի բնակչությամբ։ Սոցիալիզմը դարձավ պրակտիկ գործ երկրագնդի յուրաքանչյուր երրորդ բնակչի համար, ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման դրոշը։ Ժամանակակից պատմական պրոցեսի հիմնական բովանդակությունը սոցիալիզմի գոյացումն ու հաստատումն է միջազգային մասշտաբով։

**ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ՓԼՈՒԶՈՒՄԸ**

Ազգային-ազատագրական շարժման գրոհների տակ գաղութային ստրկության սիստեմի խորտակումը իր նշանակությամբ երկրորդ երևույթն է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմվելուց հետո։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի պահին գաղութները, կիսագաղութները և կախյալ երկրները կազմում էին մեր մոլորակի տերիտորիայի 77,2 տոկոսը, այդ տերիտորիայում ապրում էր ամբողջ աշխարհի բնակչության 69,2 տոկոսը։ Մեծ Հոկտեմբերը



արթնացրեց կեղեքված ժողովուրդներին և նրանց ներգրավեց համաշխարհային ռևոլյուցիոն շարժման ընդհանուր հոսանքի մեջ։

«...Սովետական ռևոլյուցիան,— գրում էր ազգային-ազատագրական շարժման ականավոր գործիչ Ջավահառլար Ներուն,— մեծ չափով առաջ մղեց մարդկային հասարակությունը և վառեց պայծառ բոց, որը հանգցնել անհնար է։ Այդ ռևոլյուցիան այն նոր քաղաքակրթության հիմքը դրեց, դեպի որը կարող է շարժվել աշխարհը»։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմակերպումը հսկայական չափով արագացրեց ազատագրական պրոցեսը։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իմպերիալիզմը կորցրեց իր տիրապետությունը այն երկրների նկատմամբ, որոնցում ապրում է մոտ երկու միլիարդ մարդ, որը կազմում է երկրագնդի բնակչության երկու երրորդը։

Մեր օրերում Ասիայի տերիտորիայի մոտ 98 և Աֆրիկայի տերիտորիայի մոտավորապես 83 տոկոսն ընկնում է սուվերեն պետություններին։ Նախկին գաղութների տեղում կազմավորվել է ավելի քան 50 ինքնուրույն պետություն։ Միավորված ազգերի կազմակերպության անդամների կեսից ավելին Ասիայի և Աֆրիկայի երկրներն են։

1964 թվականի սկզբին գաղութատիրության շղթաներում դեռևս մնացին երկրներ, որոնց բաժին է ընկնում աշխարհի տերիտորիայի 5,2 տոկոսը։ Այդ երկրների բնակչությունը Երկրի ամբողջ բնակչության 1,3 տոկոսն է կազմում։

«Համաշխարհային սոցիալիզմի ուժերը,— ասվում է 1960 թվականի Հայտարարության մեջ,— վճռական կերպով աջակցել են իմպերիալիզմի կեղեքումից ազատագրվելու համար գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների պայքարին։ Սոցիալիստական սիստեմը հուսալի վահան է դարձել ազատագրված ժողովուրդների անկախ ազգային զարգացման համար։ Ազգային-ազատագրական շարժմանը մեծ աջակցություն է ցույց տալիս միջազգային բանվորական շարժումը»։

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՀԱՆՔԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

*Սոցիալիստական ժողովրդական տնտեսության էկոնոմիկայի հետագա ամրապնդման ու կատարելագործման կարևոր պայմանը արտադրության ռեզերվների հայտաբերումն ու դրանց արդյունավետ օգտագործումն է։ Այս առնչությամբ առաջնահերթ նշանակություն ունի արտադրության ընթացիկ ծախքերի իջեցման ռեզերվների հայտաբերումը։ Աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, որակի բարելավումը պետք է օրենք դառնան սովետական բոլոր ձեռնարկությունների համար։*

*Այստեղ մենք ցանկանում ենք անդրադառնալ Հայկական ՍՍՌ հանքարդյունաբերության արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերին։ Ռեսպուբլիկայի հանքարդյունաբերության ձեռնարկություններն ընդգրկում են իրար հետ կապված բազմազան հանքատեսակների՝ պղնձի, ազնիվ, հազվադեպ ու ցրված մետաղների, ինչպես նաև քիմիական արդյունաբերության համար ծծումբ պարունակող նյութերի արտադրությունը։ Այդ բոլոր ճյուղերի գծով արտադրության ծախքերի իջեցումը առանձնապես կարևոր նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության համար։ Դրա հետ մեկտեղ հանքարդյունաբերության մեջ արտադրանքի ինքնարժեքի ցուցանիշն ունի մի շարք յուրահատուկ գծեր։ Այստեղ, ինչպես նաև արդյունահանող բոլոր ճյուղերում, միևնույն հանքավայրի տարբեր մասերից ստացվող մեկ տոննա հանքաքարի կամ կոնցենտրատի ինքնարժեքը կարող է հաճախ տարբեր լինել։ Այդ կախված է ինչպես աշխատանքի բնական պայմանների տարբերություններից, այնպես էլ հանքավայրի հարստությունից ու դիրքից, հանքաքարի մեջ մետաղի պարունակությունից և այլ հանգամանքներից։ Այդ իսկ պատճառով արտադրանքի մեկ միավորի միջին ինքնարժեքը հանքարդյունաբերության նույնիսկ մեկ ձեռնարկության մեջ չի կարող բնորոշող մեծություն կազմել։ Այդ ավելի մեծ չափով բնորոշ է ամբողջ ճյուղի արտադրանքի ինքնարժեքին։ Այդ կապակցությամբ էլ հանքարդյունաբերության մեջ ինքնարժեքի ցուցանիշների վերլուծությունը մի փոքր յուրահատուկ բնույթ ունի և հարուցում է մի շարք մեթոդական դժվարություններ։*

*Վերջին տարիներս նկատվում է, որ ռեսպուբլիկայի պղնձամոլիբդենային հանքաքարի արդյունահանման աճման հետ մեկտեղ աճում է նաև նրա ինքն-*



*արժեքը։ Բնականաբար անհրաժեշտ է գործնականում ուսումնասիրել այն պատճառները, որոնք խախտել են տվյալ ճյուղի տնտեսական փոխադարձ պայմանավորվածությունը։*

*Հանքարդյունաբերության մեջ արտադրանքի ինքնարժեքն ունի իր սպեցիֆիկ առանձնահատկությունը, որը բացատրվում է արտադրական պարբերաշրջանի տևողությամբ և տեխնոլոգիական առանձնահատկություններով։ Հետևապես, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը վերոհիշյալ ճյուղում մեծ չափով կախված է հանքանյութի եղանակից ու սիստեմներից։ Վերջին տարիներս հող փորող հզոր մեքենաներ և բազմազան փոխադրամիջոցներ ստեղծելու կապակցությամբ լայն տարածում է գտել հանքավայրերի բաց մշակումը։ Հանքարդյունաբերության մեջ բաց աշխատանքների տեսակարար կշիռն ամբողջ ՍՍՌՄ-ում 1945 թվականի 45 տոկոսից 1958 թվականին հասավ 56-ի, իսկ 1965 թվականին կկազմի 66 տոկոս։*

*Հանքավայրերի բաց մշակումն ունի մի շարք առավելություններ. նախ և առաջ այն հնարավորություն է ընձեռում ավելի խնայողաբար ու արտադրողաբար օգտագործելու էքսկավատորները, ինքնաթափ մեքենաները, հորատող խոշոր հաստոցները և այլն։ Այնուհետև, բաց մշակումը հնարավորություն է տալիս խուսափելու այն մեծ ծախսերից, որ կատարվում է ամրակապման, օդափոխման, արհեստական լուսավորության, ինչպես նաև հրդեհների դեմ պայքարելու վրա (շատ հաճախ հրդեհների դեմ պայքարի ծախսերը կազմում են հանքաքարի ամբողջ ինքնարժեքի 10—15 տոկոսը)։ Մի քանի անգամ կրճատվում են հանքաքարի կորուստներն ու աղքատացումները, կրճատվում են արդյունահանման պրոցեսների վերահսկման ու կառավարման ծախսերը։ Օրինակ, Քաջարանի հանքավայրում բաց մշակման դեպքում կորուստները չեն անցնում 5—8 տոկոսից, աղքատացումը՝ 5—10 տոկոսից։ Մինչդեռ Ղափանի հանքավայրում, որտեղ արդյունահանումը կատարվում է ստորերկրյա եղանակով, դրանք համապատասխանորեն կազմում են 15—25 և 30—50 տոկոս։*

*Հաշվարկումները ցույց են տալիս, որ եթե աղքատացումը նվազեցվի թեկուզ 10 տոկոսով, ապա այդ հնարավորություն կտա մետաղագործական ձեռնարկություններում արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու 10—15 տոկոսով (տե՛ս Վ. Լերեդևի Աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները պղնձարդյունաբերության մեջ գիրքը, 1963, էջ 14)։ Այնուհետև, բաց մշակման դեպքում զգալիորեն բարելավվում են աշխատանքի սանիտարական ու հիգիենիկ պայմանները՝ վերանում են սիլիկոզով հիվանդանալու դեպքերը։*

*Բաց արդյունահանման ժամանակ, ինչպես հայտնի է, մեծ ծախսեր են կատարվում հանքարդյունաբերական նախապատրաստական աշխատանքների վրա։ Սակայն այդ ծախսերը կարճ ժամանակից հետո փոխհատուցվում են արտադրության մյուս տեղամասերում կատարված խնայողության շնորհիվ։ Որպեսզի արդյունահանման բաց եղանակն ավելի լայնորեն տարածվի, անհրաժեշտ է բաց հանքերը զինել հզոր սարքավորմամբ, որոշ չափով փոխել բաց հանքերի նախագծման պրակտիկան, որպեսզի ավելի ընդլայնվեն բաց մշակման սահմանները։ Մինչև վերջին ժամանակներս պղնձի ու մոլիբդենի բաց հանքերի նախագծողները հանքի խորությունը հաշվում էին ծայրամասային ելունքով։ Այդ սկզբունքով կառուցված բաց հանքերի վերնաշերտի միջին գործակիցը սահմանայինից ցածր է լինում։ Վերջին ժամանակներս բաց հանքերը նախագծվում են վերնաշերտի սահմանային գործակցի համաձայն։ Այդ հնա-*

*բավորություն է տալիս, ինքնարժեքը պահպանելով ստորերկրյա արդյունահանման մակարդակի վրա, կատարել հանքարդյունաբերական լրացուցիչ աշխատանքներ: Անգամ ինքնարժեքի հավասար լինելու դեպքում արդյունահանման բաց եղանակը կենդանի աշխատանքի ավելի մեծ խնայողություն է տալիս, հատկապես, «հասարակության համար կատարվող աշխատանքը» խնայելու միջոցով, որպիսին չի մտնում արտադրանքի ինքնարժեքի մեջ: Ուստի բաց արդյունահանում պետք է կիրառել նույնիսկ այն դեպքում, երբ ինքնարժեքն ավելի բարձր է լինում, քան ստորերկրյա արդյունահանման դեպքում: Այդ, անշուշտ, տնտեսապես արդարացվում է, քանի որ արդյունահանման բաց եղանակի տնտեսապես ռացիոնալ սահմանները շատ ավելի մեծ են, քան ստորերկրյա եղանակինը:*

*Վերոհիշյալ հանգամանքն առանձնահատուկ նշանակություն ունի նաև այն պատճառով, որ մեզ մոտ, հանքատեսակների տեղադրման յուրահատկությունների շնորհիվ, վերնաշերտի գործակիցն աճման տենդենց է ցուցաբերում: Ամբողջ Միության մեջ 1955 թվականին այն կազմել է միջին հաշվով 2,5, 1958-ին՝ 6,6, իսկ 1965 թվականին հավանաբար կհասնի 6,7-ի: Վերնաշերտի գործակցի բարձր մակարդակն է պատճառը, որ մեր բաց հանքերում աշխատանքի արտադրողականությունը ցածր է ԱՄՆ-ի պղնձի ու մոլիբդենի բաց հանքերի համեմատությամբ: ԱՄՆ-ի հանքարդյունաբերական ձեռնարկություններում վերնաշերտի գործակիցը միջին հաշվով կազմում է 1,5—2,5: Օրինակ, Բինգեմ խոշորագույն բաց հանքում, որի արտադրողականությունը տարեկան 30 միլ. տոննա հանքաքար է, վերնաշերտի գործակիցը հավասար է 2,1-ի: Մեր հայրենական հանքավայրերում վերնաշերտը նվազեցնել հնարավոր է բաց հանքերի կողերի մեծությունը փոփոխելու հաշվին: Այսպես, եթե կողերի անկյունը 34°-ից բարձրացվի 37°—38°-ի, ապա այդ հնարավորություն կտա մի քանի միլիոն խորանարդ մետրով կրճատելու բաց արդյունահանման աշխատանքների ծավալը:*

*Ստորև բերվող աղյուսակը ցույց է տալիս պղնձի և մոլիբդենի կոնցենտրատների ինքնարժեքի դինամիկան Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում:*

| Ինքնարժեքի տարրերը | Տեսակարար կշիռները կոնցենտրատի ինքնարժեքի մեջ | | | |
|---|---|---|---|---|
| | մոլիբդենի | | պ ղ ն ձ ի | |
| | 1959 թ. | 1962 թ. | 1959 թ. | 1962 թ. |
| Հումք և հիմնական նյութեր | 0,41 | 0,51 | 0,33 | 0,40 |
| Աշխատավարձ | 0,30 | 0,26 | 0,60 | 0.56 |
| Արտադրամասային ծախսեր | 0.09 | 0,12 | 0,01 | 0,02 |
| Ընդհանուր գործարանային ծախսեր | 0,12 | 0,05 | 0.02 | 0.01 |
| Ամորտիզացիա | 0,08 | 0,06 | 0,04 | 0.01 |

*Ինչպես երևում է այս աղյուսակից, հումքը և հիմնական նյութերը աճման տենդենց ունեն: Այդ հիմնականում բացատրվում է արդյունահանվող հանքաքարի որակով, որն ազդում է նրա հարստացման պրոցեսի վրա: Պղնձի և մոլիբդենի հանքաքարերի հարստացումը մոտավորապես 10—15 անգամ ավելացնում է մետաղի խտությունը: Օրինակ, հարստացման միջոցով մետաղի խտությունն ավելանում է Քաջարանի կոմբինատում՝ 11, իսկ Ղափանի կոմբինատում՝ 9 անգամ:*



*Տարբեր հանքավայրերի տնտեսական արժանիքները պայմանավորված են*
*Տարբեր հանքավայրերի մեջ մետաղի ավելի կամ պակաս*
*աշխատանքի խնայողությամբ, հանքաքարի մեջ մետաղի ավելի կամ պակաս հարստացման առանձնա-*
*պարունակությամբ, աշխատանքի պայմաններով, հարստացման առանձնա-*
*հատկություններով և այլն:*
*Հարուստ հանքավայրերի սպառմանն անհրաժեշտաբար պետք է հաջորդի*
*աղքատ հանքավայրերի մշակման ընդլայնումը: Այս կապակցությամբ պետք*
*է հաշվի առնվեն հասարակական աշխատանքի ծախսումներն աղքատ հան-*
*քավայրերի մշակման վրա, ընդ որին նկատի առնելով մշակման օպտիմալ այն*
*վարիանտը, որն ապահովի բոլոր տեխնոլոգիական ցիկլերը՝ սկսած հանքա-*
*քարի արդյունահանումից մինչև ձուլումը՝ մետաղագործարաններում:*
*Հարստացման ամենակարևոր ցուցանիշը մետաղի արտազատումն է: Ներ-*
*կայումս մի շարք հանքաքարերից մետաղի արտազատումը կազմում է 80—82*
*տոկոս՝ 1939 թվականի 52—63 տոկոսի փոխարեն: Հայաստանի առանձին*
*գործարաններում, օրինակ՝ Քաջարանում, այն կազմում է 87 տոկոս: Հիմ-*
*նականում, ինչպես արդեն ասվեց, որոշիչն այստեղ հանքաքարերի բաղադրու-*
*թյունն է: Վերջին տարիներս լայնորեն արմատավորվել են հարստացման բազ-*
*մաստադիալ սխեմաներ: Այս դեպքում հարստացումը կատարվում է ստա-*
*դիաներով, որոնցից յուրաքանչյուրում արտազատվում է մեկ կամ մի քանի*
*մետաղ, իսկ մնացած զանգվածը կրկին ջարդվում ու հարստացվում է: Հարս-*
*տացման այդ սխեմայի արմատավորումը շատ ձեռնտու է:*
*Այսպես, Ջեզկազգանի գործարանում բազմաստադիալ հարստացման ար-*
*մատավորումը հնարավորություն տվեց պղնձի արտազատումն ավելացնել*
*2—2,5 տոկոսով՝ կոնցենտրատի մեջ նրա պարունակությունն ավելացնելով*
*8—10 տոկոսով: Հայաստանի պայմաններում, Քաջարանի պղնձամոլիբդե-*
*նային կոմբինատում ջարդման բաժանմունքը 1961 թվականին աշխատում*
*էր բաց ջարդման ժամանակավոր սխեմայով: Ջորս աղացն էլ աշխատում էին*
*երկու ստադիայով: Այդ մեթոդի արմատավորումը տնտեսական զգալի ար-*
*դյունք տվեց (արտազատման գործակիցը բարձրացավ մինչև 92 տոկոս): Ըստ*
*երևույթին, հնարավոր կլինի կիրառել հարստացման բազմաստադիալ սխեման*
*մեր որոշ գործարաններում:*
*Ջնայած տեխնոլոգիայի էական բարելավմանը, մեր որոշ գործարաննե-*
*րում հարստացման ժամանակ մետաղի կորուստը երբեմն կազմում է 15 տո-*
*կոս: Այդ չափազանց մեծ է, քանի որ մեկ տոննա պղինձ ստանալու համար*
*հարկ է լինում արդյունահանել, մանրացնել ու հարստացնել 90—150 տոննա*
*հանքաքար: Հայրենական գործարանների հիմնական սարքավորումը չի զի-*
*ջում արտասահմանյան սարքավորմանը, սակայն արտասահմանում հարս-*
*տացման մակարդակն ավելի բարձր է: Այնտեղ պղնձի միջին արտազատումը*
*կազմում է 96 տոկոս: Դրա հիմնական պատճառը հարստացման մեր ոչ կա-*
*տարյալ սխեմաներն են: Ինչպես նաև պետք է հաշվի առնել այն հանգամանքը,*
*որ հայրենական գործարաններում մշակվող հանքաքարն ավելի բարդ կառուց-*
*վածք ունի և դժվար է հարստացվում:*
*Հանքատեսակների մի մասը չի բացահայտվում ջարդման ժամանակ, չի*
*հարստացվում ու անցնում է մյուս կոնցենտրատների մեջ:*
*Ներկայումս մեր հարստացուցիչ գործարաններում կիրառվում է հարս-*
*տացման սխեմաների կատարելագործման մի ամբողջ սիստեմ: Ընդ որում ղե-*
*կավար ուղեցույց են ծառայում 1961 թվականին Կալուգա քաղաքում կայացած*
*հարստացողների համամիութենական կոնֆերանսի հանձնարարականները:*

Հարստացման տեխնոլոգիական սխեմաների հետագա կատարելագործումը անխզելիորեն կապված է բուն իսկ հարստացման պրոցեսի ինտենսիվացման աճման հետ։ Հարստացման ինտենսիվացումը կարելի է երկու ուղիներով՝ միներալների ու պղպջակների կոնտակտն ավելացնելու և փրփուրն ավելի մեծ շերտով հանելու միջոցով։ Այդ ուղիների օգտագործումը մեծապես կախված է ֆլոտացիոն ագրեգատներից և զանազան արագացուցիչներից։

Հանքարդյունաբերության մեջ բնորոշ է նաև այն հանգամանքը, որ տեխնոլոգիական այլ և այլ պատճառներով մի կոմպոնենտի արտազատման տոկոսի ավելացման դեպքում մեխանիկորեն նվազում է մյուս կոմպոնենտի արտազատման տոկոսը։ Այս կապակցությամբ ծագում է հանքաքարերից զանազան կոմպոնենտներ արտազատելու չափերի զուգակցման խնդիրը։ Քաջարանի պայմաններում այդպիսի զուգակցման օպտիմում մենք գտել ենք գծային ծրագրման մեթոդների օգնությամբ։ Արդյունքները ցույց են տվել, որ, նկատի առնելով հարստացվող հանքաքարի որակական բնույթը, մոլիբդենի արտազատման օպտիմալ չափը հավասար է 86, իսկ պղնձինը՝ 71 տոկոսի։ Պետք է նշել, որ այդ օպտիմումը գտնվել է՝ հաշվի առնելով տվյալ հանքաքարը բնութագրող առանձնահատկությունները նաև ձուլման ժամանակ։ Միաժամանակ սահմանվել է հումքի անհրաժեշտ ծախսման օպտիմումը։ Այդ առանձնապես անհրաժեշտ էր այն պատճառով, որ վերջին տարիներս խիստ աճել է հումքի ծախսումը մասնավորապես հանքաքարի բաղադրության փոփոխության հետևանքով։

Առաջին հայացքից այդ զուտ բնագիտական բնութագիր է։ Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, նախագծման սիստեմի ճիշտ կազմակերպման շնորհիվ կարելի է հասնել հանքաքարի մեջ մետաղի պարունակության համեմատաբար կայուն տոկոսների։ Բացի դրանից աշխատանքի վարձատրման գոյություն ունեցող սիստեմը քիչ է խթանում այդ տոկոսի կայունացմանը։ Վերջին տարիներս աշխատավարձի մեջ կատարած վերակառուցումը վերացրել է միևնույն կարգի աշխատողների դրույքների մեջ եղած տարբերությունը, ինչպես նաև վերացվել են հավասարեցման տարրերը և բազմաթիվ այլ թերություններ։

Սակայն հանքարդյունաբերության մեջ աշխատանքի վարձատրման սիստեմի հիմնական թերությունն առայժմ մնացել է. այսինքն՝ հիմնականում անփոփոխ է մնացել աշխատանքի վարձատրման չափանիշը։ Բանն այն է, որ մինչև 1961 թվականը հանքաքարի արդյունահանման վրա ծախսած աշխատանքի վարձատրումը խարսխված էր արդյունահանված հանքաքարի ծավալի (քանակության) վրա, իսկ հանքաքարի որակական կազմը նկատի չէր առնվում։ 1961 թվականից սկսած այդ նույն աշխատանքի վարձատրման սիստեմը հիմնվում է նաև արդյունահանվող հանքաքարի մեջ օգտակար կոմպոնենտների տոկոսային պարունակության ցուցանիշի վրա։ Դրա հետևանքով այժմ արդյունահանվում են օգտակար կոմպոնենտների ավելի բարձր պարունակություն ունեցող հանքաքարեր։

Սակայն այդ միջոցառումը մյուս կողմից այն հետևանքն ունեցավ, որ հանքավայրի հարուստ երակները չափազանց անտնտեսվար կերպով էին շահագործվում։ Երբեք չի կարելի հանդուրժել հանքերի այդպիսի անտնտեսվար շահագործումը։ Ըստ երևույթին, աշխատանքի վարձատրման դեպքում պետք է հիմնվել երկու ցուցանիշի վրա՝ արդյունահանվող հանքաքարի քանակի և նրա



կոմպոնենտների տոկոսային պարունակության վրա։ Այդ ցու-
մեջ օգտակար կոմպոնենտների տոկոսային պարունակության ծրագրման
ցանիշների օպտիմալ հարաբերակցությունը կարելի է սահմանել ծրագրման
մաթեմատիկական մեթոդների միջոցով։ Այսպիսով, արդյունահանման պրո-
ցեսում աշխատանքի խթանման նման սիստեմը կարող է ներգործել հանքա-
քարի որակի վրա, հետևապես նաև հումքի ծախսումներն ու կոնցենտրատի
ինքնարժեքն իջեցնելու վրա։

Մենք նշեցինք արտադրանքի ինքնարժեքի իջեցման այն հարցերը, որոնք
անմիջականորեն կապված են տվյալ ճյուղի տեխնոլոգիական առանձնահատ-
կությունների հետ։ Սակայն գոյություն ունեն ընդհանուր տնտեսական բնույթի
մի շարք այլ գործոններ, որոնք նույնպես ազդում են հանքարդյունաբերության
արտադրանքի ինքնարժեքի վրա։ Մենք նշեցինք հումք և հիմնական նյութեր
տարրը, այժմ խոսենք ինքնարժեքի մյուս կարևոր տարրերի մասին։
տարրը, այժմ խոսենք ինքնարժեքի մյուս կարևոր տարրերի մասին։

Հայտնի է, որ ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ աշխատավարձի
ֆոնդը բաշխվում է առանձին ճյուղերի միջև ըստ սահմանված տարիֆային
դրույքների ու աշխատողների կարգերի։ Հասարակությունը միայն այդ ձևով
կարող է տարբեր որակավորում ունեցող աշխատանքի բոլոր կոնկրետ ձևերը
հանգեցնել պարզ աշխատանքի, դրանով իսկ ինքնարժեքը մոտեցնելով աշ-
խատանքի հանրորեն-անհրաժեշտ ծախսումներին։ Ընդսմին ճիշտ չէ այն ըն-
դունված պրակտիկան, երբ արտադրական մի շարք ծախսեր հաշվեգրվում են
պետական բյուջեին, առանց դրանք արտացոլելու ինքնարժեքի կազմի մեջ։
Քանի որ այդ ծախսերը հավասար չեն արտադրության առանձին ճյուղերում
ու ձեռնարկություններում, ապա կալկուլյացիայի ժամանակ դրանք անտեսելը
հնարավորություն չի տալիս լրիվ պարզելու այն ծախսերի փաստական չափը,
որ հասարակությունը կատարում է այս կամ այն արդյունքն արտադրելու վրա։
Ծախսերի մի որոշ մասը բյուջեին հաշվեգրելը բացահայտ դոտացիա է, այն
էլ ամենավատ ձևի դոտացիա, քանի որ դրա չափը չի վերահսկվում ու չի
կարգավորվում։

Վերոհիշյալից բխում է այն գլխավոր պահանջը, որ ամեն մի ծախս պետք
է արտացոլվի ինքնարժեքի մեջ և այն էլ առավել ստույգ ու լրիվ չափով։ Դա
համապատասխանում է ինչպես տնտհաշվարկի պայմաններին, այնպես էլ
էքսպերտային ճիշտ սիստեմի շահերին։ Մեր տնտեսագիտական մամուլի էջե-
րում շատ հաճախ են քննադատության ենթարկում մեր ժողովրդական տըն-
տեսության մեջ ինքնարժեքի փաստական հաշվարկման մեթոդները։ Այդ քըն-
նադատությունն իրավացի է, քանի որ ծախսերի և ինքնարժեքի հաշվարկման
մեթոդները մեզ մոտ բավականաչափ կատարելագործված չեն։ Ժողովրդական
տնտեսության մեջ ինքնարժեքի հաշվարկումը երկար ժամանակ կատարվում
էր էմպիրիկ ձևով։ Կալկուլյացիայի գործող մեթոդները մտել են շատ վաղուց
և, բնականաբար, չեն կարող համապատասխանել մեր հասարակության առաջ-
ընթաց զարգացմանը։

Այսպիսով, անհրաժեշտ է լուրջ ուշադրություն նվիրել ծախսերի բաշխման
սկզբունքին։ Սոցիալիստական տնտեսության համար ամբողջությամբ վերըր-
ված ունի նշանակություն ունի աշխատանքի այն տնտեսումը, որը հնարա-
վորություն է տալիս ավելացնելու հավելյալ արժեքը և ոչ թե ինքնարժեքի վրա
ազդող բաշխման գործոնները։ Մյուս կողմից, ինքնարժեքը, որպես արդյուն-
քի արտադրման ու իրացման ծախսերն արտահայտող դրամական ձև, սեր-
տորեն կապված է արտադրության ֆինանսական կողմի հետ։ Առանձին ձեռ-

նարկություններում կազմավորվող անհատական ինքնարժեքի մակարդակը որոշում է դրանց շահութաբերության մակարդակը։ Դժբախտաբար, ծախսերի բաշխման գոյություն ունեցող մեթոդները դեռևս կատարյալ չեն և առանձին դեպքերում խեղաթյուրում են ինքնարժեքի մեծությունը։ Անհրաժեշտ է չերտավորել ծախսերը և դրանք բաշխել ըստ հատկանիշների։

Պատահական չէ, որ իրացման ծախսերը մտցվել են տնտեսագիտական այդ կատեգորիայի սահմանման մեջ, քանի որ պրակտիկայում արտադրանքի ինքնարժեքի մեջ մտնում են ինչպես վարկավորման տոկոսները, այնպես էլ աշխատավարձի ավելացումները, խոտանից և այլ պատճառներից կրած կորուստները։ Ներկայումս իրավացիորեն հարց է ծագում այդ ծախսերը ինքնարժեքի մեջ արտացոլելու վերաբերյալ։ Ավելի նպատակահարմար կլինի դրանք սահմանել որպես «զուտ կորուստներ» և, հանելով ինքնարժեքի կազմից, բարդել ձեռնարկության շահույթի վրա։ Այս առաջարկությունը, իհարկե, վիճարկելի է։ Առաջին հայացքից այնպես կարող է թվալ, թե դա կնվազեցնի ձեռնարկության շահույթի գումարը։ Սակայն ձեռնարկության զուտ շահույթը չի փոփոխվի այն բանից, թե բոլոր ծախսերն ու կորուստները ինչ միջոցով են հանվում համախառն շահույթից։

Ինքնարժեքի յուրաքանչյուր ցուցանիշն ունի իր առանձին դերը և համապատասխանում է որոշ պահանջների։ Սակայն առանձին ցուցանիշների հնարավորությունները երբեմն գերագնահատվում են։ Մասնավորապես վերջին ժամանակներս իրավացի քննադատության է ենթարկվում ռուբլու ապրանքային արտադրանքի ծախսի ցուցանիշը (այս հարցը, մասնավորապես, քննել են Ց. Շեյյակինը, Վ. Գուբինը և ուրիշներ)։ Բանն այն է, որ համեմատելի ապրանքային արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկ իջեցում կարելի է կատարել առանց համապատասխան փոփոխություններ կատարելու 1 ռուբլու ապրանքային արտադրանքի ծախսի մեջ։ Եվ, ընդհակառակը, արտադրանքի ասորտիմենտի, գների թեկուզ փոքր փոփոխությունը, արտադրանքի տեսակարար կշռի բարձրացումը փոփոխում է մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի ծախսերի մակարդակը։ Այսպիսով, այդ ցուցանիշը հնարավորություն չի տալիս դատելու արտադրանքի ինքնարժեքի մակարդակի կամ նրա իջեցման տեմպերի մասին։ Իհարկե, անհրաժեշտ է ինքնարժեքի պլանը սահմանել ըստ մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի վրա կատարած ծախսի, բայց դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է ցուցանիշները պլանավորել ըստ համեմատվող ապրանքային արտադրանքի (1963 թվականի հունվարի 1-ից պլանավորման ու հաշվետվության մեջ մտցվել է համեմատվող ապրանքային արտադրանքի ցուցանիշը)։

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԱՄՈՐՏԻԶԱՑԻԱՆ ԵՎ ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ՖԻՆԱՆՍԱՎՈՐՈՒՄԸ

Վերջին տարիներս հիմնական ֆոնդերի վերարտադրության ֆինանսավորման ձևերի ու մեթոդների կատարելագործման հարցին տրվում է մեծ նշանակություն և այդ կապակցությամբ բավականին աշխույժ վիճաբանություն է տեղի ունենում մեր տնտեսագիտական գրականության մեջ։ Կապիտալ ներդրումների ֆինանսավորման սիստեմի բարելավումը այն տնտեսական լծակներից մեկն է, որի կատարելագործումը կնպաստի ներդրումների և հիմնական ֆոնդերի օգտագործման տնտեսական արդյունավետության բարձրացմանը։

Հիմնական ֆոնդերի ֆինանսավորման առանձին աղբյուրների տնտեսական էության, ֆինանսավորման սիստեմում նրանց գրաված տեղի ու զարգացման դինամիկայի բացահայտումը կարևոր դեր է խաղում ֆինանսավորման գործող սիստեմի կատարելագործման, ճկուն և արդյունավետ դարձնելու տարբերակում։

Սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում անընդհատ փոխվել է ամորտիզացիոն մասհանումների բաժինը ՍՍՌՄ կապիտալ ներդրումների ֆինանսավորման աղբյուրների կազմում։ Այդ փոփոխությունները պայմանավորվել են ինչպես բուն ամորտիզացիոն մասհանումների մեծությամբ, այնպես էլ կուտակման նպատակներով օգտագործվող ազգային եկամտի ծավալով։

Ստորև բերում ենք Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի և նրա մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության 7 տարիների տվյալները. աղյուսակը ցույց է տալիս, թե ամորտիզացիոն մասհանումներն ինչպիսի տեղ են գրավում կապիտալ ներդրումների մեջ։

Ամորտիզացիայի տեսակարար կշիռը ամբողջ կապիտալ ներդրումների մեջ (տոկոսներով).

| | 1957 | 1961 | 1962 | 1963 |
|---|---|---|---|---|
| 1. Հայկ ՍՍՌ ԺՏԽ (արդյունաբերություն) . . . . | 23,5 | 14,4 | 13,7 | 18,3 |
| Այդ թվում՝ | | | | |
| ա) մեքենաշինության ու հաստոցաշինության վարչություն | 14,0 | 8,0 | 10,2 | 15,7 |
| բ) էլեկտրատեխնիկական ու սարքաշինության վարչություն . . . . . | 15,2 | 14,0 | 13,6 | 15,3 |

Ամորտիզացիոն ֆոնդի բացարձակ մեծությունը և նրա մասնակցության տեսակարար կշիռը հիմնական ֆոնդերի վերարտադրության ֆինանսավորմանը պայ-

մանավորված են ամորտիզացիոն նորմաների մեծությամբ։ Վերջիններս սահմանվում են՝ ելնելով նյութական բարիքների արտադրության պրոցեսում հիմնական ֆոնդերի ինչպես ֆիզիկական, այնպես էլ բարոյական մաշվածության աստիճանից, այն հաշվով, որ մինչև աշխատանքի տվյալ միջոցի շարքից դուրս գալը, նրա արժեքն ամբողջապես փոխանցված լինի արդյունքին։ Հակառակ դեպքում կխախտվի հիմնական ֆոնդերի վերարտադրության նյութական հիմքը։

Ամորտիզացիան արտադրանքի ինքնարժեքի տարրն է, և նրա ոչ ճիշտ սահմանումը խեղաթյուրում է այնպիսի կարևոր ցուցանիշներ արդյունաբերական ձեռնարկություններում, ինչպիսիք են՝ արտադրանքի ինքնարժեքը, շահույթը, շահութաբերությունը, հատկապես արդյունաբերական այն ճյուղերում, որտեղ արտադրանքի ինքնարժեքի մեջ ամորտիզացիան մեծ տեսակարար կշիռ ունի։ Մեր ռեսպուբլիկայում ամորտիզացիան զգալի ազդեցություն է գործում արտադրանքի ինքնարժեքի վրա գունավոր մետալուրգիայի և շինանյութերի արդյունաբերության մեջ, որտեղ 1962 թվականին ամորտիզացիայի տեսակարար կշիռը համապատասխանաբար կազմել է՝ 10,2 և 8,5 տոկոս [1], մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքի մեջ 1963 թվականին՝ 7,8 տոկոս։

Ամորտիզացիան, որպես արտադրանքի ինքնարժեքի տարր, միակ ցուցանիշն է, որի միջոցով ուղղակի կապ է ստեղծվում, մի կողմից՝ հիմնական ֆոնդերի օգտագործման և, մյուս կողմից՝ արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական գործունեության ցուցանիշների միջև։ Ուստի անհրաժեշտ է, որ ամորտիզացիոն նորմաները այս տեսակետից ևս հիմնավորված լինեն։

Որպեսզի իմանանք, թե ամորտիզացիոն մասհանումները և, հետևաբար, ամորտիզացիոն նորմաները որքանով են արտացոլում հիմնական ֆոնդերի ռեալ մաշվածքը, ամորտիզացիան ո՛ր չափով է կատարել վերարտադրության ֆինանսավորման իր ֆունկցիան, պետք է վերլուծել հիմնական ֆոնդերի դուրսգրման (մաշվելու պատճառով) ֆինանսական հետևանքները։ Այդպիսով պարզ կդառնա, թե աշխատանքի տվյալ միջոցը, արտադրությունից դուրս գալու պահին, ինչ չափով է փոխանցել իր սկզբնական արժեքը արդյունքին։ Ուրիշ խոսքով կպարզվի, թե որքանով են հիմնավորված եղել սահմանված ամորտիզացիոն նորմաները։

Ահա թե ինչ ցույց տվեց մեր կողմից կատարված ուսումնասիրությունը Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի և նրա մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության մեջ։

Բերված աղյուսակը ցույց է տալիս շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի թողած ֆինանսական հետևանքները Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի արդյունաբերության և նրա մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության մեջ 1959—1962 թթ. (տոկոսներով՝ շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի սկզբնական արժեքի նկատմամբ).

---

[1] 1963 թ. ամորտիզացիայի նոր, բարձրացված նորմաների կիրառման կապակցությամբ ավելի է բարձրացել ամորտիզացիայի տեսակարար կշիռը արտադրանքի ինքնարժեքի մեջ։



| | | Շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերից կատարված ամորտիզացիոն մասհանումները | Շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի չփոխհատուցված արժեքը | Զուտ կորուստների ծավալը |
|---|---|---|---|---|
| 1. Հայկ. ՍՍՌ ԺՏԽ-ի արդյունաբերություն . . . | 1959 | 56,0 | 44,0 | 37.7 |
| | 1960 | 57.8 | 42,2 | 28,8 |
| | 1961 | 54,1 | 45,9 | 34,4 |
| | 1962 | 54,0 | 46,0 | 35,5 |
| ա) մեքենաշինության ու հաստոցաշինության վարչություն . . . . . | 1959 | 56,6 | 43,4 | 30,3 |
| | 1960 | 57,0 | 43,0 | 29.2 |
| | 1961 | 57,5 | 42,5 | 27,8 |
| | 1962 | 49,3 | 50,7 | 22.9 |
| բ) էլեկտրատեխնիկական ու սարքաշինության վարչություն . . . . . . | 1959 | 56,0 | 44,0 | 37,7 |
| | 1960 | 57,8 | 42,2 | 28,8 |
| | 1961 | 54,1 | 45,9 | 34,4 |
| | 1962 | 54,0 | 46,0 | 35,5 |

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի արժեքի 40—50 տոկոսը 1959—1962 թթ. մնացել է անփոխհատույց, այսինքն՝ հաշվառքված ամորտիզացիան չի ապահովել նրանց պարզ վերարտադրության ծավալը, որի պատճառով զգալի չափով վնասվել է սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունը։ Առաջացած զուտ կորուստները նույն տարիներին տատանվել են 27—37 տոկոսի (շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի սկզբնական արժեքի նկատմամբ) սահմաններում։

Հիմնական ֆոնդի սկզբնական արժեքի այդ չփոխհատուցված մասը, որը մասհանումների միջոցով չի կուտակվել ամորտիզացիոն ֆոնդի մեջ, սովետական որոշ տնտեսագետներ ժողովրդական տնտեսության համար համարում են զուտ կորուստ։ Ոմանք էլ գտնում են, որ ամորտիզացիայի միջոցով չմտնելով արտադրանքի ինքնարժեքի մեջ, դրանով իսկ արժեքի այդ մասի չափով վերջինս արհեստականորեն նվազում է, համապատասխանորեն ավելացնելով արդյունաբերական ձեռնարկությունների կուտակումները։ Այդ ճանապարհով հիմնական ֆոնդերի արժեքի չփոխհատուցված մասը նախօրոք օգտագործվել է ժողովրդական տնտեսության կարիքների համար։

Մեր կարծիքով վերջին տեսակետն ավելի ճիշտ է, բայց 1) դրանով խեղաթյուրվել են արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական գործունեության վերոհիշյալ կարևոր ցուցանիշները և 2) հիմնական ֆոնդերի արժեքը ոչ լրիվ է փոխհատուցվում նաև այլ պատճառներով—աշխատանքի միջոցի վատ օգտագործում, անբավարար խնամք, ցածրորակ կապիտալ վերանորոգում, ինչպես նաև արտադրությունից վաղաժամ դուրսգրումներ, որոնք եզակի չեն մեր արդյունաբերության մեջ։

Ահա մի քանի օրինակ Հայկական ՍՍՌ մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության ձեռնարկություններից։

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը մինչև 1963 թվականը չի օգտագործել 1959 թվականի Խարկովի փոքր ագրեգատային հաստոցների գործարանից ստացված երեք շաղափող հաստոցները՝ 28,2 հազար ռուբլու ընդհանուր արժողությամբ, իսկ ավտոպահեստամասերի գործարանը չի օգտա-

գործել 1960 թվականին Կույբիշևի դազգահաշինական գործարանից ստացած ԿՏ—38 Ա. մարկայի կտրող խառատային հաստոցը։

Նման փաստեր կան նաև էլեկտրաշարժիչների գործարանում և այլուր։

Ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկություններում կան մեքենաների ու սարքավորումների վաղաժամ արտադրությունից դուրսգրման փաստեր (կաբելի, վերամբարձ-տրանսպորտային սարքավորումների, ավտոպահեստամասերի գործարանը և այլն). ոչ ճիշտ շահագործման ու վատ խնամքի հետևանք են դրանք։ Այս ձևով առաջացած հիմնական ֆոնդերի ոչ լրիվ ամորտիզացիան կորուստ է հասարակության համար։

Այսպիսի կորուստների առաջացմանը մեծ չափով նպաստում էր հիմնական ֆոնդերի դուրսգրման ֆինանսական հետևանքների ձևակերպման այն արատավոր կարգը, որ գոյություն ուներ մեր ժողովրդական տնտեսության մեջ, մինչև 1963 թվականը. աշխատանքի միջոցները դուրս էին գրում պետության հաշվին՝ դրա համար չկրելով ոչ մի պատասխանատվություն։ Անկախ նրանից, թե այս կամ այն աշխատանքի միջոցը ինչ պատճառով է դուրս գրվել, դուրսգրումը ժամանակին է կատարվել թե ոչ, դուրս գրված աշխատանքի միջոցի արժեքի չափով պակասեցվում էր ձեռնարկությունների կանոնադիր ֆոնդը։

Հիմնական ֆոնդերի դուրսգրման ֆինանսական հետևանքների հաշվառման այս կարգը բացասաբար էր անդրադառնում ձեռնարկությունների արտադրական կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացման վրա, քանի որ աշխատանքի միջոցի վատ օգտագործումից առաջացած ամբողջ վնասը ծածկվում էր հասարակության հաշվին։

Այժմ այդ հարցը կարգավորվել է։ 1963 թվականից հիմնական ֆոնդերի դուրսգրման ֆինանսական հետևանքներն արտացոլվում են արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական գործունեության արդյունքների մեջ։ Դրանով բարձրացավ արդյունաբերական ձեռնարկությունների շահագրգռվածությունը և պատասխանատվությունը տեխնիկայի արդյունավետ օգտագործման համար, քանի որ դրան ավելանում են սեփական կուտակումները և, հետևաբար, ձեռնարկության ֆոնդին արվող հատկացումները։

Այսպես, ուրեմն, հիմնական ֆոնդերի անփոխհատույց մնացած արժեքի այն մասը, որն առկա տեխնիկայի վատ օգտագործման հետևանք է, հասարակության համար դառնում է զուտ կորուստ։ Սակայն հիմնական ֆոնդերի անփոխհատույց մնացած արժեքի մեծ մասը հետևանք է ամորտիզացիոն ցածր նորմաների։

Մինչև 1963 թվականը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ գործող ամորտիզացիոն նորմաների մեջ արտացոլված չէր ֆոնդերի բարոյական մաշվածության աստիճանը։ Դրա պատճառն այն էր, որ երկար ժամանակ իշխում էր այն տեսակետը, թե սոցիալիզմի պայմաններում ընդհանրապես տեղի չի ունենում տեխնիկայի բարոյական մաշվածություն՝ իր երկու ձևերով։ Սովետական տնտեսագետների տեսական աշխատություններում այս կոնցեպցիան հիմնավորվում էր նրանով, որ բարոյապես հնացած տեխնիկան կարելի է օգտագործել արտադրության համեմատաբար հետամնաց ճյուղերում։ Իսկ պրակտիկայում այն դրսևորվում էր ամորտիզացիոն մասհանումների վերաբերյալ պաշտոնական հրահանգներում։

Ներկայումս, սոցիալիզմի պայմաններում, սովետական տնտեսագիտական գրականության մեջ աշխատանքի միջոցի բարոյական մաշվածության առ-



կայության մասին երկու կարծիք չկա, հետևաբար և հաղթահարված է տեխնիկական առաջադիմության ճանապարհին ընկած մի լուրջ խոչընդոտ։

Սակայն այժմ էլ գոյություն ունի մի տեսակետ, որի համաձայն աշխատանքի միջոցի բարոյական մաշվածության աստիճանը չպետք է արտացոլվի ամորտիզացիոն նորմաների մեջ։ Ըստ էության այս տեսակետը շատ քիչ բանով է տարբերվում սոցիալիզմի պայմաններում բարոյական մաշվածության առկայությունը ժխտող տեսակետից։ Ինչպես տեսականորեն, այնպես էլ գործնականում որևէ արժեք ներկայացնո՞ւմ է արդյոք բարոյական մաշվածության առկայության ընդունումը, երբ ժխտվում է նրա հաշվառման անհրաժեշտությունը։ Սոցիալիստական տնտեսությանը, ընդլայնված վերարտադրությանը վնաս էր հասցնում ոչ թե բարոյական մաշվածության առկայությունը ընդունող տեսությունը, այլ այդ տեսության գործնական կիրառումը, այսինքն՝ բարոյական մաշվածությունը չէր արտացոլվում ամորտիզացիոն նորմաներում։

Եթե աշխատանքի միջոցի բարոյական մաշվածությունն ընդունելուց հետո այն չարտացոլվի ամորտիզացիոն նորմաների մեջ, ապա այսուհետև էլ ամորտիզացիոն մասհանումները չեն բավականացնի հիմնական ֆոնդերի լրիվ վերարտադրության ֆինանսավորմանը, արդյունաբերական ձեռնարկություններում այսուհետև ևս կխախտվի տնտհաշվարկը։

Բարեբախտաբար տնտեսական հարցերին նվիրված հայտնի բանավեճի ժամանակ սովետական տնտեսագետների մեծամասնությունը մերժեց այդ տեսակետը, 1963 թվականին կիրառված ամորտիզացիոն նոր դիֆերենցված նորմաների մեջ արտացոլվեց տեխնիկայի բարոյական մաշվածության աստիճանը, որի համար անհրաժեշտ է նկատի ունենալ բարոյական մաշվածության առանձին ձևերը։

Կարլ Մարքսը կապիտալիզմի պայմաններում տարբերում էր տեխնիկայի բարոյական մաշվածության երկու ձև՝ առաջին և երկրորդ։ Առաջին ձևը կապված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ՝ արտադրության միջոցներ արտադրող ճյուղերում։ Դրա հետևանքով աշխատանքի միջոցի վերարտադրության արժեքը շարունակ պակասում է ավելի վաղ արտադրված միևնույն կոնստրուկցիայի կամ տիպի մեքենաների համեմատությամբ։ Նոր մեքենաները, լինելով ավելի էժան, ավելի պակաս արժեք են փոխանցում արտադրանքին և, հետևաբար, վերջինս ավելի էժան է, քան հին մեքենայի օգնությամբ պատրաստված համանման արդյունքը։ Դրանց միջև եղած տարբերությունն էլ կազմում է տեխնիկայի բարոյական մաշվածության առաջին ձևը։

Երկրորդ ձևը լինում է այն ժամանակ, երբ երևան է գալիս մի այլ կոնստրուկցիայի կամ տիպի ավելի արտադրողական մեքենա, որի կիրառմամբ մեծանում է տնտեսական արդյունավետությունը։ Այս պայմաններում հին մեքենայի հետագա կիրառումը դառնում է տնտեսապես աննպատակահարմար, քանի որ նոր մեքենայի կիրառումը հանգեցնում է կենդանի ու առարկայացած աշխատանքի զգալի խնայողության։

Երկու դեպքում էլ, երբ նոր մեքենաների օգնությամբ պատրաստվող արտադրանքը դառնում է տիրապետող և, հետևաբար, նրանց արժեքը դառնում է հասարակայնորեն անհրաժեշտ ծախս, ապա հին մեքենաներ օգտագործող կապիտալիստները, վախենալով սնանկանալուց, ստիպված են լինում ընդհատել այդպիսի մեքենաների հետագա կիրառումը, չնայած դրանց տեխնիկական հնարավորությունները դեռևս սպառված չեն։

Այսպիսով կապիտալիզմի պայմաններում տեխնիկայի բարոյական մաշվածության թե՛ առաջին և թե երկրորդ ձևի ժամանակ ընդհատվում է հին աշխատանքի միջոցի ֆիզիկական մաշվածության պրոցեսը և դրանով կրճատվում նրանց ծառայության ժամկետները։

Հետևաբար, աշխատանքի միջոցի բարոյական մաշվածության հաշվառման ժամանակ պետք է նկատի ունենալ ֆիզիկական մաշվածության նկատմամբ նրա ունեցած փոխհարաբերությունը և այն, որ բարոյական մաշվածության վերին սահմանը ֆիզիկական մաշվածությունն է։ Ուստի, տարածական տեսակետից, աշխատանքի միջոցի բարոյական մաշվածությունն սկսվում է այնտեղ, որտեղ ընդհատվում է ֆիզիկական մաշվածությունը։

Սոցիալիզմի պայմաններում բարոյական մաշվածության առաջին ձևի առկայությունը չի ընդհատում աշխատանքի միջոցի ֆիզիկական մաշվածության պրոցեսը, որովհետև դեռևս անհրաժեշտություն չկա հին տեխնիկայի հետագա կիրառումից հրաժարվելու, քանի որ դրանից հասարակությունը ոչ մի վնաս կամ կորուստ չի ստանում։

Տեխնիկայի բարոյական մաշվածության առաջին ձևի պայմաններում էլ հին տեխնիկան շարունակում է ֆիզիկական մաշվածության ձևով իր արժեքը կուտակել ամորտիզացիոն ֆոնդի մեջ։

Այս է պատճառը, որ մեր կարծիքով, սոցիալիզմի պայմաններում չի կարելի դրա հաշվառման հարցը շոշափել։

Սովետական այն տնտեսագետները, որ հանդես են գալիս բարոյական մաշվածության առաջին ձևի հաշվառման օգտին, դրանով անուղղակի ընդունում են, որ աշխատանքի միջոցը կարող է միաժամանակ ենթարկվել թե՛ ֆիզիկական և թե բարոյական մաշվածության։

Սրանով մենք, անշուշտ, չենք ժխտում, որ աշխատանքի միջոցի բարոյական մաշվածության առաջին ձևը արտադրության միջոցներ արտադրող ճյուղերում կապված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։ Ցանկանում ենք միայն նշել, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը այն դեպքում է հասցնում բարոյական մաշվածության, երբ այն ընդհատում է աշխատանքի միջոցի ֆիզիկական մաշվածության պրոցեսը կամ, որ միևնույնն է, կրճատում է աշխատանքի միջոցի ծառայության ժամկետները։

Սոցիալիստական ժողովրդական տնտեսության մեջ բարոյական մաշվածության առաջին ձևի պայմաններում աշխատանքի միջոցի արժեքը չի մնում անփոխհատույց, սոցիալիստական վերարտադրությունը չի տուժում։

Դրությունը միանգամայն այլ է տեխնիկայի բարոյական մաշվածության երկրորդ ձևի ժամանակ։ Երբ արտադրության մեջ կիրառվում են նոր կոնստրուկցիայի ավելի արտադրողական ու խնայողաբեր տեսակներ, ապա հին տեխնիկայի հետագա կիրառումը դառնում է աննպատակահարմար, հասարակության կորուստն այստեղ ակնբախ է և պետք է փոխհատուցվի։ Ուստի, աշխատանքի միջոցի բարոյական մաշվածության երկրորդ ձևը պետք է արտացոլվի ամորտիզացիոն մասհանումների նորմաների մեջ։

Այսպիսով բարոյական մաշվածության երկրորդ ձևը հավասար է տվյալ աշխատանքի միջոցի ծառայության սահմանված ժամկետի և, փաստորեն, շահագործման մեջ գտնված տարիների միջև եղած տարբերության ու ամորտիզացիոն մասհանումների տարեկան գումարի արտադրյալին։

Այժմ անհրաժեշտ է պարզել, թե ամորտիզացիոն մասհանումները որ-



չափով են մասնակցում հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորմանը, ինչպիսի գործոններով է պայմանավորված այդ մասնակցության աստիճանը և որոնք են նրա զարգացման տենդենցները։

Արդյունաբերական առանձին ճյուղերի ու ձեռնարկությունների մասշտաբով կարելի է ցույց տալ ամորտիզացիոն մասհանումների մասնակցության սահմանները հիմնական ֆոնդերի ինչպես պարզ, այնպես էլ ընդլայնված վերարտադրությանը։ Դրա համար տարեկան ամորտիզացիոն մասհանումների գումարից պետք է հանել նույն տարում շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի սկզբնական արժեքը և կապիտալ վերանորոգման համար ծախսված միջոցները։ Ստացված գումարը ցույց կտա ամորտիզացիոն ֆոնդի մասնակցության ծավալը հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորմանը։

Այս առումով մենք ուսումնասիրել ենք Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության առանձին վարչությունների 1959—1962 թվականների աշխատանքը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ամենամյա ամորտիզացիոն մասհանումներն զգալի չափով գերազանցում են հիմնական ֆոնդերի պարզ վերարտադրության պահանջները։ Ընդ որում ամորտիզացիոն ֆոնդերից գնալով ավելի ու ավելի մեծ գումարներ են հատկացվում հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրությանը։ Այսպես, օրինակ, 1959—1962 թթ. մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության ձեռնարկություններում ամորտիզացիոն մասհանումները գերազանցում են հիմնական ֆոնդերի պարզ վերարտադրության պահանջները 1,26—2,60 տոկոսի սահմաններում (գործակիցների վերածած), իսկ էլեկտրատեխնիկական ու սարքաշինության վարչության ձեռնարկություններում՝ 1,08—2,68 տոկոսի սահմաններում։

Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ կապիտալ վերանորոգմանը հատկացվող միջոցներն առանձնացնելուց հետո ամենամյա ամորտիզացիոն մասհանումների 50 տոկոսից ավելին՝ մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության գծով և 60—70 տոկոսից ավելին՝ էլեկտրատեխնիկական ու սարքաշինության վարչության գծով, տրամադրվում են հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորմանը։

Երբ վերլուծում ենք շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի ֆինանսական հետևանքները, պարզվում է, որ դրանցից կատարված ամորտիզացիան չի ապահովել հիմնական ֆոնդերի նույնիսկ պարզ վերարտադրության ֆինանսավորումը և դրանց արժեքի զգալի մասը մնացել է անփոխհատույց, որի պատճառով խախտվել է հիմնական ֆոնդերի վերարտադրության նյութական հիմքը և տնտհաշվարկը արդյունաբերական ձեռնարկություններում։ Մյուս կողմից, երբ համեմատում ենք ամենամյա ամորտիզացիոն մասհանումները պարզ վերարտադրության պահանջների հետ, ստացվում է, որ ամորտիզացիոն մասհանումների 50 տոկոսից ավելին հատկացվում է ընդլայնված վերարտադրության ֆինանսավորմանը։

Առաջին հայացքից կարող է թվալ, թե այստեղ հակասություն կա։ Իրականում այդ նշանակում է.

1. Հիմնական ֆոնդերի վերարտադրության ֆինանսավորման աղբյուրների կազմում ամորտիզացիոն մասհանումների գումարների մեծ մասը հատկաց-

*վում է ոչ թե պարզ, ինչպես ընդունված է տնտեսագիտական գրականության մեջ, այլ ընդլայնված վերարտադրության ֆինանսավորմանը և*

*2. ամորտիզացիոն մասհանումների ծավալը հիմնական ֆոնդերի վերարտադրության ֆինանսավորման աղբյուրների կազմում, մնացած հավասար պայմաններում, պայմանավորված է ո՛չ միայն բուն ամորտիզացիոն նորմաների մեծությամբ, այլև ուրիշ գործոններով:*

*Հիմնական ֆոնդերի արժեքի փոխհատուցումն ունի իր առանձնահատկությունները. ընդլայնված վերարտադրության և տեխնիկական առաջադիմության պայմաններում հիմնական ֆոնդերի փոխհատուցումը արժեքով միաժամանակ հանդիսանում է արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական կարողությունների ընդլայնում:*

*Հիմնական ֆոնդերի շրջապտույտն սկսվում է դրանց արտադրական ձևը դրամականի վերածվելով: Մինչև դրանց շրջապտույտի վերջին ստադիան, այսինքն՝ դրամական ձևը կրկին արտադրականի վերածվելը, ընկած է հարաբերականորեն երկարատև ժամանակաշրջան: Սակայն այդ չի նշանակում, թե ամորտիզացիոն ֆոնդը անշարժ կմնա մինչև աշխատանքի տվյալ միջոցի շրջապտույտի ավարտը: Այս առթիվ Կ. Մարքսը գրել է. «Հիմնական կապիտալի այն մասը, որ ամեն տարի հաշվի է առնվում որպես մաշվածություն և մտնում է արդյունքի արժեքի մեջ, իրականում դուրս չի գալիս սպառումից»* (К. Маркс, Теория прибавочной стоимости, ч. II, стр. 484)*: Այդ պատճառով մաշված հիմնական ֆոնդերի դրամական արժեքի հետադարձ վերածումը արտադրողականի՝ արտադրական կարողությունների ընդլայնման հնարավորություն է ստեղծում: Ուստի, ամորտիզացիոն մասհանումները, մինչև տվյալ աշխատանքի միջոցի նատուրալ փոխհատուցման վրա հասնելը կարող են ծառայել «...այն բանին, որպեսզի ընդլայնվի գործը կամ լինեն կատարելագործումները, որը կուժեղացնի նրանց արդյունավետությունը: Այսպիսով ժամանակի որոշակի ընդհատումից հետո կկատարվի վերարտադրություն, ընդսմին, եթե դիտելու լինենք հասարակության տեսակետից, այդ վերարտադրությունը կլինի ընդլայնված մասշտաբով. ընդլայնումը կլինի էքստենսիվ, եթե ընդլայնվում է արտադրության հրապարակը, ընդլայնումը կլինի ինտենսիվ, եթե կիրառվում են ավելի արդյունավետ միջոցներ: Ընդլայնված մասշտաբով այսպիսի վերարտադրությունը բխում է ոչ թե այն կուտակումներից, որոնք պայմանավորված են հավելյալ արժեքը կապիտալի վերածումով, այլ արժեքի հետադարձ վերածումով, որն անջատվելով հիմնական կապիտալի մարմնից, վեր է ածվում նոր, լրացուցիչ հիմնական կապիտալի...»* (К. Маркс, Капитал, т. II, 1960, стр. 168):

*Այսպիսով, աշխատանքի միջոցի արժեքն աստիճանաբար փոխանցվում է պատրաստի արտադրանքին, սակայն նրանց նատուրալ փոխհատուցումը անմիջապես չի կատարվում: Ամորտիզացիոն ֆոնդն աճում է աշխատանքի միջոցի արժեքի սպառման համեմատ (արդյունաբերության պրոցեսում): Այստեղից էլ առաջանում է ժամանակավորապես ազատ դրամական ֆոնդ, որը մինչև իր կանխորոշված նպատակներով օգտագործելը, կարելի է տրամադրել հիմնական ֆոնդերի ընդլայնմանը: Այս դեպքում տեղի է ունենում, Մարքսի արտահայտությամբ, արտադրության էքստենսիվ ընդլայնում, այսինքն՝ մեծանում է արտադրամասը, օգտագործվող աշխատանքի միջոցների քանակն ավելանում է միևնույն ռեալ արժեքի մեծության սահմաններում. օրինակ, եթե*



*սոցիալիստական շինարարության որևէ տեղամասում միաժամանակ գործում են 10 մեքենա 3 տարի ծառայության ժամկետով և յուրաքանչյուրը 3 հազար ռուբլի արժողությամբ, և եթե դրանցից կատարվող ամորտիզացիոն մասհանումներն օգտագործվեն միայն նույն տիպի նոր մեքենաների ձեռք բերման համար, ապա արդեն երկրորդ տարում արտադրության մեջ գործող մեքենաների թիվը կհասնի 13-ի, իսկ երրորդ տարում՝ 17-ի, առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների:*

*Սակայն դժվար չէ նկատել, որ ամորտիզացիոն մասհանումները հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության նպատակներով օգտագործելը (վերևում ցույց տրված եղանակով) հնարավոր է դառնում միայն ազգային եկամուտը կուտակման նպատակներով ավելի ու ավելի լայն մասշտաբներով ընդգրկելու պայմաններում: Միայն դրա շնորհիվ է հնարավոր արտադրության ընդլայնման վերոհիշյալ գործոնը դարձնել մշտական: «...այնտեղ, որտեղ կիրառվում է շատ հաստատուն կապիտալ և, հետևաբար, նաև շատ հիմնական կապիտալ, վերջինիս մաշվածքը փոխհատուցող արդյունքի արժեքի մասը իրենից ներկայացնում է կուտակման ֆոնդ, որը հնարավոր է օգտագործել նրանց կողմից, ովքեր այն կիրառում են, նոր հիմնական կապիտալի (կամ շրջանառու կապիտալի) մեջ ներդնելու համար, ընդսմին կուտակման այդ մասի չափով չի կատարվում ոչ մի հանուրդ ազգային եկամտից»* (К. Маркс, Теория прибавочной стоимости, ч. II, стр. 485)*: Այսպիսով, Մարքսը ամորտիզացիայի օգտագործման հնարավորությունը կուտակման նպատակներով կապում էր հաստատուն կապիտալի և նրա կազմում հիմնական կապիտալի մեծության հետ: Դրա համար էլ նա այնուհետև նշում է. «...կուտակման այսպիսի ֆոնդ գոյություն չունի արտադրության այն աստիճաններում և այն ազգերի մոտ, որտեղ չկա մեծ հիմնական կապիտալ» (նույն տեղում):*

*Հետևաբար, ազգային եկամտի կուտակման ֆոնդերից որքան ավելի շատ միջոցներ են հատկացվում հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրությանը, այնքան էլ մեծանում է ամորտիզացիոն մասհանումների ծավալը և օգտագործման հնարավորությունը կուտակման նպատակներով: Ուրեմն, հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորման աղբյուրների կազմում ամորտիզացիոն մասհանումների մեծությունն զգալի չափով կախված է կուտակման ֆոնդերի օգտագործման մասշտաբներից:*

*Ուստի, երբ հիմնական ֆոնդերի դուրսգրման ֆինանսական հետևանքները ցույց են տալիս, որ դրանց արժեքը լրիվ չի փոխհատուցվել և, հետևաբար, ամորտիզացիոն նորմաները ցածր են սահմանվել, ու ամենամյա ամորտիզացիոն մասհանումները գերազանցում են հիմնական ֆոնդերի պարզ վերարտադրության մակարդակը, ապա արդյունաբերության այս կամ այն ճյուղում, կամ առանձին վերցրած արդյունաբերական ձեռնարկություններում հիմնական ֆոնդերի նորացման գործակիցը մեծ չափով գերազանցում է նրանց դուրսգրման գործակցին:*

*Այդ պրոցեսը հաստատվում է նաև Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության օրինակով: Մեր բերած աղյուսակը ցույց է տալիս նոր շարք մտած և արտադրությունից մաշվելու պատճառով դուրս եկած հիմնական ֆոնդերի հարաբերությունը Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերու-*

թյան մեջ 1959—1962 թթ. (տոկոսներով՝ տվյալ տարվա հիմնական ֆոնդերի արժեքի նկատմամբ)։

| | | 1959 | 1960 | 1961 | 1962 |
|---|---|---|---|---|---|
| Մեքենաշինության ու հաստոցաշինության վարչություն | Նոր շարք մտած հիմնական ֆոնդերի արժեքը . . . . . . . . | 19,7 | 16.8 | 15,9 | 18,8 |
| | Շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի արժեքը | 1,5 | 0,5 | 1,3 | 0.7 |
| | Տարբերությունը | +18,2 | +16,3 | +14,6 | +18,1 |
| Էլեկտրատեխնիկական ու սարքաշինության վարչություն | Նոր շարք մտած հիմնական ֆոնդի արժեքը | 23,7 | 22.2 | 20.3 | 32,0 |
| | Շարքից դուրս եկած հիմնական ֆոնդի արժեքը . . . . . . | 2.8 | 1,5 | 1,1 | 2,0 |
| | Տարբերությունը | -+20,9 | +20,7 | +19,2 | +30,0 |

Աղյուսակից երևում է, որ հիմնական ֆոնդերի նորոգման գործակիցը շարքից դուրս եկած ֆոնդերին գերազանցում է. մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության գծով 14,3—18,2 տոկոսի սահմաններում, իսկ էլեկտրատեխնիկական ու սարքաշինության վարչությունում՝ 20—30 տոկոսի սահմաններում։

Այսպիսով, կատարված ուսումնասիրությունը ցույց տվեց, որ

1. ընդլայնված վերարտադրության պայմաններում ամորտիզացիոն մասհանումներն ավելի ու ավելի մեծ մասշտաբներով են մասնակցում հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորմանը.

2. ամորտիզացիոն նոր նորմաների կիրառումը, որոնց մեջ հաշվի է առնված աշխատանքի միջոցի բարոյական մաշվածության աստիճանը, է՛լ ավելի կբարձրացնի ամորտիզացիոն մասհանումների բացարձակ ծավալը և դերը հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորման գործում.

3. ամորտիզացիայի մասնակցությունը հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության ֆինանսավորման գործին մեծ չափով պայմանավորված է ազգային եկամտի կուտակման ֆոնդի օգտագործման մասշտաբներով։ Ուստի, անհրաժեշտ է ուսումնասիրել դրանց միջև եղած փոխհարաբերությունների ու զարգացման օրինաչափությունները։ Այդ կարևոր նշանակություն կունենա կապիտալ ներդրումների պլանավորման և տնտեսագիտական այլ հարցերի լուծման գործում։

Կ. ԱԲԳԱՐՅԱՆ

# Արվեստների ԱՄԲԻՈՆ

## ԼՈՒՐՋ ՔԱՅԼ ՆՈՐ ՀԵՐՈՍԻ ՈՐՈՆՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Գ. ՀԱՅՐՅԱՆ

Վերջերս ավարտվեց Ստ. Զորյանի երկերի ժողովածուի տասնհատորյակի հրատարակությունը։ Ժողովածուի 8-րդ հատորում զետեղվել է «Ամիրյանների ընտանիքը» վեպը։ Այդ երկը գրվել է ավելի քան չորս տասնամյակ առաջ և ամբողջությամբ լույս է տեսնում միայն այժմ։ Ուշացման գլխավոր պատճառը հեղինակը իրավացիորեն համարում է այն օրերի «գրական քննադատության քմահաճ ու նեղմիտ վերաբերմունքը»։

Հիրավի, կարելի է պատկերացնել, թե ինչպիսի ծանր կացության մեջ կընկներ նրա հեղինակը, եթե վեպը տպագրվեր այն ժամանակ։ Այդ ստեղծագործությունն էլ, անկասկած, կարժանանար այն բախտին, որին մի քանի վայ քննադատների կողմից արժանացան նույն թեմայով գրված «Հեղկոմի նախագահն» ու «Գրադարանի աղջիկը»։ Ի՜նչ անհիմն ու անհեթեթ մեղադրանքներ ասես, որ նրանք չէին բարդում հեղինակի վրա, պղտորում ազնիվ ու զգայուն գրողի հոգին։

Պետք է սրտանց ափսոսալ «Ամիրյանների ընտանիքի» տպագրությունը ձգձգվելու համար։ Չէ՛ որ նորաստեղծ սովետահայ գրականության առաջին մեծածավալ ստեղծագործությունն է այն, քաղաքացիական պատերազմի անմիջական ... Սակայն վեմոռաց օրերի գեղարվեստական վերարտադրման առաջին փորձը։ Սակայն վեպի արժեքը միայն դրանով չի սահմանափակվում։ Իհարկե, այս կամ այն նշանակալից երևույթի, իրադարձության մասին առաջինն արձագանքելն ինքնին քիչ բան չէ, բայց առավել կարևորը ինչպես արձագանքելն է։ Ստ. Զորյանի «Ամիրյանների ընտանիքը» գեղարվեստական լուրջ ստեղծագործություն է, որը, եթե հնարավոր լիներ հրատարակել ժամանակին, անտարակույս, կարող էր սաշոշափելի հետքեր թողնել մեր գրականության զարգացման ընթացքի վրա։ Սակայն ինչ էլ որ լինի, «Ամիրյանների ընտանիքը» չի կարող դուրս մնալ մեր գրականության ընտանիքից, քանզի այն այդ ընտանիքի հարազատ զավակներից է, որը երկար բացակայությունից հետո ահա նորից տուն է վերադարձել։ Ուրեմն գրաքննադատության պարտքն է ողջունել մեր գրականության այդ «անհայտ կորած» զավակի վերադարձը և ապա՝ որոշել նրա տեղը։

«Ամիրյանների ընտանիքը» սկզբում կոչվել է «Քսանմեկ թիվ»: Վերնագիրը փոխելուց թերևս չի շահել վեպը: Եվ, իսկապես, հարցը բնավ չի սպառվում գյուղատնտես Օհաննեսի և նրա որդու՝ կոմունիստ Արամի փոխհարաբերությամբ. հայտնի է, որ շատ կարևոր իրադարձություններ տեղի են ունենում «դրսում», որոնք ոչ մի կերպ հնարավոր չէ տեղավորել Ամիրյանների ընտանիքի շրջանակներում: Ահա թե ինչու չի կարելի համաձայնել նաև գրականագետ Խ. Սարգսյանի այն տեսակետի հետ, թե ««Ամիրյանների ընտանիքը» մի ընտանիքի պատմություն չէ, այլ երկու. գյուղատնտես Ամիրյանի և գինեգործ, բամբակագործ ու տնատեր Գաբրիել Զալյանի» (Սովետական գրականություն, 1964 թ., № 8, էջ 121):

Այս տրամաբանությամբ կարելի է ավելի հեռուն գնալ և ասել, որ վեպը ոչ միայն երկու, այլ երեք և ավելի ընտանիքների պատմություն է, քանի որ Ամիրյաններից ու Զալյաններից բացի այնտեղ այս կամ այն չափով խոսվում է նաև այլ ընտանիքների մասին: Իրականում Ստ. Զորյանի վեպը մեկ կամ մի քանի ընտանիքների սովորական պատմություն չէ: Այն ամենից առաջ հեղափոխության նկատմամբ հասարակական տարբեր դասակարգերի ու խավերի ցուցաբերած վերաբերմունքի պատմությունն է, ավելի ստույգ՝ հայ ժողովրդի ազատագրական պայքարի այդ բարդ ու դժվարին ժամանակաշրջանում իրարամերժ ուժերի—հնի ու նորի պայքարի գեղարվեստական պատմությունն է:

## ԿԱՍԿԱԾՆԵՐԸ ՃՇՏՎՈՒՄ ԵՆ

...Արամը՝ գյուղատնտես Օհաննես Ամիրյանի որդին, սովորում էր Մոսկվայում, բայց արդեն երկու տարուց ավելի էր, ինչ նրանից ոչ մի լուր չկար: Ու հանկարծ մի օր Ռոստովից հեռագիր է ստացվում, թե գալիս է... Հարազատները ամեն օր կայարան են գնում, բայց Արամը տուն է հասնում միայն հեռագրից ութ օր անց, այն էլ հանկարծակի և տունը լցնում աննկարագրելի ուրախությամբ: Տատը, մայրը, հայրը, քույրը, կրտսեր եղբայրը ցնծության մեջ են, նրանք իրենց երջանիկ են զգում, որ վերջապես եկել է Արամը, որին «գրեթե կորած» էին համարում: Նա բավականաչափ փոխվել էր, հանել էր ուսանողական զգեստը, «չկար ծնոտի փոքրիկ միրուքը, չկային և սև, բարակ բեղերը...»:

Սակայն, «խառը ժամանակներ էին» և հորը՝ ծերունի Օհաննեսին, ամենից շատ հուզում էր մի ուրիշ հարց. նա ժամ առաջ ուզում էր իմանալ որդու ներքին աշխարհում կատարված փոփոխությունների, ավելի ճիշտ՝ նրա քաղաքական համոզմունքների մասին:

Արամի հետ ժամանած Նիկոլի կաշվե կոմունարկան՝ կարմիր աստղով, համարձակ վարքագիծը, անսքող հումորը, պարզ ասած, բնավ դուր չէին գալիս ծերունուն, բայց նա այժմ միայն անբավականությամբ սեղմում էր շուրթերը...

Արամի դիրքը հետաքրքրում էր նաև գործարանատեր Գաբրիել Զալյանին, հոր դպրոցական շրջանի ընկերոջն ու երկար տարիների մտերմին: Զալյանը Արամի հետ ունեցած իր առաջին իսկ զրույցից հետո սկսում է լրջորեն անհանգստանալ, կասկածել և ավելորդ չի համարում այդ մասին տեղյակ պահել Օհաննեսին: «—Ուրիշ ժամանակ այսպիսի բաների մասին չէի խոսի, իհարկե,— ասում է նա,— բայց հիմա ուրիշ է... ինչ երկարացնեմ, Օհաննես, ուզում եմ



իմանալ որդիդ ի՞նչ է... ի՞նչ գաղափարի տեր է»: Եվ ահա մի օր էլ Զալյանը հայտարարում է՝ Արամը «ինքցանէ է», այսինքն՝ բոլշևիկ է:

Օհաննեսն, իհարկե, կցանկանար հերքել գործարանատիրոջ ասածը, բայց կարո՞ղ էր արդյոք, մի՞թե, իսկապես, Արամը բոլշևիկ է: Իր կասկածանքը փարատելու և «գաղտնիքը» վերջնականապես պարզելու համար ծերունին որոշում է խոսել որդու հետ: Եվ երբ Արամը չի թաքցնում իր բոլշևիկ լինելը, նա հուզվում է, բայց աշխատում է նորից հանգիստ ձևանալ: Ամիրյանը չի ցանկանում, որ իր որդին բոլշևիկ լինի: Ճիշտն ասած, նա բոլշևիկներին չի համակրում:

Բոլշևիկներին չեն սիրում նաև Զալյանը, Տեր-Մեսրոպը, Կամիտետ-Կարապետը և ուրիշներ: Սակայն նրանցից յուրաքանչյուրն իր ատելությունը դրսևորում է յուրովի:

Ամիրյանի հակակրանքը արդյունք է բոլշևիզմի էության վերաբերյալ նրա ունեցած սխալ ըմբռնումների: Պատահական չէ, որ նա որդու հետ զրուցելիս հայտարարում է, թե բոլշևիկները չեն ընդունում «ոչ հայրենիք, ոչ ազգություն, ոչ սեփականություն»: Գյուղատնտեսը հին ինտելիգենցիայի այն ներկայացուցիչներից է, որը դեռ չի կարողացել հասկանալ երկրում կատարված մեծ հեղաբեկման իմաստը և շարունակում է հավատալ բոլշևիզմի թշնամիների հորինած զրպարտանքներին: Այդ մոլորությունը նրան վերջ ի վերջո հասցնում է կործանման:

Բոլշևիզմի նկատմամբ ունեցած իր ատելությունն այլ ձևով էր արտահայտում Գաբրիել Զալյանը: Նոր կարգերը մահացու հարվածներ էին հասցրել նրան: Ոչ հեռավոր անցյալում երկրի այդ ամենաունևոր մարդկանցից մեկը այսօր զրկվել է հարստությունից ու փառքից. ի՞նչ անի, որ չկատաղի: Նրան ծաղր ու ծանակի են ենթարկում նույնիսկ հասարակ զինվորները, որոնց ինքը կար ժամանակ, որ մարդու տեղ էլ չէր դնում: Զալյանին բարկացնում, հավասարակշռությունից հանում են նույնիսկ պատանիների երգը, ուրախ ծիծաղը: Այս ամենը ծանր էր ու անտանելի, բայց աշխատում էր դիմանալ: Նա չհետևեց երկրի մյուս հարուստների օրինակին և անմիջապես չմեկնեց արտասահման (փախավ փետրվարյան ավանտյուրայից հետո), որովհետև հավատացած էր, որ «բոլշևիկները էսօր կան, էգուց չկան»: Եվ ահա ուր որ է «...Անգլիան, Ֆրանսիան նրանց հախիցը կգան և ամեն ինչ լավ կլինի առաջվա պես...»: Բացի դրանից Գաբրիել Զալյանը մի ուրիշ հոգս էլ ուներ. նա չէր կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ իր միակ աղջիկը կարող է դառնալ բոլշևիկ Արամի կինը: Ո՛չ, Նվարդն այդ չի անի, ինքը ոչ մի դեպքում թույլ չի տա...

Կամիտետ-Կարապետը նախկին խմբապետ է, նա ևս ատելությամբ էր լցված սովետական իշխանության դեմ և ամեն օր խլուրդի պես քանդում էր այդ իշխանության հիմքերը. նա զրպարտիչ լուրեր էր տարածում բոլշևիկների հասցեին և պատրաստվում նրանց դեմ զենքը ձեռքին նորից կռվելու: Եվ կռվեց, երբ օրը եկավ:

Տեր-Մեսրոպը զայրացած էր, որովհետև բոլշևիկները դեմ լինելով կրոնին, նրա ասելով, քանդելու են եկեղեցիները, վանքերը, խրախուսելու են անբարոյականությունը և այլն:

Ահա ինչպիսի մարդկանցով էր շրջապատված Ամիրյանը: Պարզ է, իհարկե, ինչ էլ որ աներ նա, միևնույն է, չէր կարող զերծ մնալ սովետական կարգերի այս երդվյալ թշնամիների կործանարար ազդեցությունից:

Պետք է ասել, որ ի դեմս Արամի այդ մարդիկ տեսնում էին իրենց ուժեղ հակառակորդին և հասկանում էին, որ նրան ընկճելն այնքան էլ դյուրին բան չէ։ Ահա թե ինչու նրանք շատ կարևոր էին համարում Ամիրյանին բաց չթողնել իրենց աչքանից, թունավորել այդ մարդու հոգին և ապա բացահայտ կռվի հանել հարազատ որդու դեմ։

Ինչպես տեսնում ենք, Արամին վիճակված էր հաղթահարել երկու կարգի դժվարություն՝ կռիվ մղել թե՛ «արտաքին» և թե «ներքին» թշնամիների դեմ։ Այլ խոսքով ասած, նա պարտավոր էր անողոք լինել ո՛չ միայն Զալյանի, Կամիտետ-Կարապետի, Տեր-Մեսրոպի և սրանց նմանների, այլև հարազատ հոր նկատմամբ։ Կար նաև մի այլ հանգամանք։ Դեռ մինչև Մոսկվա մեկնելը Արամը սիրում էր Գաբրիել Զալյանի աղջկան՝ Նվարդին։ Այդ մտերմությունը հայտնի էր նաև նրանց ծնողներին։ Իսկ այժմ, երբ ինքը գտնվում է հակառակորդ բանակում, ի՞նչ ընթացք կստանա իրենց հետագա փոխհարաբերությունը։ Արամը համոզված էր, որ Զալյանը ամեն կերպ կձգտի խափանել իրենց ամուսնությունը, իսկ Նվարդը համապատասխան ուժ կգտնի՞ իր մեջ հոր կամքին հակադրվելու և իր սիրո ուխտին հավատարիմ մնալու։ Նվարդն էլ իր հերթին մտածում էր, թե տեսնես ինչպե՞ս կվարվի իր հետ Արամը։ Չէ՛ որ նա կոմունիստ է, ղեկավար աշխատող. չի՞ հրաժարվի արդյոք «բուրժուայի աղջկա» հետ ամուսնանալու մտքից...

Սակայն, պետք է ասել, որ ո՛չ Օհաննեսը, ո՛չ էլ Նվարդը, ինչքան էլ տարօրինակ լինի, լավ չէին ճանաչում Արամին ու չգիտեին, թե ինչ գանձեր են թաքնված նրա հոգում, ու թե երեկվա այն անփորձ պատանուն ինչ է դարձրել հեղափոխությունը...

Տեր գյուղատնտեսը չարաչար սխալվում էր, երբ ասում էր Արամին՝ «դու լավ չես արել, որ եկել ես այս խառը օրերին», նա տեղյակ չէր, որ Արամը հայրենիք էր վերադարձել պարտիայի հանձնարարությամբ և, չնայած իր երիտասարդ հասակին, հեղափոխական աշխատանքի բավականաչափ փորձ ուներ, շատերին հայտնի «Ար» անունով գործողը և հոդվածներ գրողը ինքն էր։ Պատահական չէ, որ նա հենց առաջին օրերից ղեկավար աշխատանքի նշանակվեց։ «Արամը ոչ թե հասարակ անդամ, այլ պատասխանատու ընկեր էր։ Գալու երկրորդ, թե երրորդ օրը նրան կարևոր պաշտոն հանձնեցին Կենտկոմի ագիտպրոպ բաժնում, և այնուհետև նա ազատ ժամանակ չուներ. ամբողջ օրը՝ առավոտից մինչև երեկո և երեկոյից մինչև ուշ գիշեր զբաղված էր... Պորտֆելը թևի տակ շարունակ շտապում էր... թեյը խմում էր ոտի վրա, ճաշն ուտում էր մի քանի րոպեում ու վազում ժողովի, վազում խորհրդակցության, վազում այս կամ այն հավաքույթն ու երեկույթը՝ մի քանի խոսք ասելու, մարդկանց ոգևորելու»։

Արամը մենակ չէր, նա շրջապատված էր զինակիցների խմբով, որոնց մեջ առանձնապես աչքի էին ընկնում Նիկոլը, բանաստեղծ Դարբինը, իր քույրը՝ Զարոն, նկարիչ Գուրգենը։ Վերջինս ի դեպ իր մասին ասում էր՝ «Ես կուսակցական չեմ, բայց ի ծնե բոլշևիկ եմ»։

### ՆԱՀԱՆՋ ԱՌԱՆՑ ԽՈՒՃԱՊԻ

Շատ ժամանակ չէր անցել Արամի տուն հասնելուց, երբ դաշնակ բախտախնդիրները փետրվարյան մի ցուրտ առավոտ սկսեցին իրենց կատաղի գրոհները նորաստեղծ սովետական կարգերի դեմ։



Ինչու այսպես եղավ. ո՞վ է մեղավոր,— ամենուրեք կարելի էր լսել այս խոսքերը։ Ենթադրությունները տարբեր էին, հաճախ իրարամերժ, մտացածին ու անտրամաբանական։ Սակայն, այդ բազմաժխոր աղմուկի մեջ, այնուամենայնիվ, կարելի էր տարբերել երեք ձայն—երեք կարծիք։

Դաշնակները ձգտում էին դավադրությանը ժողովրդական ապստամբության տեսք տալ, հայտարարելով, թե հայ աշխատավորները դժգոհ են նոր իշխանությունից և ահա այսօր ոտքի են ելել այն տապալելու համար։

Բոլշևիկները մերկացնում էին թշնամու հերյուրանքները և միաժամանակ բացատրում, որ այստեղ ժողովուրդը ոչ մի մեղք չունի, նրան գրգռողները իրենց անփառունակ տիրապետությունը վերականգնելու տենդով տարված դաշնակցականներն են։

Կային նաև այնպիսի մարդիկ, որոնք փորձում էին չեզոք դիրք բռնել, ասելով՝ «ի՞նչ բան է սա, տեր աստված... Մինչև հիմա թուրքն ու պարսիկն էին հային թշնամություն անում, հայ սպանում, էսօր հայն է հայի հետ կռվում, հայն է հայ սպանում»։ Մոտավորապես այսպես էր մտածում նաև Օհաննես Ամիրյանը։ Նրա կարծիքով «...եթե բոլշևիկները մի քիչ խոհեմ ու չափավոր լինեին՝ այս խռովությունը չէր լինի»։

Սակայն, ինչպիսի կարծիքներ ու ենթադրություններ էլ որ լինեին, միևնույն է, «անողոք փաստն այն էր, որ քաղաքացիական կռիվն սկսվել էր արդեն և այդ կռիվը մոտենում էր մայրաքաղաքին»։

Բոլշևիկները հավատացած էին, որ իրենք անպայման կհաղթեն։ Այդ կապակցությամբ շատ բնորոշ է բանաստեղծ Դարբնի զրույցը «փիլիսոփայության դոկտոր» Ռուբենի հետ։ «—Դաշնակցականները մեծ ուժեր չունեն,— ընդմիջեց Դարբինը խոսակցին,— բայց եթե ասենք ունեն էլ՝ ոչինչ։ Մեզ կօգնեն մեր ռուս ընկերները... կռվելով դաշնակների դեմ՝ մենք կռվում ենք Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիզմի դեմ։ Մենք գիտենք, որ դաշնակները Անտանտի հետ են և մեր դեմ... Չեն հաջողի։ Երբեք... Մենք նրանց ցույց կտանք»։

Հեղկոմի հանձնարարությամբ Արամը մի ջոկատի գլուխ անցած շրջում է քաղաքի փողոցներում, արթուն աչքով հսկում, որ դավադիր թշնամին չկարողանա ներսից պայթեցնել Երևանը։ Ինչ էլ որ լինի պետք է պահել Երևանը, այն չպետք է տալ հակառակորդին։—Այսպես է մտածում Արամը, այսպես են մտածում նաև նրա մարտական ընկերները։ Սակայն, շուտով Երևանում մնալը դառնում է աննպատակահարմար։ Հեղկոմը որոշում է՝ հակառակորդի օղակումից դուրս գալու և ազատ գործողության հնարավորություն ստանալու նպատակով, ժամանակավորապես նահանջել քաղաքից։

Եվ ահա Արամի ջոկատը նոր հանձնարարություն է ստանում՝ ուրիշ խմբերի հետ միասին հսկել կայարանի ճանապարհը, ապահովել մեր զորամասերի կանոնավոր նահանջը Ղամարլու։ «Արամը կյանքում ռազմական գործով չէր զբաղվել», բայց կռվում էր հմուտ զորավարի նման, ցույց տալով հնարագիտության հրաշալի օրինակներ։ Նրան հաջողվում է ետ մղել մինչև ատամները զինված Կամիտետ-Կարապետի հրոսակախմբի կատաղի գրոհները և ապահովել մերոնց նահանջը գնացքով։

Գնացքը շարժվելուց հետո մնում էր լուծել ևս մի դժվար խնդիր՝ հասնել յուրայիններին։ Իսկ դրա համար հարկավոր էր կտրել անցնել բավական մեծ տարածություն, որը գտնվում էր հակառակորդի ուժեղ հսկողության տակ։ Այդ

անգամ էլ նրանց փրկեց հնարագիտությունը։ Արամի փոքրաթիվ խումբը սպասում է մինչև լավ մթնելը և ապա առաջ շարժվում։ Ու երբ հակառակորդի պահակները հարցնում են՝ «ո՞ւր», նրանք պատասխանում են՝ «Ղամարլու», այդ մարդկանց համարձակ կեցվածքը, արագ երթը ոչ մի կասկած չէր առաջացնում, ավելին, այն տպավորությունն էր ստացվում, որ նրանք յուրայիններ են և հրամանատարության առաջադրանքով հետապնդում են «կարմիրներին»։

Շուտով Արամին ու ընկերներին հաջողվում է դուրս գալ հակառակորդի շրջապատումից և նոր ուժով վերսկսել պայքարը Երևանը ետ վերցնելու համար։

## ԱՃՈՒՄ, ԼԵՌՆԱՆՈՒՄ Է ԴԺԳՈՀՈՒԹՅՈՒՆԸ

Եվ այսպես, անցնում է ժամանակը, բայց կռիվը դեռ շարունակվում է։ Օրըստօրե աճում ու լեռնանում է մասսաների դժգոհությունը։ Ամենուրեք կարելի է հանդիպել զայրույթով լցված մարդկանց, որոնք պահանջում են անհապաղ վերջ դնել այդ «անմիտ արյունահեղությանը»։ Հետաքրքրական է բանաստեղծ Դարբնի և ծերունու զրույցը՝ դաշնակներից հենց նոր հետ խլված գյուղերից մեկում։

«Գյուղում,— գրում է Ստ. Զորյանը,— Արամին, Ռուբենին, Զարոյին և Դարբնին հանդիպեց մի կարճամորուք ծերունի, որը եկողներին տեսնելով, երկարակոթ չիբուխը հանեց գոտուց։

— Հը, քեֆդ ո՞նց է պապի,— հարցրեց Դարբինը մտերմաբար, կարծես մի վաղածանոթի։

— Աստված պահի, տղա ջան,— ծոր տվեց ծերունին, լույսը քաղված աչքերը եկողներին հառելով,— կրակ չունե՞ք։

Դարբինը լուցկին հանեց գրպանից և վառեց ծերունու վաղուց պատրաստ պահած ծխամորճը։

— Էս քեզ, պապի,— ասաց նա լուցկին ծերունուն տալով։— Ղոչաղ կա՛ց, ամեն ինչ լավ կլինի... Հասկանո՞ւմ ես։

— Օ՜հ, դու ասես, աստված լսի,— գլուխը տմբացրեց ծերունին։— Հասկանում եմ, ինչու չեմ հասկանում։ Դու էն ասա՝ էս կռիվը երբ պիտի վերջանա, տղա ջան։ Էսօր էգուց գարունը գալու է. մենք գործ ունենք։ Այգիները պիտի բաց անենք... Առանց հողի ապրուստ չի լինի, հը... շուտ վերջացրեք։ Անհարմար է»։

Այդ կռիվը հավանություն չէր գտնում նաև հակառակորդի բանակի շարքային զինվորների կողմից։ Նրանք դա «բոլորովին ավելորդ» բան էին համարում։

Ահա թե ինչ են ասում ամբողջ գիշեր կռվում անցկացրած, հոգնած ու քաղցած բոլշևիկ գերիներին ուղեկցող դաշնակցական պահակները։ «Դրանց վիճակը տեսնելով՝ պահակներից մեկը ասաց ընկերոջը.

— Տե՛ս, հազիվ են քայլում...

Եվ ավելացրեց ցուսպ կատակով...

— Եթե բաց թողնենք էլ, չեն կարող փախչել։

Իսկ ընկերը պատասխանեց ավելի ցածր ձայնով.



— Եթե ինձ մնար՝ ես կթողնեի, որ գնան, բայց մեր գլխավորը սարսափում է պատասխանատվությունից...

Լռեցին։

Քիչ հետո խոսողներից մեկը տնքաց.

— Էհ, հիմար բան սարքեցին մեր գլխին...

— Էլ մի ասի. բոլորովին ավելորդ կռիվ... ինչքան մարդ վնասվեց...

— Եվ ինչի՞ համար...»։

Լավ է ասված «ինչքան մարդ վնասվեց... և ինչի՞ համար»։

Այս խոսքերի մեջ կարելի է տեսնել և՛ ափսոսանք, և՛ դժգոհություն։

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՂԵԼ Է, ԿԱ ԵՎ ԿՄՆԱ

Քաղաքացիական կռվի ելքից շատ բան էր կախված. ո՞վ է հաղթելու. հի՞նը, թե նորը, կապիտալի՞զմը, թե սոցիալիզմը։ Հնի հաղթանակը կործանում է նշանակում մեր ժողովրդի համար, նորինը՝ փրկություն և խաղաղ կյանք։ Ահա թե ինչու բոլշևիկ Արամը և նրա զինակիցները ձգտում էին արագացնել հաղթանակը, ազատել մեր բազմաչարչար ժողովրդին բազում տառապանքներից ու ցավերից։ Սակայն, այդ նպատակին հասնելու համար դեռ բավական չէր կռիվը «ավելորդ» կամ «սխալ» համարելը։ Դրա հետ միասին,— ասում է Արամը,— հարկավոր է բազմատանջ մեր ժողովրդի բեկված հոգուն կորով և ինքնավստահություն ներշնչել, որ նա մենակ չմնա, որ միանա իրենց ապագայի համար պայքարող ժողովուրդներին։ Պարզ չէ՞, որ միանալով մաքառող բարեկամներին՝ ինքը ևս ուժ կստանա և ոգի։ Նրան պետք է դուրս բերել իր մենավոր ու ազավոր վիճակից։

Կռվի թոհուբոհի մեջ էլ կոմունիստ Արամը պարզ տեսնում էր իր երկրի վառ ապագան։

Մի անգամ Ռուբենի հետ խոսելիս նա ոգևորված հայտարարում է՝ «—Ի՞նչ ասեմ, երբ դու խոսքերի չես հավատում։ Պետք է ժամանակ, որ տեսնեն և մեր գործը։ Այն հանգամանքը, որ մենք հողը տալիս ենք ժողովրդին, չի՞ երևում, թե ինչ ենք ուզում։ Հենց այս դաշտում, այս հին, տխուր գյուղերի տեղ կըստեղծվեն նոր գյուղեր ու նոր կյանք, ուր ոչ ոք չի համարձակվի վայելել ուրիշի աշխատանքը... Եվ այսպես կբուժվեն մեր ժողովրդի հին ու նոր վերքերը... և նա կառնի մի նոր ոգի, կստեղծի նոր արժեքներ...»։

Արամի այս ոգեշունչ խոսքերը չէին կարող չունենալ իրենց ազդեցությունը Ռուբենի վրա։ Նա գերվելով սովետական բանակի հետախույզների կողմից, հանդիպել էր Արամին, Նիկոլին, Զարոյին, Դարբնին և ուրիշների, տեսել էր նրանց դժվարություններով լի կյանքը և ի մի բերելով իր տպավորությունները, զարմանում էր այդ մարդկանց «...տոկունության վրա, հաղթելու հավատի և անընկճելի կամքի վրա։ Ի՞նչն է դրանց ոգևորում, դարձնում տոկուն... Դա ի՞նչ համառություն է, որ զենք վերցրած ընկել են դաշտերը և զրկանքների մեջ ձգտում են հասնել իրենց նպատակին... և, կոմունիստներին համեմատելով քաղաքը գրավողների (դաշնակների—Գ. Հ.) հետ, Ռուբենը նկատում էր մի բան. այն ժամանակ, երբ քաղաքը գրավողները... կռվում են կարծես յուրաքանչյուրն իր մտքում ունենալով իր տան, իր խանութի և շատ-շատ իր ագ-

գականի ազատությունը, բոլշևիկները կարծես կռվում են ամենքի... աշխարհի ազատության համար...»։

Ուշադիր հետևելով Արամի և մյուսների վարքագծին, տեսնելով նրանց կոնկրետ գործը, պատմության ուսուցիչը հանգել էր ճիշտ եզրակացության։ Այո՛, կոմունիստները կռվում են ամենքի, համայն աշխարհի ազատության համար, այլ կերպ ասած, նրանց պայքարը իր բնույթով ինտերնացիոնալիստական է և լրիվ համապատասխանում է ազգերի, ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման շահերին։

«Փիլիսոփայության դոկտորի» կասկածանքը փարատելու համար Արամը համբերատար բացատրում էր, որ սխալ է ենթադրել, թե կոմունիստների՝ ինտերնացիոնալիզմի մասին խոսակցությունները նրանց կարող են տանել դեպի կոսմոպոլիտիզմ, և մեր ժողովուրդը կարող է կորցնել այն ամենը, ինչ ունի, ինչ մեծ զոհաբերություններով ձեռք է բերել դարերի ընթացքում՝ «մեր լեզուն, մեր երգը, մեր մշակույթը, մեր ջերմ, ազնիվ հույզերը»։

Հոր կատարած սխալ քայլը վշտացրել էր Արամին։ Նա համոզված էր, որ ծեր գյուղատնտեսը, «որքան էլ բոլշևիկներից դժգոհ, հազիվ թե այդ տարիքում վեր կենար-գնար կամավոր, այն էլ մարտ ամսին». ուրեմն նրան հարկադրել են, բարոյական ճնշում գործադրել։ Օհաննես Ամիրյանը — այդ կրթված ու ինտելիգենտ մարդը, անկասկած, սիրում է «իր երկիրն ու ազգը, նրա անցյալն ու պատմությունը ռոմանտիկ սիրով և չի հանդուրժում, որ քննադատեն այդ անցյալը և իր սերը...»։ Սակայն, ծերունին մոլորության մեջ էր և կարծում էր, թե լոկ իր սերն է անկեղծ ու ճշմարտացի, իսկ բոլշևիկները զուրկ են հայրենասիրության զգացումից և իրենց քաղաքականությամբ երկիրը կործանում են տանում։

Որդին ցավով էր խոսում հոր այդ մոլորությունների մասին։ Մի՞թե,— ասում էր Արամը,— նա և նրա պես մտածողները չեն հասկանում, թե՞ չեն կամենում հասկանալ, որ մենք ուզում ենք երկիրը հանել մենակ ու խեղճ վիճակից և դարձնել հավասար անդամ մյուս ազգերի ընտանիքի, ուր նա կարող է բուժել իր հին ու նոր վերքերը... Բավական է մեր երկիրը մնա իր հին վշտերի մեջ, պետք է երիտասարդացնել նրան նոր գաղափարներով, նոր աշխատանքով, որոնք և նրան կտան նոր թևեր և նոր թափ... Մի՞թե հայրը և նրա մտերիմները չեն ըմբռնում, որ Հայաստանի որոնած ազատության բոլոր ճանապարհներն աղետաբեր են եղել և... հայրիկն իզուր է կարծում, թե մենք կործանում ենք Հայաստանը. նա երևի չի պատկերացնում ազգերի բարեկամության և եղբայրության ուժը և, ազգային իր մտածողությամբ սահմանափակված, չի կարողանում երևակայել, թե ինչ առաջադիմություն կունենանք. երբ մենք ասում ենք, որ պետք է վերացնել հին հարաբերություններն ու կապերը, նա կարծում է թե դրանով մենք կամենում ենք կործանել Հայաստանը... «Ո՛չ, Հայաստանը եղել է, կա և կմնա, պետք է վերացնել այնտեղից անարդար հարաբերությունները, հին օրերի հին վշտերը...»։

Ահա թե գաղափարական ինչ հիմքերի վրա են խարսխված կոմունիստների քաղաքականությունն ու կոնկրետ գործողությունները։ Ինչպես տեսնում ենք, բոլշևիկները ոչ թե կործանել, այլ վերածնել են ուզում իրենց հինավուրց հայրենիքը։ Դրա համար Հայաստանը նախ և առաջ պետք է դուրս գա իր «մենության գնդանից» և մտնի եղբայր ազգերի ընտանիքի մեջ, երկրորդ՝ հասկանա և մեկընդմիշտ հրաժարվի դարերի ընթացքում որոնած իր ազատության



աղետաբեր ուղիներից, և երրորդ՝ ամբողջ եռանդով լծվի նոր կյանքի կառուցմանը։
Արամը, Դարբինը և մյուս կոմունիստներն օժտված են բարձր բարոյականությամբ։ Այդ նախ և առաջ արտահայտվում է թշնամու նկատմամբ անհաշտ վերաբերմունքի, նրան անողոքաբար ջախջախելու և ոչնչացնելու վճռակամության մեջ։ Այդ վերաբերմունքը հաճախ առաջին հայացքից դաժանություն էր թվում. բայց լոկ առաջին հայացքից։ Իրականում դա ոչ թե դաժանություն, այլ իսկական հումանիզմ էր, որ բխում էր մեր ժողովրդի կենսական շահերից։ Այդ տեսակետից բնորոշ են նաև Արամի մտորումները այն բանից հետո, երբ մարտի դաշտում առաջին անգամ տեսավ, «որ իր գնդակը, հետևաբար և ինքը, մարդ սպանեց...»։ Մարդասպանությունը նա համարում էր «գարշելի գործ, անգամ սրբապղծություն...» ու հարցնում ինքն իրեն՝ «բայց այստեղ պե՞տք էր, թե ոչ»։ Եվ առանց տատանվելու պատասխանում է.
«—Պետք էր... եթե դրանք չսպանվեն հիմա, կերթան գիծը կքանդեն, ձեռք կգցեն գրահագնացքը և կսպանեն մեզ բոլորիս, կսպանեն մեր երազանքը, մեր լավ նպատակները, ապագայի մեր ծրագրերը... Հայաստանի երիտասարդացումը...»
Ահա թե ինչպես է դրվում հարցը. հանուն մեր վեհ նպատակների, մեր ծրագրի ու ապագայի պետք է անողոք լինել թշնամու դեմ։
Հակառակորդից նոր խլած գյուղերից մեկով անցնելիս մեր բանակայիններից մեկը ուզում է բռնել և մորթել մի աքլոր։ Սա, թվում է, թե փոքր փաստ է, բայց այն չի վրիպում կոմունիստներ Արամի և Դարբնի ուշադրությունից։ Նրանք այդ աննշան փաստին կարևոր, սկզբունքային նշանակություն են տալիս։ Դարբինը մոտենալով զինվորին, բարկացած ասում է՝
«— Դու այդ ի՞նչ ես անում։ Ուզում ես մեզ խայտառակե՞ս, ինչ է։ Դու հերոս զինվոր, այդպիսի բանով ես զբաղվում...
— Է՛հ, ի՞նչ կա որ,— ուսերը վեր քաշեց զինվորը։— Անտեր աքլոր է, մենք էլ վաղուց միս չենք կերել։
Այդ ժամանակ մոտեցավ Արամը։
— Իսկ դու գիտես, որ քո մի աքլորը կարող է մեզ ահագին վնաս հասցնել։ Ամաչիր։ Հայանիր անուն, ազգանունդ և զորամասդ»։
Ուրեմն կարմիր բանակի զինվորները պետք է ազնիվ լինեն ու ամեն տեղ բարձր պահեն իրենց իշխանության, հետևաբար և իրենց սեփական պատիվը։ Եթե այդպիսին լինի ամեն մի բանակային, այն ժամանակ Ջալյանները չեն կարող ասել, թե՝ «բոլոր զինվորները նման են իրար»։
Արամին և իր ընկերներին վիճակված էր մեծ զրկանքներ կրել, վտանգի ենթարկել իրենց կյանքը։ Բայց դա նրանց բնավ չէր վհատեցնում։ Անտարակույս չէր սխալվում Ռուբենը, երբ սեփական աչքերով տեսնելով այդ բոլորը, գտնում էր, որ «այստեղ հավանորեն դեր է խաղում այն, ինչ կոչվում է հավատ, գաղափար, իսկ գաղափարի հավատը միշտ ուժ է տալիս մարդուն տոկալու և պայքարելու»։

ՀԱՂԹԱՆԱԿԻՑ ԱՌԱՋ...

Վեպում մեծ տեղ է հատկացված Օհաննես Ամիրյանի և իր որդու՝ Արամի, փոխհարաբերություններին։ Այդ մասին մենք խոսեցինք արդեն տարբեր

առիթներով։ Այստեղ մնում է նշել, որ ո՛չ ծերունի գյուղատնտեսին հաջողվեց ետ պահել որդուն, ոչ էլ որդին կարողացավ համոզել հորը։ Նրանք ռազմի դաշտ մտան որպես ախոյաններ։

Կարող են հարցնել՝ ծերունին գոնե իր կյանքի վերջին րոպեներին հասկացա՞վ արդյոք, որ ինքը ճիշտ չի մտածում կոմունիստների մասին։ Ո՛չ, դժբախտաբար։

Ստ. Զորյանը վարպետորեն է վերարտադրել Ամիրյանի կյանքի վերջին րոպեները, նրա մահը։ Ահա նա՝ ծերունի Օհաննեսը կռվի դաշտում կրծքից ծանր վերք ստացած, պառկած է անկողնում։ Նրա ականջին հանկարծ հասնում է թնդանոթների որոտը։ Նա հասկանում է, որ որոշ ժամանակ առաջ Երևանը թողած կարմիր զորքերը նորից վերադառնում են։ Տնեցիները փորձում են հիվանդից թաքցնել ճշմարտությունը, բայց չի հաջողվում։ Շատ չանցած Ամիրյանը, լսելով դրսից եկող աղմուկը, թափով ելնում է անկողնուց և մոտենում լուսամուտին։ Եվ ահա, ո՜վ սարսափ, նա իր սեփական աչքերով տեսնում է Երևանը պաշտպանող զորքի խուճապահար նահանջը։

«Նայեց Ամիրյանը այդ ամենին, նայեց տենդափայլ աչքերով և նրան թվաց, թե Երևանը... ո՛չ, քանդվում է այն ամենը, ինչ կոչվում է Հայաստան... իր սիրած, իր մտքում, երազներում փայփայած Հայաստանը և նրա տեղը բացվում է մի անդունդ։

Նայեց Ամիրյանը լայն բացած աչքերով, նայեց մի երկու վայրկյան և միայն արտասանեց.

— Ուրե՞մն...

Նա հասկացավ, որ կոմունիստները հաղթել են և... մյուսները նահանջում են արդեն։

Կարմիրները քաղաք են գալիս այն կողմից, որտեղից չէր սպասում։

— Ուրե՞մն,— կրկնեց նա ու բռնեց կուրծքը, այն տեղը, ուր վերքն էր։— Ամեն ինչ կործանվեց և... կորավ...»։

Սրանք Ամիրյանի վերջին խոսքերն էին, որոնք արտասանելուց անմիջապես հետո նա ընկավ «ահագին շառաչյունով» և մնաց անշարժ։ Ծեր գյուղատնտեսը մեռավ կաթվածից։ Եվ ահա հենց այդ օրը, թերևս հենց այդ պահին հաղթանակած կարմիր զորամասերը մտան Երևան...

Ո՛չ Արամը և ոչ էլ Զարոն (որը մնացել էր ոտքից վիրավոր եղբոր մոտ), ներկա չէին իրենց հոր թաղմանը։ Ավելին. Արամը հոր մահվան բոթը լսեց բավական ուշացումով և պատահականորեն՝ իր հետ հիվանդանոցում պառկած մի վիրավոր զինվորից։ Նույն զինվորը հայտնեց նաև, որ ծերունին մեռնելիս ասել է՝ «Կորավ, կործանվեց Հայաստանը...»։

Այս ամենը լսելուց հետո Արամը լռեց, ափսոսանքով մտածելով, որ իր հայրը «...մինչև վերջ էլ չհասկացավ իրենց և այդպես էլ մեռավ թյուրիմացության մեջ...»։

«Ափսո՜ս,— ասաց Արամը մտքում։—Հայրիկը պետք է ապրեր, որ տեսներ, թե Հայաստանը ոչ թե կործանվեց, այլ նոր միայն պիտի վերածնվի և որ երբեք նման չի լինելու խեղճ ու տկար Հայաստանին... Այլ կլինի միանգամայն նորոգված ու գեղեցիկ։ Ափսո՜ս, հայրիկը պիտի ապրեր և տեսներ, որ ես սխալ ճանապարհով չեմ գնացել, որ ես իմ հայրենիքի թշնամին չեմ...»։

Հոր նկատմամբ որդու ցուցաբերած այս վերաբերմունքը հոգեբանորեն պատճառաբանված է։ Եվ, իսկապես, սխալ և անբնական կլիներ, եթե Արամը



այլ կերպ մտածեր և հոր հասցեին խիստ ու վիրավորական խոսքեր ասեր։ Նա անկեղծորեն ափսոսում է, բայց դա բնավ չի նշանակում, թե ուզում է արդարացնել նրա գործած ճակատագրական սխալը։ Թող հայրիկն իմանար, որ կոմունիստ որդին ճիշտ էր, իսկ ինքը մոլորված, որ բոլշևիկներն իրենց հաղթանակով ոչ թե կործանում, այլ կյանք ու արև են բերում մահամերձ ու անօգնական Հայաստանին։ Կործանվում, կորչում է հին Հայաստանը...

Վեպի լավ էջերից է նաև հաղթանակին նախորդող դեպքերի, առանձնապես Սովետական Ռուսաստանից ուղարկված ինքնաթիռի վայրէջքի նկարագրությունը։ Այդ ինքնաթիռը իր թևերին բերել էր ազատագրված ռուս եղբայրների ջերմ ողջույնն ու անխարդախ սերը։ Ուրեմն ճիշտ էր Դարբինը, երբ դեռ կռվի առաջին օրերին ասում էր, թե մենք կհաղթենք, որովհետև մենակ չենք, մեզ հետ է ռուս մեծ ժողովուրդը, որը շուտով կգա օգնության։

## ՌՈՒԲԵՆԸ, ՆՎԱՐԴԸ
## ԵՎ ՈՒՐԻՇՆԵՐԸ

Ստ. Զորյանի այս վեպի կոմունիստ հերոսներից ոչ միայն ամենագլխավորը, այլև ամենակատարյալը Արամն է։ Առաջին էջերում երևացող Նիկոլը իր անմիջական բնավորությամբ և հումորով շատ բան է խոստանում ընթերցողներին, բայց, դժբախտաբար, հետագայում նա երևում է հազվադեպ և իսկույն անհետանում։ Զարոն նույնպես կատարյալ չէ, նա ինչ-որ չափով մնում է եղբոր ստվերում։ Թերևս այնքան էլ բնական չէ նրա սիրային արկածը Ռուբենի հետ, համոզիչ չէ մանավանդ սիրո խոստովանության մեջ նախահարձակ լինելու նրա փորձը։

Նիկոլից և Զարոյից ավելի լավ է կերտված բանաստեղծ Դարբնի կերպարը. նա Արամի նման ազնիվ է, հավատարիմ կոմունիզմի գաղափարին, խիզախ ու հնարագետ է պայքարում, ջերմ ու սրտառուչ է ընկերների նկատմամբ։

Վեպում ուրիշ շատ հետաքրքրական կերպարներ էլ կան, որոնցից յուրաքանչյուրն առանձին արժանիքներ ունի։ Դրանցից են, օրինակ, Յոթմազը, Ռուբենը, Նվարդը։

Առաջինը, որ իրեն «հին հեղափոխական» է համարում, մի կատարյալ քամելեոն է. նա հաճախ փոխում է իր գույնը՝ մեկ դառնում «բոլշևիկ», մեկ «դաշնակցական» և անվերջ շաղակրատում մեծամեծների հետ ունեցած իր կապերի ու իր մեծ ծառայությունների մասին։

Սակայն, միանգամայն այլ մարդիկ են Ռուբենն ու Նվարդը։ Սրանք երկուսն էլ Արամին ճանաչում են վաղուց։ Ավելին. Նվարդը Արամի հարսնացուն է։ Բայց պետք է ասել, որ ոչ Ռուբենը և ոչ էլ Նվարդը Արամի նման չեն մտածում։ Ռուբենը աչքի է ընկնում տարօրինակություններով, ամեն քայլափոխում հայտարարում է իր «չեզոքության» ու «անկախության» մասին, խուսափում կնոջ սիրուց, երևույթները համարում պատահականությունների արդյունք... Բայց շուտով Ռուբենի փիլիսոփայությունը բախվում է կյանքի հետ և ջարդուփշուր լինում, պատմության ուսուցչի առջև բացվում է մի այլ աշխարհ։

Ռուբենը իրերի բերումով մասնակից է դառնում կռիվներին, մի քանի օրվա ընթացքում նույնիսկ երկու անգամ գերի է ընկնում։ Նա հնարավորություն

է ստանում ավելի մոտիկից տեսնելու իրականությունը, ճանաչելու մարդկանց։ Ռուբենը բնականից ազնիվ լինելով սկսում է կամաց-կամաց հասկանալ ճշմարտությունը։ Նա վեպի վերջում նկատելիորեն փոխվում է և, վերջին հաշվով, կանգնում Արամի և նրա ընկերների դիրքերի վրա։

Նվարդը Ռուբենի պես ոչ ռազմաճակատ էր տեսել, ոչ էլ եղել գերության մեջ։ Նա քաղաքի ամենահարուստ մարդկանցից մեկի՝ գործարանատեր Գաբրիել Զալյանի աղջիկն էր։ Այն պահից, երբ հայտնի դարձավ Արամի կոմունիստ լինելը, հայրն այլևս համաձայն չէր, որ իր դուստրը ամուսնանա Արամի հետ։ Եվ, չնայած այս բոլորին, Նվարդը սիրում էր Արամին։ Հենց այդ էլ հնարավորություն տվեց նրան հաղթահարելու իր առջև կանգնած բոլոր դժվարությունները ու մնալու հավատարիմ իր սիրուն։

Եվ Արամը չէր կարող չգնահատել Նվարդի այդ ազնիվ ու առաքինի վարքագիծը...

***

Ստ. Զորյանի հերոսները կենդանի մարդիկ են, իրենց ցավերով և ուրախություններով։ Նրանց ոչ մի կերպ չի կարելի տեղավորել նախապես պատրաստված սխեմաների մեջ։ Հենց դրանով էլ նա տարբերվում է իր շատ գրչակիցներից։ «Ամիրյանների ընտանիքը» վեպի հիմնական արժանիքներից մեկն էլ այն է, որ այնտեղ հանդես են գալիս նոր հերոսներ, որոնք ծնունդ են առել նոր կյանքի հետ, հեղափոխության փոթորիկների մեջ։

Եվ այսօր, կարդալով մեծատաղանդ գրողի շատ տարիներ առաջ, «Հայաստանի քաղաքացիական կռիվների անմիջական տպավորության տակ» գրած այս երկը, մենք գոհունակությամբ կարող ենք նշել, որ այն մի լուրջ քայլ է սովետահայ գրականության մեջ դրական հերոսի, ավելի ճիշտ՝ կոմունիստի լիարժեք կերպարի ստեղծման ճանապարհին։

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## Ի՞ՆՉ ՑՈՒՅՑ ՏՎԵՑԻՆ ՊՐԵԶԻԴԵՆՏԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՄՆ-ՈՒՄ

ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ հասարակական-քաղաքական կյանքում պրեզիդենտական ընտրությունները ընդունված է համարել ամենաերկարատև, բուռն, հոգնեցուցիչ, բայց, միաժամանակ, առավել կարևոր կամպանիան։ Վերջին հանգամանքն առանձին ջանադրությամբ ընդգծում են բուրժուական պատմաբաններն ու տնտեսաբանները, մինչդեռ ամերիկյան երկպարտիական սիստեմի հարյուր տարվա փորձը ցույց է տալիս, որ այդ ընտրությունների քաղաքական նշանակությունը պայմանական է։ Այդ է պատճառը, որ ամերիկյան ընտրությունների նկատմամբ ընդհանուր հետաքրքրությունը առավելապես պայմանավորված է դրանց արտաքին կողմով։ Թերևս ոչ մի երկրում իշխանության ղեկի համար մրցող պարտիաների ու թեկնածուների «անողոք» բանակռիվը, փոխադարձ ձաղկումներն ու շլացնող ռեկլամը այնքան ընդգծված չեն, որքան ԱՄՆ-ում։ Այս ամենի նպատակն է աքողել ամերիկյան իմպերիալիզմի երկու պարտիաների ընտրական բախումների արհեստական բնույթը, որովհետև շատ թե քիչ էական տարբերությունների բացակայությունը դեմոկրատական ու ռեսպուբլիկական պարտիաների ծրագրերի ու գործելակերպի միջև, նվազեցրել են հետաքրքրությունը նախընտրական պայքարի նպատակների հանդեպ։ Չնայած դրան, 1964 թվականի ընտրական կամպանիան ԱՄՆ-ում լրջորեն մտահոգել էր միջազգային հասարակայնության ամենալայն շրջանները։ Աշխարհի դեմոկրատական և խաղաղասիրական ուժերը տագնապով հետևում էին, թե ինչպես կապիտալիզմի առավել հզոր երկրում ծայրահեղ աջ, ռեակցիոն ուժերը տենդորեն ձեռքերը մեկնում էին դեպի պրեզիդենտի բազկաթոռը։

Երբ ռեսպուբլիկական պարտիայի համագումարը (որը տեղի ունեցավ հուլիսի 13—17-ը Սան-Ֆրանցիսկոյում) բացահայտ շովինիզմի, միլիտարիզմի և ռասիզմի տրամադրությունների անբաժան տիրապետության մթնոլորտում պրեզիդենտի պաշտոնի համար առաջադրեց ամերիկյան «կատաղիների» առաջնորդի՝ սենատոր Բարրի Գոլդուոտերի (Արիզոնայի նահանգ) թեկնածությունը, ամերիկյան ընտրություններն ընդունեցին բացառիկ լուրջ, դրամատիկ բնույթ՝ դառնալով ընթացիկ միջազգային կյանքի ամենաուշագրավ պրոբլեմներից մեկը։

Համագումարի արդյունքները ցույց տվին, որ ռեսպուբլիկական պարտիան վերջնականապես վերածել է ուլտրառեակցիոն կազմակերպության։ Նվաճելով այդ պարտիայի դրոշը՝ երկրի ծայրահեղ աջ, ռազմամո՛լ հոսանքները բացահայտ պայքար սկսեցին ֆաշիզմը, անսքող միլիտարիզմը և ռազմատենչ ավանտյուրիզմը ո՛չ միայն լեգալացնելու, այլև պետական քաղաքականության աստիճանի բարձրացնելու համար։

ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԻՑ ԳԵՍ ՀՈԼԼԸ գրում էր. «Ընտրությունների միջոցով մեր ժողովուրդը կկարողանա կամ մի քայլ կատարել դեպի ռեակցիան և ֆաշիզմը, կամ ուժգին հարված հասցնել ծայրահեղականներին, ստեղծել մասսայական շարժումներ և ապահովել քաղաքական ուժերի նոր հարաբերակցություն, որը երկրին թույլ կտա ոտք դնել ավելի լայն դեմոկրատիա, խաղաղություն և տնտեսական ապահովվածություն տանող ուղին... 1964 թվականի ընտրություններն արտակարգ, վճռական կարևորություն ունեն, որովհետև դրանք արտացոլում են քաղաքական ուժերի բևեռացման նոր մակարդակը»։

Իսկապես, ամերիկյան ժողովուրդը գտնվում էր երկընտրանքի առաջ։ Այդ նրա քաղաքական հասունության ամենալուրջ քննությունն էր։ Նոյեմբերի 3-ի ընտրությունների արդյունքներն անհերքելիորեն ապացուցեցին, որ ընտրողների մեծամասնությունն իրեն լրջորեն հաշիվ էր տվել այն հետևանքների համար, որոնք անխու-

նկատմամբ, բազմիցս նշելով, որ վճռական խոսքը պատկանում է նրան։

Ցաշիստական ուժերի պարտության գործում վճռական դեր խաղաց ԱՄԵՐԻԿՅԱՆ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԸ։ ԱՄՆ-ի արհմիությունների անվերապահորեն հանդես եկան Գոլդուոտերի հակաբանվորական, հակադեմոկրատական ծրագրի դեմ։

Ընտրությունների ելքը որոշելու հարցում զգալի դեր խաղաց նաև նեգր բնակչությունը, որն առաջին անգամ մասսայաբար մասնակցելով պրեզիդենտական ընտրություններին, ցուցաբերեց երկրի վրա կախված ծանր վտանգն ըմբռնելու մեծ ունակություն։ Հակառակ ռեսպուբլիկականների ակնկալություններին, «ռասայական նախապաշարմունքները» հյուսիսային նահանգների սլավոնական և իտալական ծագում ունեցող բանվորների շրջանում նույնպես հաջողություն չբերին Գոլդուոտերին։ Գոլդուոտերի դեմ քվեարկեց սլավոններով բնակեցված վայրերում ընտրողների 79 տոկոսը, իսկ իտալացիներով բնակեցված վայրերում՝ 74 տոկոսը։

Սխալ կլիներ կարծել, թե ընտրությունները վերջնական պատասխան կտան ամերիկյան ժողովրդի առջև ծառացած բոլոր հրատապ հարցերին։ Ռեակցիայի և ֆաշիզմի ուժերին հասցրած հարվածը միայն սկիզբն է, որը պետք է հետևողականորեն զարգացնել և ամրապնդել։ Դեռևս լիովին չեն համախմբվել երկրի դեմոկրատական ուժերը։ Միացյալ Նահանգների ժամանակակից ներքին քաղաքական կյանքին յուրահատուկ են բուռն խմորումները։ Դրանցից առավել կարևորներից է նեգրական շարժումը։ Սակայն դեռևս գտնված չէ այն կամուրջը, որ կարող է այն միացնել, առավել ևս միաձուլել երկրի աշխատավորական ու դեմոկրատական խավերի մյուս ընդվզումների հետ։ Ռեակցիան, անշուշտ, կփորձի ոչ միայն խանգարել դրան, այլև ռասայական ու շովինիստական նախապաշարմունքների օգնությամբ հակադրել այդ ընդվզումները նեգրական շարժմանը, երկրի առաջադեմ ուժերը պառակտելու և մաս առ մաս ջախջախելու նպատակով։

Չպետք է մոռանալ, որ, չնայած պարտությանը, Գոլդուոտերը հավաքեց ավելի քան 26 միլիոն ձայն։ Այս փաստը վկայում է այն մասին, որ գոլդուոտերիզմը չի կարելի լիովին ջախջախված համարել։ Ամերիկյան ծայրահեղականները գտնում են, որ իրենք տանուլ են տվել մեկ ճակատամարտ, բայց ոչ պայքարն ամբողջությամբ։ Գոլդուոտերի հայացքներն ու պլանները ԱՄՆ-ի ներքին քաղաքական իրադրության ներկա էտապի ծնունդ են և որոշակի սոցիալ-դասակարգային ուժերի սեփականությունը, որոնք կշարունակեն դեպի իշխանության ղեկը ճանապարհ հարթելու իրենց փորձերը և այդ ուժերի համար Գոլդուոտերը ԱՄՆ-ի քաղաքական երկնակամարում կշարունակի մնալ, եթե ոչ որպես ուղեցույց աստղ, ապա, առնվազն, որպես խորհրդանիշ։

Ներկայումս դեմոկրատական ուժերի միասնությունից է զգալի չափով կախված Լինդոն Ջոնսոնի կառավարության քաղաքականությունը։ Պատմությունը բազմիցս ապացուցել է, որ բուրժուական պարտիաների ընտրական խոստումների և ապագա քաղաքականության միջև կան անանցանելի տարածություններ։ Տակավին վերջ չի տրված «սառը պատերազմին», չեն լուծված զինաթափման պրոբլեմը, գերմանական երկու պետությունների հետ խաղաղ կարգավորման հարցը։ Միացյալ Նահանգները գնալով ավելի ու ավելի են թաղվում անհեռանկար և վտանգավոր ավանտյուրաների մեջ՝ Հարավ-Արևելյան Ասիայում, Կիպրոսում, Կոնգոյում, Լատինական Ամերիկայում։

Ամերիկյան ժողովուրդը ցույց տվեց, որ ինքը խաղաղություն է տենչում և իր ձայնը տվեց խաղաղության օգտին, որը մեծ չափով կախված է սովետա-ամերիկյան հարաբերություններից։

Ընտրությունների արդյունքները ցույց տվին, որ ամերիկացիների ճնշող մեծամասնությունն այդ հարաբերությունների հետևողական բարելավման, հետևապես, միջազգային կլիմայի առողջացման կողմնակից է։ Մնում է, որ ԱՄՆ-ի ղեկավար գործիչները համապատասխան հետևություններ անեն այս ամենից։ Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա ընկ. ընկ. Միկոյանի և Ա. Կոսիգինի կողմից Լինդոն Ջոնսոնին հղած շնորհավորական ուղերձում ուղղակի ասված է, որ սովետական կառավարությունը, լինելով միջազգային իրադրության առողջացման և միջազգային ակտուալ պրոբլեմները բանակցությունների միջոցով լուծելու հետևողական կողմնակից, պատրաստ է զարգացնելու սովետա-ամերիկյան հարաբերությունները հօգուտ երկու երկրների ժողովուրդների և ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման շահերի։

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ՀԵՐՈՍԱԿԱՆ ՃԱԿԱՏԱԳՐԵՐ

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

## ԴՐՎԱՏԱՆՔԻ ԱՐԺԱՆԻ ԿՅԱՆՔ



Զրը՜նգ... կրը՜նգ, կրը՜նգ...

Սիբիրի անծայրածիր ու ամայի ճանապարհներով, միալար կնգացնելով ծեռնակապերը, մռայլադեմ ժանդարմների ուղեկցությամբ դեպի Արևելք էին շարժվում մի խումբ հյուծված կալանավորներ: Տարբեր էին այդ մարդկանց ճակատագրերը, սակայն նրանց համախմբել էր մի վեհ նպատակ՝ պայքարը սոցիալական անհավասարության, ցարական Ռուսաստանում տիրող անարդարության ու կեղեքման դեմ:

Ալեկոծված էր երիտասարդ ռևոլյուցիոներ Մ. Մ. Կարդաշևի հոգին: Նա չհանգստացավ նաև հերթական հանգրվանում: Չէր կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ անժամանակ կորցնելով ազատությունը, զրկվել էր նաև ցարական ինքնակալության դեմ իր համախոհների հետ սկսած պայքարը շարունակելու հնարավորությունից: Նա անչափ ափսոսում էր, որ իր փոթորկոտ, բուռն գործունեության արշալույսին, հարկադրված է անիմաստ կյանք վարել Սիբիրի խուլ անկյուններում: Նա մտաբերում էր իր կարճատև, բայց բովանդակալից գործունեության բոլոր մանրամասները: Հիշում էր իր մանկությունը, հայրենի Գանձակը, հորը՝ Մարտինին, մորն ու հինգ եղբայրներին, իր մարտական ընկերներին՝ «Համառուսաստանյան սոցիալ-ռևոլյուցիոն կազմակերպության» անդամներին:

Նա հատկապես չէր կարողանում մոռանալ դատավարության վերջին օրերն ու իր ընկերների ելույթները:

Նրա ականջներում հնչում էին Պյոտր Ալեքսեևի խոսքերը՝ «Կբարձրանա միլիոնավոր բանվոր ժողովրդի ջլուտ ձեռքը և զինվորական սվիններով պահպանվող բռնակալության լուծը կտապալվի»:

— Ո՛չ, մեղավոր չեմ ճանաչում:

Կարդաշևը գրեթե բարձրաձայն կրկնում էր ցարական վճռաբեկ դեպարտամենտի հատուկ ատյանի դատախազի օգնականի պաշտոնակատար, պետական մեղադրող Ա. Ժուկովի երեսին նետած իր պատասխանը:

Նա սրտի կսկիծով ու քնքուշ կզացումով էր հիշում մերձավոր զինակցին ու մտերիմ ընկերուհուն՝ Հռիփսիմե Թումանովային: Վերհիշում էր նրա մասնակցությամբ իրեն և իր ընկերներին բանտից ազատելու անհաջող զինված փորձը, որը պատճառ դարձավ վերջինիս բանտարկվելուն: Աքսորի՝ տառապանքներով լի ողջ ճանապարհին նրան ուղեկցում էր սիրած էակի և զինակցի կերպարը, նրա ջերմ խոսքերը. «Ես հպարտանում եմ քեզնով, իմ սիրելի Մավր»:

***

...1877 թվականի փետրվարի 21-ից մինչև մարտի 14-ը ցարական կառավարությունը Պետերբուրգում ռևոլյուցիոն նարոդնիկների դեմ կազմակերպեց դատ՝ որը պատմությանը հայտնի է «50-ի պրոցես» կամ «Մոսկվացիների դատավարություն» անունով: Ռևոլյուցիոն պրոպագանդայի

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Մի խումբ ընկերներ խնդրել են պարզաբանել, թե ինչպիսի՞ պարգևատրումներից կարելի է գանձել պարտիական անդամավճար:

ՍՄԿԿ ԿԿ քարտուղարության կողմից 1962 թվականի մայիսի 29-ին հաստատված՝ պարտիայի անդամների և անդամության թեկնածուների անդամավճարների մասին հրահանգի 2-րդ կետի համապատասխան պարտիական անդամավճարները, բացի աշխատավարձից, գանձվում են նաև այն դրամական գումարներից, որոնք վերաբերում են աշխատավարձի այս կամ այն տեսակին: Այդպիսի դրամական գումարներ են համարվում՝ օտար լեզուներ իմանալու, զինվորական կոչման, ակորդային և գործարքային աշխատանքների համար աշխատավարձին կատարվող հավելումները: Անդամավճարներ գանձվում են նաև բոլոր տեսակի հոնորարներից, դասախոսություններից, երկարամյա ծառայությունների համար կատարվող հավելումներից, անկախ այն բանից, թե այդ գումարները վճարվել են ամեն ամիս, թե տարին մեկ անգամ:

Անդամավճար չի գանձվում միանվագ պարգևներից. այդպիսիք են այն դրամական գումարները, որոնք աշխատավարձի ֆոնդից չեն վճարվում և բանվորների, ծառայողների, ինժեներա-տեխնիկական աշխատողների միջին վաստակի մեջ չեն մտնում: Այդպիսիք են՝ սոցիալիստական մրցությունում ձեռք բերած ցուցանիշների, ռացիոնալիզատորական առաջարկությունների ու տեխնիկական կատարելագործումների համար ստացված գումարները, և արտադրական կամ հասարակական աշխատանքում ձեռք բերած նվաճումների ֆոնդերից կատարվող հատկացումները:

Պարտիական անդամավճար չի գանձվում նաև այն դրամական եկամուտներից, որ կոմունիստներն ստանում են որպես միանվագ պարգևներ՝ գիտական հայտնագործությունների, գյուտարարության, գրական և գեղարվեստական ստեղծագործությունների համար, մրցանակաբաշխություններին, սպորտային մրցումներին մասնակցելու համար:

Իսկ պլանը կատարելու և գերակատարելու, սահմանված որակական ցուցանիշներն ապահովելու, ինքնարժեքն իջեցնելու, նյութերի, էներգիայի խնայողության, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման համար ստացած դրամական գումարներից անդամավճար գանձվում է: Գանձվում է նաև թոշակներից: Լրացուցիչ վաստակ ունեցող թոշակառուները անդամավճար են մուծում թոշակի, աշխատավարձի և լրացուցիչ այլ վաստակների ընդհանուր գումարից: Հիվանդության ժամանակ ըստ հիվանդության թերթիկների վճարվող գումարները ևս պետք է ավելացվեն տվյալ ամսվա ընդհանուր վաստակին:



# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ 1964 Թ. ԶԵՏԵՂՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ՈՒ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 94-ԱՄՅԱԿԸ



## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

ՕՐՎԱ ՀԱՐՑԵՐ



ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԱՐՑԵՐ



ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ



ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ



ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԼԻԴԵՐՆԵՐԸ





ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ



ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



ՈՒՆԿՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր



ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ



ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



ԱԹԵԻՍՏԻ ԱՄԲԻՈՆ



ԱՐՎԵՍՏԱՍԵՐԻ ԱՄԲԻՈՆ



ՀԵՐՈՍԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ



ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ



ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՆՈԹԵՐ

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՇԱՐԺԻՉ-ՍԱՌՑԱՐԱՆ

Ճապոնիայում կառուցվել է ավտոմեքենա-սառցարան, որն աշխատում է հեղուկացված նավթային գազով։ Գազը ղեկացված նավթային գազով։ Գազը լցված է թողնվում ռեզերվուարից, որն ընթացքում գոլորշիանում է և իջեցնելով ջերմաստիճանը սայլակում։ Այնուհետև այն օգտագործվում է որպես վառելանյութ։

### ՆԻԿՈՏԻՆ ԽՈԶԵՐԻ ՀԱՄԱՐ

Պարզվել է, որ նիկոտինը խթանում է կենդանիների մակերիկամային գեղձերից հորմոնների անջատումը։ Այդ հորմոնները, ինչպես ենթադրում են, նպաստում են օրգանիզմում ճարպի քանակի նվազմանը և մեծացնում է մկանային զանգվածը և մեծացնում է մկանային հյուսվածքների աճը։ Ոչ մեծ քանակությամբ նիկոտինի ավելացումը խոզերի կերաբաժնում հնարավոր է դարձնում ստանալ ոչ ճարպոտ խոզի միս։ Փորձերը ցույց են տվել, որ նիկոտինի ավելացումը կերի մեջ տալիս է խոզի մսի 5—17 տոկոսի աճ (Կանադա)։

### ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ ՀՈՍՔԱՋՐԵՐԻՑ

Լեհական շաքարի գործարանները տարեկան օգտագործում են համարյա 100 միլիոն խորանարդ մետր ջուր, որն այնուհետև հոսում է դեպի զանազան ռեզերվուարներ։ Պարզվել է, որ այդ հոսքաջրերում պարունակվում են բազմաթիվ նյութեր, որոնք կարելի է օգտագործել պարարտացման համար։ Եթե այդ հոսքաջրերն օգտագործեն մարգագետինները պարարտացնելու համար, բերքը կբարձրանա 40—50 տոկոսով։ Այսպես, փորձնական մարգագետնի մեկ հեկտարից հանում անցյալ տարի ստացվել է 67 ցենտներ խոտ, սովորական մարգագետնի 40 ցենտների դիմաց։

### ՈՒՂԵՂԻ ՈՒՌՈՒՑՔՆԵՐԻ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ ՀԵՂՈՒԿ ԱԶՈՏՈՎ

Մշակված է ուղեղային ուռուցքների քայքայման անարյուն մեթոդ՝ հեղուկ ազոտ սրսկելու միջոցով։ Այդ մեթոդն առանձնապես արդյունավետ է խոր ընկած ուռուցքների հեռացման ժամանակ, որոնք չեն կարող սովորական վիրահատության եղանակներով վերացվել։ Ուռուցքի մեջ դրվում է բարակ մետաղյա խողովակ, որի միջոցով սրսկվում է հեղուկ ազոտ։ Դրա հետևանքով ուռուցքը սառչում է մինչև պնդանալու վիճակի։ Հալվող մեռած հյուսվածքը դուրս է մղվում արյան հոսքով (Անգլիա)։

### ՎՈՒՇԵ ԳՈՐԾՎԱԾՔԸ ՖՈՏՈԹՂԹԻ ՓՈԽԱՐԻՆԻՉ

Արևմտագերմանական «Տուրաֆոտո» ֆիրման թողարկում է սենսիբիլիզացված (զգայունությունն ավելացրած) բարակ վուշե գործվածք, որը փոխարինում է լուսանկարչական թղթին։ Նոր գործվածքը՝ «Տուրա»-ն, համարյա չի պատռվում, կարելի է ծալել, առանց երկյուղ կրելու, որ էմուլսիոն մակերեսը կքերծվի։ Այն կարելի է հարթուկել, առանձին կտորներից մեծ կտավներ սարքել։ Այդ գործվածքը լավ է, երբ պահանջվում է լուսանկարների խոշորացում թատրոնների և հեռուստացույցային ստուդիաների, ինչպես և քարտեզներ և գծագրեր պատրաստելու համար։

### ԴՅՈՒՐԱՏԱՐ ՍԵՅՍՄՈԳՐԱՖ

Ոչ մեծ երկրաշարժերն արձանագրելու համար ստեղծվել է սեյսմոգրաֆ-մագնիտաֆոն։ Այն կարելի է տեղադրել ցանկացած վայրում։ Երկրագունդը ձևափոխող երաժշտությունն արձանագրվում է մագնիսային ժապավենի վրա, որը կարելի է բազմիցս լսել լաբորատորիայում (ԱՄՆ)։


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ՑԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ՑԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՑԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05290 Պատվեր 3577 Տիրաժ 9100 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 30/XI 1964 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51։

